08.04.2013

2009

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

ОБЯЗАТЕЛЬНЫЙ ЭКЗЕМПЛЯР

1

ՀՈՒՆՎԱՐ

ԵՐԵՎԱՆ 1958

digitised by A.R.A.R.@

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1958 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Государственная БИБЛИОТЕКА СССР им. В. И. Ленина
6094
M-59
13773
11993-58
ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՊԵՏԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ Гос. Библиотека АРМ.ССР им. А. Мясникяна Ա. ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ
digitised by A.R.A.R.@

## СОДЕРЖАНИЕ



# ՄԻԱՍՆԱԿԱՆ ԵՎ ԿՈՒՌ ՇԱՐՔԵՐՈՎ

Հունվարի 25-ին Երևանում հրավիրվում է ՍՄԿՊ մարտական ջոկատներից մեկի՝ Հայաստանի Կոմունիստական պարտիայի հերթական XIX համագումարը։ ՀԿՊ XVIII համագումարից անցել է երկու տարի։ Այդ կարճ ժամանակամիջոցում, ինչպես ՍՍՌՄ, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի կյանքում կատարվել են խոշոր փոփոխություններ։

Անցյալ տարի բոլորեց Մեծ Հոկտեմբերի 40 տարին, որը բուռն խանդավառությամբ տոնեցին սովետական ժողովուրդն ու ամբողջ առաջադեմ մարդկությունը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայից հետո անցած ժամանակամիջոցում մեր Սովետական երկիրը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ անցել է դժվարին ու փառահեղ ուղի։ Իրագործելով սոցիալիստական հասարակարգ կառուցելու լենինյան պլանը, սովետական քաջարի ժողովուրդը ամբողջովին կերպարանափոխեց մեր Հայրենիքը՝ այն հետամնաց ագրարային երկրից դարձրեց սոցիալիստական ինդուստրիալ հզոր տերություն, որն այժմ ընթանում է բոլոր երկրների աշխատավորների ավանգարդում։

Մեծ Հոկտեմբերի քառասունամյա տարեդարձի օրերին Մոսկվա ժամանեցին վաթսունից ավելի երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչներ, որոնք հավաստելով խաղաղության և սոցիալիզմի հաղթության նկատմամբ իրենց անսասան կամքը՝ հրապարակեցին Դեկլարացիա և Խաղաղության Մանիֆեստ։ Պատմական մեծ նշանակություն ունեցող այդ վավերաթղթերը հզոր ու նոր զորավիգ հանդիսացան խաղաղության գործի առավել ամրապնդման և կոմունիստական ու բանվորական պարտիաների կոլեկտիվ փորձի, մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման բնագավառում։

Կոմունիզմի ճանապարհին Սովետական երկրի զարգացման գործում պարտիայի ու սովետական ժողովրդի կյանքում պատմական կարևոր էտապ հանդիսացավ ՍՄԿՊ XX համագումարը, որը սահմանեց կոմունիստական շինարարության վեհ ու հոյակապ պլանը։ Ընթանալով XX համագումարի նշած ուղիով, պարտիան վերջին տարիներս իրականացրեց մի շարք միջոցառումներ, որոնք ապահովում են մեր երկրի էկոնոմիկայի հետագա առաջընթացը և նպաստում ժողովրդական զանգվածների ստեղծագործական նախաձեռնության ծավալմանը։ Այդ նպատակին է ուղղված նաև արդյունաբերության ու շինարարության կառավարման վերակառուցումը, որն արդեն տվել է իր առաջին դրական արդյունքները։ Տնտեսական շրջաններում ժողտնտխորհների ստեղծումը վերացրեց բոլոր գերատեսչական պատնեշները և հնարավորություն տվեց տեղական կազմակերպություններին հանդես բերելու սեփական նախաձեռնու-

digitised by A.R.A.R.@

թյուն՝ պարտիայի և կառավարության առաջադրանքները ճշտությամբ կատարելու համար։

Համընթաց լենինյան պարտիայի բոլոր ջոկատների հետ, Հայաստանի Կոմունիստական պարտիան ընթացիկ երկու տարիներում ռեսպուբլիկայի բոլոր կոմունիստների և ամբողջ աշխատավորության կարողություններն ու եռանդը մոբիլիզացրեց՝ իրականացնելու ՍՄԿՊ XX համագումարի և Կենտկոմի պլենումների որոշումները։

Կազմակերպական աշխատանքը պարտիայի առջև ծառացած մեծագույն խնդիրների մակարդակին բարձրացնելով, Հայաստանի պարտիական կազմակերպությունները խոշոր աշխատանք ծավալեցին 6-րդ հնգամյա պլանի կատարման վերաբերյալ ՍՄԿՊ XX համագումարի որոշումները հաջողությամբ իրագործելու նպատակով։

Այդ գործին ավելի մեծ չափով նպաստեցին արդյունաբերության և շինարարության ղեկավարումը կազմակերպելու նոր ձևերը, որոնք իրենց առավելություններով խթանեցին ռեսպուբլիկայի կազմակերպությունների նախաձեռնության ծավալմանը և դրականապես անդրադարձան արտադրական պլանների կատարման վրա։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքի աճը ՀԿՊ XVIII և XIX համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում, այսինքն՝ երկու տարում, կազմում է 22 տոկոս։ Ուշագրավն այն է, որ մեր ռեսպուբլիկայում հաջողությամբ կատարվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը և թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքը։ Միայն անցյալ տարի Հայկական ՍՍՌ արդյունաբերական ձեռնարկությունները պլանից դուրս թողարկեցին 134 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Հաշվետու շրջանում արդյունաբերության զարգացման բնագավառում աչքի ընկնող հաջողություններն այն են, որ Հայկական ՍՍՌ-ում ապահովվեց ծանր արդյունաբերության, ամենից առաջ մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության առավել աճը։ Միայն անցած 2 տարում, 1955 թվականի հետ համեմատած, մեքենաշինության աճը կազմում է 35 տոկոս, քիմիական արդյունաբերության աճը՝ 25 տոկոս։ Կատարվել ու գերակատարվել են ռաֆինացված պղնձի, ալյումինի, մոլիբդենի կոնցենտրատի, մետաղամշակման հաստոցների մի քանի տեսակների, էլեկտրաէներգիայի, էլեկտրաշարժիչների, կաբելի, ռետինոտեխնիկական իրերի, շաքարի, պանրի, տրիկոտաժի, օճառի և արտադրանքի այլ տեսակների թողարկման պլանները։

Հաշվետու շրջանում, ՍՄԿՊ Կենտկոմի և Միութենական կառավարության օգնությամբ, ՀԿՊ Կենտկոմը և ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետը լուրջ ուշադրություն դարձրին Սևանի պրոբլեմի արդյունավետ լուծման վրա, որի շնորհիվ արագացվում է Սևան-Հրազդան կասկադի կառուցումը և Սևանա լճի ավելի բարձր մակարդակի պահպանումը։ Լուրջ քայլեր են կատարվել նաև Հայաստանի արդյունաբերության հետագա զարգացման պրոֆիլը ճշգրտելու ուղղությամբ։ Եթե անցյալում ռեսպուբլիկայի արդյունաբերությունը զարգացել էր գլխավորապես էներգատար արդյունաբերության գծով, ապա այժմ վճռական քայլեր են արվում է՛լ ավելի զարգացնելու ոչ էներգատար, աշխատատար արդյունաբերությունը՝ մեքենաշինությունը, գործիքաշինությունը։

Արդյունաբերության տեխնիկական մակարդակի բարձրացման շնորհիվ ռեսպուբլիկայում յուրացվել է մոտավորապես 100 տեսակի նոր, ավելի կա-



տարյալ մեքենաների ու սարքերի, այդ թվում խառատային պտտահան հաստոցների, կոմպրեսորների, միասնական սերիայի տրանսֆորմատորների ու գեներատորների, ավտոմեքենաների պահեստամասերի և այլ առարկաների արտադրությունը։ 1956—1957 թվականների ընթացքում ռեսպուբլիկայում ստեղծվել և արագորեն զարգանում են արտադրության մի շարք նոր ճյուղեր, որոնցից ամենաբնորոշն ու խոստումնալի ձեռնարկություններն են արդի ճշգրիտ գործիքաշինության և ավտոմատացման միջոցների արտադրությունը։ Գնալով նվազում է պլանները չկատարող արդյունաբերական ձեռնարկությունների թիվը։ Առաջավոր ձեռնարկությունների շարքն են մտել փայտամշակման արդյունաբերության ֆաբրիկաները, ժամացույցի, փոքր հիդրոտուրբինների գործարանները և արդյունաբերական այլ ձեռնարկություններ, որոնք իրենց պլանները չկատարելու համար խիստ քննադատության ենթարկվեցին ՀԿՊ XVIII համագումարի կողմից։

Խնդիրն այն է, որ ռեսպուբլիկայի հաջող զարգացող արդյունաբերության և շինարարության ասպարեզում դեռևս կան լուրջ թերություններ։ Մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներ անհրաժեշտ հետևություններ չանելով ՀԿՊ XVIII համագումարի քննադատական դիտողություններից, դեռևս շարունակում են հետ մնալ։ Այդ առաջին հերթին վերաբերում է շինանյութերի արտադրության ձեռնարկություններին։

Անշեղորեն ընթանալով ՍՄԿՊ XX համագումարի նշած ուղիով և հետևողականորեն կենսագործելով պարտիայի Կենտրոնական Կոմիտեի որոշումները, Հայաստանի պարտիական կազմակերպություններն իրենց XIX համագումարին են գալիս գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած որոշակի հաջողություններով։ Անցյալ տարի ռեսպուբլիկայի բազմաթիվ շրջաններ կատարեցին բերքատվության պլաններն ու ամբարեցին ավելի շատ հացահատիկ, քան նախորդ տարիներում։ 1957 թվականին ռեսպուբլիկայում արտադրվել է 47 հազար տոննայով ավելի հացահատիկ, քան 1956 թվականին։ Նկատելի հաջողություններ են ձեռք բերվել շաքարի ճակնդեղի բերքատվության առաջադրանքները կատարելու գործում։

Հայաստանի կոլտնտեսային գյուղացիությունն ու սովետական տնտեսությունների աշխատավորները ջերմորեն արձագանքելով պարտիայի կոչին՝ բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, մսի, յուղի արտադրությամբ մոտակա տարիներին Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու մասին, իրենց բոլոր ջանքերը լարեցին անասնաբուծության զարգացումն առաջ մղելու համար։ Մեր մամուլում հրապարակվեցին արժեքավոր փաստեր, որոնք պերճախոս կերպով ցույց են տալիս, թե ինչպես վերջին մի քանի տարում զգալիորեն աճել է անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Գյուղատնտեսության ասպարեզում հիմնական թերությունն այն է, որ անցյալ տարի չապահովվեց երկու արժեքավոր կուլտուրաների՝ բամբակի և խաղողի բերքատվության առաջադրանքների կատարումը։

Գյուղատնտեսության զարգացման նոր վերելքն ապահովելու համար պարտիական կազմակերպությունները պետք է մոբիլիզացնեն բոլոր ուժերը, լրիվ գործի դնեն եղած հնարավորություններն ու ռեզերվները, որպեսզի անթերի կատարվեն 6-րդ հնգամյակի առաջադրանքները։

Արդյունաբերության բուռն վերելքի և գյուղատնտեսության աճի շնորհիվ

digitised by A.R.A.R.@

անշեղորեն բարձրացավ ռեսպուբլիկայի աշխատավորների նյութական բարեկեցությունը։

Ճշտությամբ կենսագործելով պարտիական կյանքի լենինյան նորմերը, Հայաստանի պարտիական կազմակերպությունները մշտապես բարելավում են իրենց աշխատանքի ձևերն ու մեթոդները, կատարելագործում նրա ոճը։ Այժմ է՛լ ավելի մարտունակ են դարձել պարտիական կազմակերպությունները, բարձրացել է կոմունիստների ակտիվությունը, ամրապնդվել է պարտիայի շարքերի միասնությունը։ Հավատարիմ մնալով պարտիայի գլխավոր շտաբին՝ ՍՄԿՊ Կենտկոմին, Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմը անշեղորեն կիրառել է նրա լենինյան քաղաքականությունը։

Միահամուռ հավանություն տալով ՍՄԿՊ Կենտկոմի 1957 թվականի Հունիսյան և Դեկտեմբերյան պլենումների որոշումներին և դատապարտելով Գ. Մալենկովի, Լ. Կագանովիչի, Վ. Մոլոտովի հակապարտիական խմբի և նրան հարած Դ. Շեպիլովի պառակտիչ ֆրակցիոն գործունեությունը, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները կրկին անգամ իրենց նվիրվածությունը ցուցաբերեցին պարտիայի լենինյան շտաբին։ Այդ խմբի մերկացումը նորից ցուցադրեց Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի սերտ միասնությունը, է՛լ ավելի բարձրացրեց պարտիայի, նրա լենինյան Կենտկոմի հեղինակությունն աշխատավորական լայն զանգվածների շրջանում։

ՀԿՊ XIX համագումարից առաջ տեղի ունեցած պարտիական օրգանների հաշվետու ընտրական ժողովներն ու կոնֆերանսները կրկին անգամ ցույց տվին մեր պարտիայի շարքերի միասնությունը, Հայաստանի կոմունիստների համախմբվածությունը ՍՄԿՊ Կենտկոմի շուրջը և նրանց միասնական կամքը՝ այսուհետև ևս մարտնչելու հանուն պարտիայի XX համագումարի որոշումների կատարման։

Մեր պարտիայի ուժի աղբյուրը ժողովրդական լայն մասսաների հետ ունեցած նրա անխախտ կապն է։ Այդ կապի վառ ապացույցներից մեկն էլ ՀԿՊ XIX համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունն է, որը ռեսպուբլիկայում համակել է աշխատավորության լայն զանգվածներ։

Վերջին երկու տարիներում ՀԿՊ Կենտկոմը առանձին ուշադրություն դարձրեց պարտիայի շարքերի աճման վրա, կիրառելով միջոցներ, որոնք ապահովում են այդ աճը գլխավորապես ի հաշիվ արտադրության մեջ աշխատող առաջավոր մարդկանց։ Հաշվետու ժամանակշրջանում ռեսպուբլիկայի Կոմունիստական պարտիայի շարքերն են ընդունվել 4270 մարդ։ Այժմ ՀԿՊ շարքերում կան 71.581 կոմունիստ, որոնք վայելելով ժողովրդի վստահությունը, հաջողությամբ առաջ են մղում կոմունիզմի կառուցման մեծ գործը։

Նախորդ համագումարից հետո զգալիորեն բարելավվեց պարտիական լուսավորության ցանցի գործունեությունը, լուրջ աշխատանք է կատարված ուղղելու այդ բնագավառում անցյալում եղած թերությունները։ Հաջողությամբ սկսված այս ուսումնական տարում քաղաքական ուսուցման ցանցում ընդգրկված են 81 հազար մարդ, որոնցից 21 հազարը զբաղվում են ՍՄԿՊ պատմության ուսումնասիրությամբ, 24 հազարը՝ քաղաքատնտեսության և կոնկրետ էկոնոմիկայի ուսումնասիրությամբ։ Ամենից կարևորն այն է, որ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն իրականացնելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները, խոշոր չափով վերացրել են ագիտացիոն-



պրոպագանդիստական աշխատանքների կտրվածությունը առօրյա կյանքից։ Սակայն կոմունիստների քաղաքական ուսուցման գործում դեռևս կան նկատելի թերություններ։ Երբեմն պարապմունքները տեղի են ունենում գաղափարական ցածր մակարդակով, անկենդան, որի հետևանքով էլ ունկնդիրները սկսում են անկանոն հաճախել պարապմունքներին։ Այսպես է վիճակը Ղափանի շրջանի Կաղնուտ, Սրաշեն գյուղերի և ավտոգրասենյակի պարտիական կազմակերպություններում՝ ընթացիկ քաղաքականության ուսումնասիրողների խմբակներում։

Աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում վճռական դեր են խաղում գրականությունն ու արվեստը։ ՀԿՊ Կենտկոմը հաշվետու ժամանակաշրջանում քանիցս անդրադառնալով մեր գաղափարական աշխատանքի այդ բնագավառներին, հոգատարությամբ հետևել է, որպեսզի ռեսպուբլիկայի գրողներն ու արվեստի գործիչներն ավելի բեղմնավոր դարձնեն իրենց ստեղծագործական աշխատանքը։

Մեր ռեսպուբլիկայի արվեստի և գրականության հաջողությունները վառ կերպով դրսևորվեցին 1956 թվականին Մոսկվայում տեղի ունեցած հայկական արվեստի և գրականության տասնօրյակում։ Սակայն գրականության և արվեստի բնագավառում դեռևս կան լուրջ թերություններ և սխալներ։ Մեր գրողներից ու արվեստագետներից ոմանք երբեմն շեղվելով ճիշտ ուղուց, հրապարակում են մեր գաղափարախոսությանը խորթ գործեր։ Հատկապես վերջին տարիներում այդ բանը «...տեղի ունեցավ այն պատճառով, ասում է ընկ. Խրուշչովը, որ որոշ ընկերներ միակողմանիորեն, ոչ ճիշտ հասկացան Ստալինի անձի պաշտամունքի պարտիական քննադատության էությունը։ Նրանք փորձեցին այդ քննադատությունը մեկնաբանել որպես մեր պարտիայի ու երկրի կյանքում Ի. Վ. Ստալինի դրական դերի հախուռն ժխտում և կանգնեցին սոցիալիզմի հաղթանակի համար մեր ժողովրդի մղած պայքարի պատմության մեջ միայն ստվերոտ կողմերն ու սխալները կանխակալ կերպով ընտրելու կեղծ ուղու վրա, անտեսելով սոցիալիզմի կառուցման գործում Սովետական երկրի համաշխարհային-պատմական հաջողությունները»։

Սովետական մարդիկ իրենց գրողներից և արվեստագետներից պահանջում են այնպիսի գործեր, որոնք համապատասխան լինեն սոցիալիստական հասարակարգի խնդիրների մակարդակին և բավարարեն աշխատավորության հոգևոր պահանջմունքները։

Տեղին է այստեղ հիշատակել, որ մեր պայմաններում, հաջողությամբ հաղթահարելով նիհիլիզմի պրակտիկան, կուլտուրական շինարարության ասպարեզում մերթ դրսևորվում է անցյալի կուլտուրական ժառանգության իդեալականացման խոտելի երևույթը, որի դեմ ՀԿՊ Կենտկոմը ձեռք է առել մի շարք էական միջոցառումներ, ելնելով լենինյան այն դրույթից, որ յուրաքանչյուր ազգի անցյալի կուլտուրայից մենք վերցնում ենք միայն այն, ինչ նպաստում է կոմունիզմի առաջընթացին։

Հավատարիմ մնալով կոմունիզմի սկզբունքներին, մեր պարտիան միշտ էլ անհաշտ պայքար է մղել աշխատավորության շահերի դավաճանների, սոցիալիզմի թշնամիների դեմ, թշնամիներ, որոնք փորձել են բանվոր դասակարգին և նրա ավանգարդին շեղել ռևոլյուցիոն ուղուց։ Կոմունիստական պարտիան այսուհետև էլ վճռականորեն կպայքարի մարքսիզմ-լենինիզմից նահանջողների դեմ, բոլոր նրանց դեմ, ովքեր հանդես գալով նորագույն ռևի-

digitised by A.R.A.R.@

զինվորների գերում, կփորձեն թուլացնել մեր կամքը, խախտել մեր համախմբվածությունն ու մեր միասնությունը կոմունիզմի համար մղվող պայքարում։

Անհրաժեշտ է շեշտել, որ շնորհիվ ՀԿՊ Կենտկոմի կիրառած միջոցների, մեր պարտիական կազմակերպություններին ժամանակին հաջողվեց պատշաճ հակահարված տալ այն հակապարտիական ոտնձգություններին, որոնք տեղ գտան ՍՄԿՊ XX համագումարի որոշումների քննարկման ժամանակ։

Չպետք է մոռանալ, որ մեր պայմաններում մարքսիզմ-լենինիզմի ռևիզիան հաճախ խառնահյուսվում է նացիոնալիզմի ռեցիդիվների հետ, մի հանգամանք, որը մեզնից պահանջում է վառոդը չոր պահել և հետևողականորեն պայքարել լենինիզմի խորթ գաղափարների ու ազդեցությունների դեմ և ավելի քան ուժեղացնել աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործը։

Պետք է ընդգծել, որ վերջին տարիներս ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները զգալի աշխատանք են կատարել աշխատավորությանը ինտերնացիոնալիզմի և ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակելու ուղղությամբ։ Մեր ռեսպուբլիկան սոցիալիստական մրցության մեջ է Կիրգիզական ՍՍՌ-ի հետ, Երևան քաղաքը մրցում է Կիևի հետ, ռեսպուբլիկայի բազմաթիվ շրջաններ, քաղաքներ, գյուղեր, կոլտնտեսություններ ու արդյունաբերական ձեռնարկություններ սոցիալիստական մրցության մեջ են եղբայրական Ուկրաինայի, Ադրբեջանի, Վրաստանի, Կիրգիզիայի շրջանների, գյուղերի, կոլտնտեսությունների ու գործարանների հետ. մրցող շրջանների, քաղաքների, կոլտնտեսությունների ու գործարանների ներկայացուցիչների այցերն ու վերցրած պարտավորությունների փոխադարձ ստուգումները միշտ էլ վերածվում են Կոմունիստական պարտիայի ու սոցիալիստական Հայրենիքի նկատմամբ անսահման նվիրվածության և ժողովուրդների անխորտակելի բարեկամության ցույցի։

Այսուհետև էլ մեր ամբողջ գաղափարական պայքարը, ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը պետք է ուղղված լինի ռեսպուբլիկայի աշխատավորությանը սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու վեհ նպատակին, բուռն եռանդ առաջացնի բանվորների, կոլտնտեսականների ու ինտելիգենցիայի մեջ՝ ազնվորեն կատարելու իրենց պարտքը Հայրենիքի հանդեպ։

Վեցերորդ հնգամյա պլանը հաջողությամբ կատարելու համար անհրաժեշտ է է՛լ ավելի բարձր աստիճանի հասցնել պարտիական քաղաքական-կազմակերպական աշխատանքը, բոլոր օղակներում ամրապնդել պարտիական ու պետական կարգապահությունը՝ ժողովրդա-տնտեսական խնդիրները հաջողությամբ լուծելու համար։

Հայաստանի կոմունիստներն իրենց հերթական XIX համագումարն են գալիս միասնական և կուռ շարքերով՝ համախմբված ՍՄԿՊ Կենտկոմի և ՀԿՊ Կենտկոմի շուրջը ու պատրաստ են բուռն թափով մեր երկրում առաջ մղելու կոմունիզմի կառուցման վեհ գործը։

# ՆԱԽՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ, ՄԻ ՔԱՆԻ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐՆԵՐ

ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ

Սովետական Հայաստանը, ինչպես և մեր ամբողջ բազմազգ սոցիալիստական Հայրենիքը, 1958 թվականը թևակոխեց էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի ասպարեզներում ձեռք բերած լուրջ նվաճումներով։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները, մասնակցելով Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությանը, ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 23-ին, կատարեցին 1957 թվականի պետական պլանը և պլանից ավելի թողարկեցին 134 միլիոն ռուբլու արտադրանք։ Վերջին երկու տարում զգալիորեն ավելացավ ծանր արդյունաբերության մի շարք կարևորագույն առարկաների արտադրությունը։ Այսպես, օրինակ, ավտոդողերի թողարկումը ավելացավ 74 տոկոսով, էլեկտրաշարժիչներինը՝ 72 տոկոսով, ուժային տրանսֆորմատորներինը՝ 47 տոկոսով, կենտրոնախույս պոմպերինը՝ 75 տոկոսով, ավտոմոբիլային պահեստամասերինը՝ 76 տոկոսով և մոլիբդենի կոնցենտրատինը՝ 36 տոկոսով։

Իրականացնելով ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները, նշանակալի աշխատանք է կատարվել արդյունաբերության տեխնիկական հետագա առաջադիմության, արտադրության մեջ նոր տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, արտադրական պրոցեսների կոնվեյերացման, մեքենայացման և ավտոմատացման ասպարեզներում։

Արտադրության տեխնիկական մակարդակի ու կուլտուրայի բարձրացման ցուցանիշներից մեկը արդյունաբերական արտադրանքի արտահանման ընդլայնումն է։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում արտադրվող տրանսֆորմատորները, գեներատորները, շարժական էլեկտրակայանները, հիդրավլիկ պոմպերը և մի քանի այլ տեսակի մեքենաներ ու սարքավորումներ ուղարկվում են աշխարհի 25 երկրներ։



Մեր երկրի սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ասպարեզում նոր, կարևոր էտապ հանդիսացավ արդյունաբերության ու շինարարության կառավարումն է՛լ ավելի կատարելագործելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումների իրականացումը։

Հետևողականորեն կենսագործելով տնտեսության ղեկավարման լենինյան սկզբունքները, մեր պարտիան միշտ ելնում է այն բանից, որ տնտեսական

digitised by A.R.A.R.@

շինարարության կառավարման կազմակերպական ձևերը պետք է համապատասխանեն արտադրության կոնկրետ պայմաններին՝ նրա զարգացման յուրաքանչյուր էտապում, պետք է համապատասխանեն արտադրողական ուժերի անընդհատ զարգացման պահանջներին։

ՍՄԿԿ Կենտկոմի 1957 թվականի Փետրվարյան պլենումի հսկայական նշանակությունն այն է, որ պարտիան տնտեսական շինարարության փորձի մարքսլենինյան խոր վերլուծության հիման վրա մշակեց արդյունաբերության ու շինարարության բոլոր օղակների հետագա կատարելագործման նոր ուղղություն՝ արտադրության ղեկավարման ճյուղային սկզբունքից անցնելով տերիտորիալ սկզբունքին։

Արդյունաբերության ու շինարարության կառավարման նոր կառուցվածքը հենվում է տնտեսական կառավարման ասպարեզում պետական կենտրոնացված ղեկավարումը միութենական ռեսպուբլիկաների, տեղական բոլոր պարտիական, սովետական, տնտեսական և արհմիութենական կազմակերպությունների իրավունքների ընդլայնման ու նրանց դերի բարձրացման հետ զուգորդելու վրա, աշխատավոր մասսաներին տնտեսության ու շինարարության կառավարման գործում ավելի լայնորեն ներգրավելու վրա։

Ընկ. Խրուշչովի զեկուցման հայտնի թեզիսների համաժողովրդական քննարկումից հետո, ՍՍՌՄ Գերագույն Սովետի VII սեսիան ընդունեց Օրենք՝ «Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն էլ ավելի կատարելագործելու մասին»։ Այդ օրենքի համաձայն, երկրում վարչական-տնտեսական շրջանների բազայի վրա ստեղծվեցին ժողովրդական տնտեսության խորհուրդներ։

Մեր ռեսպուբլիկայի ժողտնտխորհը, որը կազմվել է 1957 թվականի հուլիսի 1-ին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի սեսիայի որոշմամբ, միավորում է 244 արդյունաբերական ձեռնարկություն, որոնց համախառն արտադրանքի ծավալը տարեկան կազմում է 5,2 միլիարդ ռուբլի, կամ ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության 80 տոկոսը։

Ժողտնտխորհում, ֆունկցիոնալ բաժիններից բացի, ստեղծվել են 12 վարչություն՝ այդ թվում 10 ճյուղային արտադրական վարչություն, որոնք անմիջականորեն իրագործում են արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական, տեխնիկական և ֆինանսական ամբողջ գործունեության ղեկավարումը։ Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը միջոցներ ձեռք առավ ժողտնտխորհի ապարատը ճիշտ կոմպլեկտավորելու համար։ Ձեռնարկություններից ժողտնտխորհում և նրա վարչություններում աշխատելու ուղարկվեցին մոտավորապես 100 ինժեներա-տեխնիկական աշխատող, որոնք, անկասկած, դրական դեր կխաղան ժողտնտխորհի գործունեության մեջ։

Ավելի քան վեց ամիս է անցել արդյունաբերության կառավարումը վերակառուցելու օրվանից։ Ամփոփելով ժողտնտխորհի աշխատանքի առաջին ամիսների որոշ արդյունքները, մենք համոզվեցինք, որ արդյունաբերության կառավարման կազմակերպական նոր ձևերը հսկայական առավելություններ ունեն։ Ղեկավարման մոտեցումը արտադրությանը և տեղական կադրերի նախաձեռնության ծավալումը թույլ տվին ավելի արագ և ավելի օպերատիվ լուծել արտադրական ու տեխնիկական հարցերը։

Համառոտակի շարադրենք ժողտնտխորհի գործունեությունը, նրա առաջին օգտակար նախաձեռնությունները, որոնք ուղղված են արդյունաբերության



ղեկավարումը բարելավելու և արտադրական ռեզերվները ավելի լրիվ օգտագործելու նպատակին։

Առանձին ձեռնարկությունների և ցեխերի անջատվածությունը վերացնելու, արտադրության ճիշտ կոորդինացումն ապահովելու և կառավարչական ապարատը պարզեցնելու համար ժողտնտխորհը միացրեց արտադրական բնույթով համասեռ մի շարք ձեռնարկություններ։ Այսպես, արդյունաբերական 27 ձեռնարկությունից ստեղծվեց 13-ը, այդ թվում 2 կոմբինատ։ Դա թույլ տվեց բարելավել արտադրության ղեկավարումը, 164 միավորով կրճատել կառավարչական ապարատը, աշխատավարձի ֆոնդից տարեկան տնտեսել 1,5 միլիոն ռուբլի։

Ալավերդու քիմիական գործարանը և պղնձաձուլական կոմբինատը միացվեցին միասնական պղնձա-քիմիական կոմբինատի մեջ։ Միմիայն այդ միջոցառումը պետությանը տարեկան տվեց մոտավորապես կես միլիոն ռուբլու խնայողություն և ապահովեց իրար հետ սերտորեն կապված քիմիական ու պղնձաձուլական արտադրության աշխատանքի ճիշտ կոորդինացումը։ Արարատի ցեմենտի, շիֆերի և կրաքարի գործարանների ու քարհանքերի բազայի վրա կազմակերպվեց Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատ։

Տեղական սովետական ու տնտեսական օրգանների իրավունքների ընդլայնումը հնարավորություն ընձեռեց ավելի մեծ նախաձեռնություն ցուցաբերել արժեքավոր սարքավորումը ավելի լավ օգտագործելու համար։ Ձեռնարկություններում կային անգործության մատնված շատ հաստոցներ և այլ սարքավորումներ, որոնց խիստ կարիքն զգում էին նրանց կողքին գտնվող ձեռնարկությունները։ Սակայն միջմինստրական, գերատեսչական պատնեշները տարիներ շարունակ խոչընդոտում էին սարքավորման ճիշտ օգտագործումը։ Իր գործունեության առաջին իսկ ամիսներին ժողտնտխորհը անարգել կերպով լուծեց այդ հարցը և առաջներում անգործության մատնված շատ հաստոցներ այժմ աշխատում և արտադրանք են տալիս։

Ժողտնտխորհը մի շարք միջոցառումներ իրագործեց արտադրական տարածությունները և կարողությունները ավելի լավ օգտագործելու ուղղությամբ։ 16.320 քառակուսի մետր չօգտագործված արտադրական տարածությունների և ռեզերվային կարողությունների շնորհիվ նախատեսվում է թողարկել 175 միլիոն ռուբլու արդյունաբերական լրացուցիչ արտադրանք։ Հայէլեկտրագործարանի մետաղե իրերի ցեխում երևան է բերվել մոտավորապես հազար քառակուսի մետր ազատ տարածություն։ Այստեղ կենտրոնացվում է համապատասխան սարքավորում և կազմակերպվում է մետաղե իրերի արտադրություն այնպիսի չափերով, որոնք կապահովեն էլեկտրատեխնիկական արդյունաբերության ու գործիքաշինության վարչության ձեռնարկություններին։

Ավտոմոբիլային պահեստամասերի գործարանում հայտաբերված կարողությունների հաշվին կազմակերպված է տարեկան չորս միլիոն ռուբլու գործիքների արտադրություն՝ Մեքենաշինության ու հաստոցաշինության վարչության ձեռնարկությունների համար։ Դարբնոցային ցեխի ազատ կարողությունների բազայի վրա կազմակերպվում է նոր կռվածքների և դրոշմոցների թողարկումը մոտավորապես 1.300 տոննա ընդհանուր քաշով։ Լենինական քաղաքում, էլեկտրակենցաղային սարքերի նախկին գործարանի չօգտագործված տարածության վրա կազմակերպվում է բարձր ճշգրտության տարեկան 1800 հզկող հաստոցների թողարկման գործարան։ Շարունակվում է աշխատանքը

.չօգտագործված ռեզերվների, արտադրական տարածությունների և կարողու-
թյունների հետագա հայտաբերման և օգտագործման ուղղությամբ:
Ժողտնտխորհի կազմակերպումը նպաստեց նաև արտադրության կոոպե-
րացմանն ու մասնագիտացման կատարելագործմանը, որը արդյունաբերության
համաչափ աշխատանքի և նրա տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարե-
լավման կարևոր պայմաններից մեկն է:
Մեքենաշինական գործարանների արտադրանքը կոմպլեկտավորելու հա-
մար երկրի տարբեր քաղաքներից մեր ռեսպուբլիկա են ներմուծվում մոտա-
վորապես 25 հազար մանր էլեկտրամոտորներ: Ներկայումս Ժողտնտխորհի
ձեռնարկություններում կազմակերպվում է այդպիսի էլեկտրամոտորների, ինչ-
պես նաև հեծանիվի մի շարք դետալների, ավտոմոբիլային պահեստամասերի,
կոմպլեկտա-
կովածքների, հաստոցաշինության համար օգտագործվող նորմալների, էլեկ-
տրալամպերի ապակյա կոլբերի, ռետինատեխնիկական և այլ կոմպլեկտա-
վորող առարկաների արտադրություն, որոնք մենք առայժմ ստիպված ենք
ներմուծել Միության հեռավոր քաղաքներից, իսկ դա փոխադրման լրացու-
ցիչ ծախսերի և ձեռնարկությունների աշխատանքի խափանումների տեղիք է
տալիս:
Լուրջ աշխատանք է կատարվում նաև արտադրության մասնագիտացման
ուղղությամբ: Էջմիածնի պլաստմասսայի գործարանը մասնագիտացվում է
ռեսպուբլիկայի բոլոր գործիքաշինական գործարաններին պլաստմասսային
առարկաներ մատակարարելու համար: Երևանի մոտորանորոգման գործարա-
նը, որը թողարկում է մանր էլեկտրամոտորներ և զոդման տրանսֆորմատորներ,
մասնագիտացվում է միայն առաջին և երկրորդ գաբարիտի էլեկտրամոտոր-
ներ թողարկելու համար: Զոդման տրանսֆորմատորների արտադրությունը
կենտրոնացվում է Լենինականում կազմակերպված էլեկտրատեխնիկական
գործարանում: Մասնագիտացումը կատարվում է նաև թեթև, սննդի ու կահույ-
քի արդյունաբերության մեջ: Արդյունաբերության կոոպերացման ու մասնա-
գիտացման ասպարեզում դեռևս չօգտագործված շատ հնարավորություններ և
չլուծված խնդիրներ կան: Ժողտնտխորհի և նրա վարչությունների ղեկավարնե-
րը պետք է հաստատակամորեն ու համառ կերպով շարունակեն աշխատանքն
այդ ուղղությամբ:
Այսպիսով, Ժողտնտխորհի անցած վեց ամսվա գործունեության վերլու-
ծությունը ցույց է տալիս տնտեսական ղեկավարման ասպարեզում Կոմունիս-
տական պարտիայի քաղաքականության իմաստությունն ու հեռատեսությունը,
արդյունաբերության ու շինարարության կառավարման կազմակերպական նոր
ձևերի անվիճելի առավելությունը, որը հանգեցրեց արդյունաբերության ղեկա-
վարման բարելավման, եղած արտադրական ռեզերվների ավելի լրիվ օգտա-
գործման, ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա զարգացման համար տեղա-
կան կադրերի դերի ու պատասխանատվության բարձրացման:
Սակայն սխալ կլիներ կարծել, թե Ժողտնտխորհի կազմակերպումից
հետո ամեն ինչ լավ է գնում: Արդյունաբերության և Ժողտնտխորհի աշխա-
տանքում հաջողությունների հետ միասին կան շատ լուրջ թերություններ,
դժվարություններ և չլուծված խնդիրներ:
Արդյունաբերության ղեկավարման հիմնական թերությունն այն է, որ
ռեսպուբլիկայում կան էլի մնացող շատ ձեռնարկություններ, որոնք չեն կա-
տարում նույնիսկ համախառն արտադրանքի պետական պլանը: Եթե ամբողջ



արդյունաբերությունը 1957 թվականի պլանը կատարել է 103 տոկոսով, ապա
միայն Ժողտնտխորհի 35 ձեռնարկություն չեն կատարել տարեկան պլանը
և երկրին նախատեսվածից պակաս են տվել 55 միլիոն ռուբլու արտադրանք:
Պետական պլանները սիստեմատիկաբար չեն կատարում Ջերժինսկու անվան
հաստոցաշինական, Արարատի ցեմենտի, Հախճապակու գործարանները,
բրդյա նուրբ գործվածքների կոմբինատը և տեղական արդյունաբերության ու
արհեստագործական կոոպերացիայի մի շարք ձեռնարկություններ:
Մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ չեն կատարում աշխա-
տանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման պլա-
նը, թույլ են տալիս անարտադրողական ծախսեր: Ժողտնտխորհի 43 արդյու-
նաբերական ձեռնարկություններ անցյալ տարի թույլ տվին ինքնարժեքի թան-
կացում 18,8 միլիոն ռուբլով: Էլեկտրատեխնիկական արդյունաբերության և
գործիքաշինության վարչության 13 ձեռնարկությունից 10-ը թույլ են տվել
թանկացում 6,4 միլիոն ռուբլով: Մեքենաշինության և հաստոցաշինության
վարչության 16 ձեռնարկությունից 7-ը թույլ են տվել ինքնարժեքի թանկա-
ցում 3,3 միլիոն ռուբլով: 1957 թվականի տասն ամիսներին Ժողտնտխորհի
ձեռնարկությունները անտնտեսավարության պատճառով թույլ են տվել 19,5
միլիոն ռուբլու անարտադրողական ծախսեր ու կորուստներ: Դա, հասկանալի
է, որ բացասաբար է ազդել աշխատանքի այնպիսի կարևոր ցուցանիշի վրա,
ինչպիսին արտադրանքի ինքնարժեքի իջեցումն է:
Խոշոր թերություններ կան արդյունաբերության պլանավորման և նրա
նյութա-տեխնիկական մատակարարման գործում: Նախկին արդյունաբերական
մինիստրությունները և ռեսպուբլիկայի Պետպլանը թույլ էին տալիս խզում
համախառն և ապրանքային արտադրանքի միջև: Պետպլանը տարիներ շա-
րունակ պլանավորման ժամանակ սխալ էր հաշվի առնում տեղական մի շարք
շինանյութերի պահանջմունքը: Դա հանգեցնում էր այն բանին, որ շինարա-
րական կազմակերպությունները շարունակ գաջի, կրի, սանիտարա-տեխնիկա-
կան և երկաթե արուքների կարիք էին զգում, որը լուրջ կերպով արգելակում
էր բնակարանային և արդյունաբերական շինարարությունը:
Պետք է ուղղակի ասել, որ ռեսպուբլիկայի Ժողտնտխորհը և Պետպլանը
չափազանց դանդաղ են վերակառուցում պլանավորող և մատակարարող կազ-
մակերպությունների աշխատանքը: Դրանց աշխատանքում չկա անհրաժեշտ
ճկունություն և օպերատիվություն, որը նոր տարվա արդեն առաջին օրերին
դժվարություններ է ստեղծում արդյունաբերական ձեռնարկությունների աշխա-
տանքում: Ռեսպուբլիկայի պարտիական, սովետական և տնտեսական օրգան-
ները պետք է մեծ աշխատանք կատարեն արդյունաբերության պլանավորման
և նյութա-տեխնիկական մատակարարման գործը կարգավորելու համար:
Համախառն արտադրանքի պլանի թերակատարումը և տեխնիկա-տնտե-
սական ցուցանիշներով մի շարք ձեռնարկությունների ետ մնալը բացատրվում
է, անշուշտ, ո՛չ միայն պլանավորման և նյութա-տեխնիկական մատակարար-
ման թերություններով: Դա բացատրվում է նաև պարտիական ու տնտեսական
ղեկավարման ցածր մակարդակով, արտադրության «նեղ տեղերը» վերացնելու
պատշաճ հաստատակամության բացակայությամբ: Պարտիական շատ կազ-
մակերպություններ հաշտվում են այդպիսի դրության հետ, խորամուխ չեն
լինում ձեռնարկության ետ մնալու պատճառների մեջ և բավարար միջոցներ
ձեռք չեն առնում քանակական ու որակական բոլոր ցուցանիշներով պետական

պլանի կատարման գործում ղեկավարների պատասխանատվությունը բարձրացնելու համար։

Արծարծելով Ժողտնտխորհի աշխատանքի մի քանի արդյունքներ, մենք պետք է մի փոքր ավելի մանրամասն վերլուծենք նրա ապարատի աշխատանքի մեթոդներն ու ոճը, երևան բերենք եղած թերություններն ու բացերը, որպեսզի թույլ չտանք դրանք ավելի խոր թափանցեն Ժողտնտխորհի՝ մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության ղեկավարման այդ կարևորագույն օրգանի երիտասարդ ապարատը։

Ժողտնտխորհի ապարատի աշխատանքի բարձր կարգապահությունից, ճշգրտությունից և օպերատիվությունից է կախված արտադրության ղեկավարման որակը։ Ճիշտ են վարվել Ժողտնտխորհի սկզբնական պարտիական կազմակերպությունը, նրա պարտիական կոմիտեն, որոնք լրջորեն ձեռնամուխ են եղել ապարատի աշխատանքի բարելավմանը և վճռական պայքար են սկսել քաշքշուկի ու ղեկավարման թղթային մեթոդի դեմ։

Դժբախտաբար, պետք է նշել, որ նախկին արդյունաբերական մինիստրությունների ապարատների մի շարք բացասական կողմեր թափանցել են Ժողտնտխորհի երիտասարդ ապարատը, նրա բաժիններն ու վարչությունները։ Արդեն կան տեղերից բարձրացվող հարցերի լուծումը ձգձգելու և ձեռնարկությունների կենդանի ու օպերատիվ ղեկավարումը թղթային քաշքշուկով փոխարինելու փաստեր։

Ժողտնտխորհի սկզբնական պարտիական կազմակերպության ժողովում բազմաթիվ փաստեր բերվեցին կենտրոնական ապարատի և վարչությունների առանձին աշխատողների անկարգապահության մասին, որոնք ժամանակին չեն կատարում ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետի և Ժողտնտխորհի որոշումները։ Պետական և արտադրական թույլ կարգապահության հետևանքով ձգձգվել է 1958 թվականի ժողովրդատնտեսական պլանի կազմումը և անփույթ էին կազմվել Պետպլանին ներկայացվող տեխնիկա-տնտեսական ցուցանիշների տվյալները։

Ժողտնտխորհի ապարատի աշխատանքում առավել վտանգավորը թղթային գրագրությունն ուռճացնելու տենդենցն է։ 1957 թվականի հուլիսի 1-ից մինչև դեկտեմբերի 10-ը Ժողտնտխորհի ապարատը ստացել է 6.102 և ուղարկել 2.735 նամակ ու հեռագիր։ Ստացվում է, որ Ժողտնտխորհի ապարատը օրական միջին հաշվով ստանում և ուղարկում է 70 նամակ ու հեռագիր։ Պետք է ուշադրություն դարձնել այն բանի վրա, որ 1.750 զանազան նամակներ Ժողտնտխորհի ապարատն ստացել է իր ճյուղային վարչություններից։

Հիշյալ ժամանակամիջոցում Գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության վարչությունը ստացել է 3.300 և իր տեղական կազմակերպություններին ուղարկել 2.620 պաշտոնական գրություն ու հեռագիր։ Գրագրության ասպարեզում առաջին տեղը գրավում է Նյութա-տեխնիկական մատակարարման վարչությունը, որը հինգ ու կես ամսում գրել և ուղարկել է 7.512 նամակ ու հեռագիր։ Ընդ որում, այդ գրագրության մեծ մասը չի բխում գործի շահերից։ Այդ վարչության որոշ աշխատողներ ինքնապահովագրման համար ուղարկում են ձևական պատասխաններ։

Որոշ աշխատողներ այնքան են հրապուրվում գրագրությամբ, որ բանը հասցնում են ծիծաղաշարժ դեպքերի։ Օրինակ, Նյութա-տեխնիկական մատակարարման վարչությունից ընկ. Գ. Դարբինյանի ստորագրությամբ գրություն է գնացել էներգետիկ վարչություն, որով պահանջվում է հաղորդել, թե քանի տուփ է հարկավոր (հավանաբար պահածոյի), իսկ տրանսպորտային վարչությունը ուղարկել է նամակ, որով էներգետիկ վարչությունից պահանջում է, թե երկաթուղային քանի վագոն է հարկավոր արտադրանքն ուղարկելու համար։



Եթե Նյութա-տեխնիկական մատակարարման և Տրանսպորտային վարչությունների ընկերները գրելուց առաջ փոքրիշատե մտածեին, ապա նրանց համար հասկանալի կլիներ, որ էլեկտրաէներգիայի համար չեն պահանջվում ո՛չ տուփեր, ո՛չ էլ երկաթուղային վագոններ։ Ահա թե ինչ են նշանակում թղթային մոլուցքը և գործին բյուրոկրատական մոտեցումը։

Կան փաստեր, որ տեղերից տրված մի շարք ահազանգումներ ժամանակին արձագանք չեն գտել։ 1957 թվականի հոկտեմբերի 24-ին Ժողտնտխորհի ընդհանուր բաժինը Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատից հեռագիր է ստանում վթարային դրության մասին։ Հեռագրով պահանջվում է անհապաղ օգնություն։ Փոխանակ անհապաղ արձագանքելու և շտապ միջոցներ ձեռք առնելու, այդ հեռագիրը տասն օր պահվում է ապարատում և ընկ. ընկ. Ս. Թումանյանի, Լ. Երզնկյանի, Սաֆարյանի և ուրիշների մակագրություններով անցնում է ութ ատյան։ Վերջապես, Ժողտնտխորհի կապիտալ շինարարության բաժնի ինժեներ ընկ. Դոլուխանյանը գալիս է ցեմենտի գործարան, երբ վթարը, իհարկե, արդեն լիկվիդացվել էր, առանց Ժողտնտխորհի ղեկավար աշխատողների։

Այսպիսի փաստերի հետ չի կարելի հաշտվել։ Չի կարելի թույլ տալ, որ աշխատանքի արատավոր ոճը՝ թղթային քաշքշուկն ու բյուրոկրատիզմը խոր թափանցեն Ժողտնտխորհի և նրա վարչությունների երիտասարդ օրգանիզմի մեջ։ Ժողտնտխորհի գործունեության դրական արդյունքները զգալիորեն ավելի շատ կլինեին, եթե նրա ապարատը աշխատեր կարգապահ, հստակ և օպերատիվ։

Ճիշտ է վարվել Ժողտնտխորհի սկզբնական պարտիական կազմակերպությունը, որ բարձրացրել է պետական ու պարտիական կարգապահությունն ամրապնդելու հարցը և ձեռնամուխ է եղել աշխատանքի թղթային-բյուրոկրատական մեթոդների տարրերը հենց սաղմի մեջ ոչնչացնելուն։ Պարտիական կոմիտեն պարտավոր է հետևողականորեն ու հաստատակամորեն շարունակել իր աշխատանքն այս ուղղությամբ։

Մենք պետք է վճռական պայքար մղենք թղթային քաշքշուկի և ղեկավարման գրասենյակային-բյուրոկրատական մեթոդների դեմ, արմատապես բարելավենք և անընդհատ կատարելագործենք Ժողտնտխորհի, նրա բաժինների ու վարչությունների ապարատների աշխատանքը։ Դա թույլ կտա շատ ավելի մեծ արդյունավետությամբ օգտագործել արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպական նոր ձևերի հսկայական առավելությունները։

***

Ժողտնտխորհի և արդյունաբերության բոլոր աշխատողների առջև մեծ խնդիրներ են կանգնած նոր տարում՝ 1958 թվականին։ Այս տարվա պետական պլանը կկազմի 6 միլիարդ 667 միլիոն ռուբլի, այդ թվում Ժողտնտխորհը պետք է տա 5 միլիարդ 510 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք։

digitised by A.R.A.R.@

*Արդյունաբերական արտադրանքի աճը պետք է տեղի ունենա գործող
ձեռնարկությունների ընդլայնման ու տեխնիկական զինման, դրանց արտա-
դրական ռեզերվները առավելագույն չափերով օգտագործելու հաշվին, ինչպես
նաև նոր ձեռնարկություններ շահագործման հանձնելու հաշվին։ Ընթացիկ
տարում պետք է ավարտվեն և շահագործման հանձնվեն երկրի համար կա-
րևոր նշանակություն ունեցող՝ ռելսային գործարանի առաջին հերթը և մի
շարք այլ արդյունաբերական ձեռնարկություններ։*

*Նոր պայմաններում, երբ արդյունաբերության ղեկավարումը կենտրոնաց-
ված է ըստ տնտեսական շրջանների, հատկապես աճում է պարտիական օր-
գանների դերն ու պատասխանատվությունը արդյունաբերության պետական
պլանի կատարման համար։ Պարտիական կազմակերպությունները պետք է
բարձրացնեն պահանջկոտությունը տնտեսական կադրերի նկատմամբ, ավելի
խոր թափանցեն յուրաքանչյուր ձեռնարկության էկոնոմիկայի, տեխնիկայի ու
ֆինանսների մեջ, բարձրացնեն պարտիական և արհմիութենական կազմա-
կերպությունների դերը պլանի կատարման համար։*

*Տեխնիկական հետագա առաջադիմության, աշխատանքի արտադրողակա-
նության բարձրացման, թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման և
որակի բարձրացման հարցերը մշտապես պետք է գտնվեն պարտիական, սո-
վետական ու տնտեսական կազմակերպությունների ուշադրության կենտ-
րոնում։*

*Ներկայումս ռեսպուբլիկայի Պետպլանը մշակում է արդյունաբերության
զարգացման 1958—1965 թվականների հեռանկարային պլանները։ Նախա-
տեսվում է արդյունաբերության զարգացման ուղղության հետագա փոփոխում՝
ոչ էներգատար և, առաջին հերթին, մեքենաշինական, գործիքաշինական, քի-
միական նոր ձեռնարկությունների կառուցման ու գործող ձեռնարկությունների
ընդլայնման հաշվին։*

*1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, արդյունաբերական
արտադրանքի թողարկումը կավելանա 8,6 տոկոսով, այդ թվում քիմիական և
ռետինե արդյունաբերությանը՝ 24 տոկոսով, շինանյութերինը՝ 22, մեքենաշի-
նական և մետաղամշակման արդյունաբերությանը՝ 21 տոկոսով։ Մինչև 100
կիլովատ կարողությամբ գեներատորների թողարկումը կավելանա 48 տոկո-
սով, էլեկտրալամպերինը՝ 56 տոկոսով, ցեմենտինը՝ 44 տոկոսով և այլն։
Ավելացվում է նաև ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։*

*Հունվարի 25-ին իր աշխատանքը կսկսի Հայաստանի Կոմպարտիայի
XIX համագումարը, որը կընդհանրացնի տնտեսական և կուլտուրական շինա-
րարության բոլոր բնագավառներում ռեսպուբլիկայի պարտիական կազմակեր-
պության աշխատանքը, կբացահայտի թերությունները և կնշի արդյունաբերու-
թյան ու տնտեսության բոլոր ճյուղերի հետագա առաջընթացի ուղիները։*

*Պարտիական, սովետական, արհմիութենական ու տնտեսական օրգան-
ների պարտքն է՝ ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը,
որպեսզի նոր տարվա առաջին իսկ օրերից յուրաքանչյուր ձեռնարկություն
բոլոր ցուցանիշներով հաջողությամբ կատարի պետական պլանը, բոլոր ուժե-
րը մոբիլիզացնել արդյունաբերության աշխատողների առջև պարտիայի կող-
մից դրված խնդիրները պատվով կատարելու համար։*

---

# ՍՄԿՊ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՇԱԾ ՈՒՂԻՆԵՐՈՎ

## *ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը
Սովետական Միության պատմական կարևոր էտապ
կոմունիզմի ճանապարհին մեր երկրի զարգացման պատմական կարևոր էտապ
եղավ։ Սովետական ժողովուրդը՝ ստեղծագործական մեծ ավյունով պայքարում
է համագումարի որոշումների կենսագործման համար և խոշոր հաջողություն-
ներ է ձեռք բերել տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնա-
գավառներում։*

*Հունվարի սկզբներին տեղի ունեցավ Հայաստանի Կոմպարտիայի Երևանի
քաղաքային XXVI կոնֆերանսը, որը հանրագումարի բե-
րեց վերջին երկու տարիների ընթացքում քաղաքի պարտիական կազմակեր-
պությունների կատարած աշխատանքը, նշեց պարտիայի XX համագումարի
որոշումները մինչև վերջ անշեղորեն կենսագործելու միջոցառումներ։*

*Երևանի պարտիական կազմակերպությունները, կենսագործելով ՍՄԿՊ
XX համագումարի որոշումները, սկսել են ավելի մոտիկից զբաղվել տնտեսա-
կան հարցերով, ակտիվորեն ներգործել արդյունաբերական ձեռնարկություն-
ների աշխատանքի վրա, լավագույն ձևով օգտագործել ներքին ռեզերվները՝
արտադրանքի թողարկումը ավելացնելու համար։ Եվ դա տվել է իր արդ-
յունքը։*

*Հաջողությամբ են կատարվել արդյունաբերության համախառն արտա-
դրանքի վերջին երկու տարվա պլանները։ Քաղաքի արդյունաբերությունը ժամ-
կետից շուտ կատարեց 1957 թվականի համախառն արտադրանքի պլանը և
երկրին տվեց 120 միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք։ 1955 թվականի հա-
մեմատությամբ անցած տարի արդյունաբերական արտադրանքի աճը կազմեց
22,3 տոկոս։ Աշխատանքի արտադրողականությունը 1957 թվականին 5,1 տո-
կոսով գերազանցեց 1955 թվականի մակարդակը։ Զգալիորեն ավելացել է
արտադրության մի շարք կարևորագույն տեսակների արտադրանքի թողար-
կումը։*

*Վերջին երկու տարում շահագործման են հանձնվել ավելի քան 20 նոր
արդյունաբերական ձեռնարկություն։ Ընդարձակվել են եղած մի շարք ձեռ-
նարկությունները։*

*Նոր ձեռնարկությունների գործարկման շնորհիվ Երևանում ստեղծվել են
արդյունաբերության բոլորովին նոր ճյուղեր՝ սարքաշինությունը և ապարա-
տաշինությունը. լայն զարգացում է ստացել էլեկտրատեխնիկական և մետա-
ղամշակման արդյունաբերությունը։ Այսպիսով, եթե 1955 թվականին ծանր
արդյունաբերության տեսակարար կշիռը քաղաքի ամբողջ արդյունաբերության
մեջ կազմում էր 43,5 տոկոս, ապա 1957 թվականին այն կազմեց 47 տոկոս։*

*ՍՄԿՊ XX համագումարը նշեց, որ արդյունաբերության հետագա աճի*






digitised by A.R.A.R.@

վճռական պայմանը նրա անընդհատ տեխնիկական պրոգրեսն է։ Քաղաքի պարտիական կազմակերպությունները զգալի աշխատանք են կատարել նոր տեխնիկայի արմատավորման ուղղությամբ։ Շատ ձեռնարկություններ տեղադրելով բարձր արտադրողական մեքենաներ և սարքավորումներ, ռացիոնալ օգտագործելով ներքին ռեզերվները և արտադրական տարածությունները, հասել են աշխատանքի արտադրողականության արագ բարձրացման։ Այս տեսակետից լավ օրինակ է տալիս Ս. Մ. Կիրովի անվան գործարանը. 1956—57 թվականների ընթացքում այստեղ լրիվ մեխանիզացիայի ենթարկվեցին կրաքարի ջարդման և փոխադրման, աղի և ածխի բեռնաթափման աշխատանքները։ Վերակառուցման ենթարկվեցին կարբիդի վառարանները, որի շնորհիվ նրանց արտադրողականությունը բարձրացավ մոտ 70 տոկոսով։

Երևանի էլեկտրա-տեխնիկական գործարանում վերջին երկու տարում տեղադրվել և շահագործման են հանձնվել ավելի քան 70 տարբեր տեսակի բարձր արտադրողականություն ունեցող հաստոցներ ու սարքավորումներ, որոնց շնորհիվ էլեկտրաշարժիչների արտադրանքը 1957 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավելացավ երկու անգամ։ Առանց կապիտալ խոշոր ներդրումների, արտադրական տարածությունների ռացիոնալ օգտագործման շնորհիվ ավտոդողերի գործարանի կոլեկտիվը 1957 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, արտադրանքը ավելացրեց 71 տոկոսով։

Նոր տեխնիկայի արմատավորման շնորհիվ մեզ մոտ խրացվել և մասսայաբար թողարկվում են տեխնիկապես ավելի կատարելագործված գեներատորներ, տրանսֆորմատորներ, կոմպլեկտային ենթակայաններ, հաստոցներ, ժամացույցներ, հիդրոտուրբիններ, կոմպրեսորներ և այլն։

Մեր նվաճումներն արդյունաբերության բնագավառում ավելի մեծ կլինեին, եթե ամենուրեք պատշաճ ուշադրություն դարձնեին նոր տեխնիկայի արմատավորմանը և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Դժբախտաբար շարունակվում է անպատասխանատվությունը նոր, առաջավոր տեխնիկայի արմատավորման գործում։ Ժողտնտխորհի Երևանի արդյունաբերական ձեռնարկություններում չեն տեղադրված ավելի քան 35 միլիոն ռուբլու արժողությամբ սարքավորում և մեխանիզմներ։

Թե ինչպիսի անտարբեր վերաբերմունք կա դեպի նոր տեխնիկան, ցույց է տալիս հետևյալ փաստը։ Երևանի մուլիտի և ապակու տարայի գործարանը միակն է Սովետական Միությունում, որը մուլիտի աղյուսներ է տալիս ոչ միայն մեր, այլև մի շարք ժողովրդա-դեմոկրատական երկրների ապակու արդյունաբերության ձեռնարկություններին. բայց գործարանը չի կատարում մուլիտի աղյուսների արտադրության պլանները և դա առաջին հերթին այն պատճառով, որ վաղուց ստացված և նույնիսկ տեղադրված նոր վառարանը, որի կարողությունը ավելին է, քան ներկայումս գործող երեք վառարաններինը միասին վերցրած, ինչ-ինչ պատճառներով շահագործման չի հանձնվում։

Նոր տեխնիկայի դանդաղ արմատավորումը, հասկանալի է, ազդում է աշխատանքի արտադրողականության վրա։ Քաղաքի ձեռնարկությունների մոտ 20 տոկոսը 1957 թվականին չկատարեց աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը. վիճակը վատ է առանձնապես հախճապակու, «Նոր երկար», Կրուպսկայայի անվան, հրուշակեղեն-մակարոնի ֆաբրիկաներում, մսի կոմբինատում։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա բացասաբար է



ազդում այն, որ ձեռնարկություններում շատ-շատ են օժանդակ աշխատանք կատարող մարդիկ։ Այսպես, օրինակ, Ժողտնտխորհի էլեկտրատեխնիկական և գործիքաշինության վարչության Երևանի ձեռնարկություններում օժանդակ բանվորները կազմում են արտադրողների ընդհանուր թվի 40—50 տոկոսը։ Ուսումնասիրությունը ցույց է տվել, որ այդ կատեգորիայի աշխատողների մեծ մասը կենտրոնացված է հում նյութը, կիսաֆաբրիկատները և պատրաստի ապրանքը ցեխից-ցեխ կամ պահեստ փոխադրելու վրա։ Եթե այդ աշխատանքի 50 տոկոսը մեխանիզացիայի ենթարկենք, ապա աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա 10—15 տոկոսով։

Պարտիայի քաղաքային կոմիտեի, շրջկոմների, ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ լայն ճանապարհ հարթել տեխնիկական պրոգրեսի համար, կոտրել հինը, որ տեղ-տեղ կանգնած է նորի ճանապարհին, հասնել այն բանին, որ արդյունաբերության մեջ հաստատակամորեն և պլանաչափ կերպով արմատավորվի առաջավոր տեխնիկան, իրականացվի գործող սարքավորման մոդեռնացումը, բարելավվի ու կատարելագործվի աշխատանքի և արտադրության կազմակերպումը, ավելի լայնորեն կատարվի արդյունաբերության մասնագիտացումն ու կոոպերացումը, դրա հիման վրա ապահովվի աշխատանքի արտադրողականության բարձրացումը, որը արտադրության աճի և ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման վճռական պայմանն է։

Մեզ չի կարող լուրջ անհանգստություն չպատճառել արտադրանքի որակը։ Ձեռնարկությունների ղեկավարները երբեմն աններելի թողտվություն են հանդես բերում այդ գործում, իսկ պարտիայի շրջկոմները և պարտիական կազմակերպությունները հանդուրժում են այդ, պատասխանատվության չեն կանչում մեղավորներին։ Քաղսովետի տեղական արդյունաբերության վարչության Ստալինյան շրջանի կարի ֆաբրիկան սիստեմատիկաբար խախտում է ասորտիմենտը, այստեղ խիստ ընկած է արտադրանքի որակը։ Հարց է առաջ գալիս, ինչու ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունը պատասխանատվության չի կանչում ֆաբրիկայի անպատասխանատու դիրեկտոր ընկ. Հովսեփյանին։ Ջկալովի անվան ֆաբրիկայի արտադրած շատ կոշիկներ 10 օրվա ուրախություն են պատճառում հագնողին, իսկ «Հայրենիք» արտելում սովորական երևույթ է դարձել կոշիկները տարբեր գույնի երեսացուներով կարելը։ Անորակ արտադրանք տալու գործում աչքի է ընկնում Մարտի 8-ի անվան կարի ֆաբրիկան, որի 1957 թվականի 9 ամիսների արտադրանքի 37 տոկոսը անորակ լինելու պատճառով ետ է վերադարձվել ֆաբրիկա՝ վերամշակման համար։

Արդյունաբերության կառավարման վերակառուցման կապակցությամբ ստեղծվեց քաղաքային Սովետի տեղական արդյունաբերության վարչությունը։ Վարչության իրավասության տակ գտնվում են մոտ երեք տասնյակ արդյունաբերական և կենցաղային սպասարկման ձեռնարկություններ, որոնց տարեկան համախառն արտադրանքը կազմում է ավելի քան 300 միլիոն ռուբլի։ Տեղական արդյունաբերությունը կատարեց համախառն արտադրանքի 1957 թվականի պլանը։

Սակայն տեղական արդյունաբերությունը դեռևս հեռու է սովետական մարդկանց աճած պահանջները բավարարելուց, այստեղ պակասում է նախաձեռնությունը, կազմակերպվածությունը. մենք, օրինակ, կարող ենք կազմա-

digitised by A.R.A.R.@

կերպել լինոլիումի արտադրությունը, որի պահանջը մեծ է, բայց այն ձգձգվում է։ Ցածր է արտադրվող հագուստի, կոշիկեղենի, հացի, հրուշակեղենի որակը։ Ինչո՞ւ, օրինակ, չի կարելի ավելացնել հացի նոր տեսակների արտադրությունը, թխել ավելի շատ լավաշ, որի նկատմամբ մեծ պահանջ կա։ Արդարացի դժգոհություններ կան կենցաղային սպասարկման ձեռնարկությունների և արհեստանոցների աշխատողների նկատմամբ. կոշիկի և հագուստեղենի անհատական պատվերների բաժիններում ձգձգում են պատվերների կատարումը. կատարյալ անպատասխանատվություն և անբարեխղճություն են հանդես բերում որակի նկատմամբ։

Քաղսովետի գործկոմը պետք է կտրուկ միջոցներ ձեռք առնի իր ենթակայության ձեռնարկությունների աշխատանքը արմատապես բարելավելու համար։

Ամեն կերպ ավելացնելով ժողովրդական սպառման բազմազան ապրանքների թողարկումը, պարտիական և տնտեսական օրգանները պարտավոր են վճռականորեն բարձրացնել արտադրանքի որակը, սիստեմատիկաբար իջեցնել նրա ինքնարժեքը, իրագործել խնայողության խստագույն ռեժիմ, արմատավորել տնտեսական հաշվարկը։

Մենք ընթացիկ պլանների կատարման հետ միաժամանակ, պետք է մտածենք, լրջորեն մտածենք մեր արդյունաբերության զարգացման հեռանկարների, նրա վաղվա օրվա մասին։ Մենք թևակոխեցինք 1958 թվականը։ 1957 թվականի համեմատությամբ 1958 թվականին զգալիորեն ավելանալու է արդյունաբերության արտադրանքի ծավալը, շարք են մտնելու նոր ձեռնարկություններ, իրացվելու են արտադրանքի մի շարք նոր տեսակներ։ Կասկածից վեր է, որ մայրաքաղաքի բանվորները, ինժեներները, տեխնիկները, բոլոր աշխատողները՝ պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, լայնորեն ծավալելով համաժողովրդական սոցիալիստական մրցություն, ստեղծագործական նոր եռանդով կպայքարեն արդյունաբերության հզոր վերելքի, վեցերորդ հնգամյա պլանի հաջող կատարման համար։

Տարեցտարի ավելանում են կապիտալ ներդրումները ժողովրդական տնտեսության մեջ։ Եթե 1955 թվականին կապիտալ ներդրումների ծավալը Երևանում կազմում էր 228 միլիոն ռուբլի, ապա 1957 թվականին այն համարյա կրկնապատկվեց, հասավ 404 միլիոն ռուբլու։ Սակայն, պարտիայի քաղաքային կոմիտեն, շրջկոմները, շինարարական կազմակերպությունների ղեկավարները չեն հասել այն բանին, որ լրիվին իրացվեն կապիտալ ներդրումները և կատարվեն շինարարության պլանները։ Վրդովեցուցիչ է, բայց փաստ. գրեթե չկա մի արդյունաբերական օբյեկտ, որ ժամանակին շահագործման հանձնվեր։ Դանդաղ է ընթանում ոչ միայն արդյունաբերական շենքերի շինարարությունը։ Պարտիան և կառավարությունը հսկայական նշանակություն են տալիս բնակարանային շինարարությանը, որը աշխատավորների բարեկեցության բարձրացման կարևոր գործոն է։ Մեզ մոտ կառուցվել և կառուցվում են ոչ քիչ բնակարաններ. միայն վերջին երկու տարում բնակարաններ են ստացել 4000-ից ավելի ընտանիքներ։ Այնուամենայնիվ, բնակարանային հարցը մնում է մեր նեղ տեղերից մեկը։

Բնակարանային պահանջը զգալիորեն կմեղմանար, եթե Երևանի շինարարական կազմակերպությունները կարողանային ժամանակին իրացնել պետության կողմից այդ նպատակի համար հատկացված միջոցները։ Բանն այն



է, որ առանց բացառության, ամեն տարի թերակատարվում են բնակարանային շինարարության պլանները։ Վերցնենք հենց վերջին երկու տարիները։ 1956 թվականին պետք է շահագործման հանձնվեր 82 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, բայց հանձնվեց 69 հազար քառակուսի մետր, 1957 թվականին պետք է հանձնվեր 92 հազար քառակուսի մետր, հանձնվեց 56 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Շինարարության մինիստրությունը, մինիստր ընկ. Սարուխանյանը պետք է լուրջ եզրակացություններ անեն այս ամենից, կտրուկ միջոցներ ձեռք առնեն շինարարության պլանները կատարելու համար։ Հարկավոր է խիստ հսկողություն սահմանել պետական միջոցների վրա, տրեստներում, շինարարական դրասենյակներում և հրապարակներում ունենալ նյութերի խիստ հաշվառում և դրանք պահպանել այնպես, որ օգտագործվեն իրենց իսկ նպատակին։

Արմատապես պետք է բարելավել բնակարանային շինարարության որակը։ Չի կարելի նորմալ համարել, որ շենքերը շահագործման են հանձնվում լուրջ թերություններով. ջեռուցման սիստեմը վատ է աշխատում, դռները և լուսամուտները կանոնավոր չեն փակվում ու բացվում, սանիտարա-տեխնիկական սարքավորումը վատ է տեղադրվում և այլն։

Քաղաքի պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ հսկողության տակ վերցնել բնակարանային շինարարությունը և ամեն ինչ անել այդ գործը հաջողությամբ առաջ մղելու համար։ Պարտիան և կառավարությունը խնդիր են դրել առաջիկա 10—12 տարիների ընթացքում ապահովել բնակարանային ֆոնդի զգալի աճը և լուծել բնակարանային պրոբլեմը։ Հայաստանի ԿՊ Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը, ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ «ՍՍՌՄ-ում բնակարանային շինարարությունը զարգացնելու մասին» որոշումից, միջոցառումներ են մշակել այդ ուղղությամբ։ Մենք ունենք բոլոր հնարավորությունները, կարող ենք և պետք է լուծենք բնակարանային պրոբլեմը. ինչքան շուտ, այնքան լավ։

Պարտիան և կառավարությունը միշտ էլ մեծ ուշադրություն են նվիրել ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացմանը։ Վերջին տարիներս իրագործվեցին մի շարք կարևոր ձեռնարկումներ, որոնք ապահովում են սովետական ժողովրդի կյանքի բարելավումը։

Աշխատավորների բարեկեցության աճն իր արտահայտությունն է գտնում նաև սովետական առևտրի ծավալման մեջ։ Սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքի՝ պարտիայի մշակած ծրագրի իրականացման շնորհիվ նկատելիորեն ավելացել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, բարելավվել է բնակչության մատակարարումը։ Դրա վառ ապացույցն են հետևյալ փաստերը։ 1957 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, մանրածախ ապրանքաշրջանառությունը մեծացել է ավելի քան 420 միլիոն ռուբլով։ Նկատելիորեն ավելացել է մեկ շնչին վաճառվող կարևորագույն ապրանքների վաճառքը։ 1957 թվականին քաղաքի բնակչությանը վաճառվել է գրեթե այնքան սննդամթերք, որքան վաճառվել է 1955—1956 թվականներին միասին վերցրած։

Չնայած դրան, դեռևս շատ լուրջ թերություններ կան առևտրի բնագավառում, դեռ չի ստեղծված այնպիսի վիճակ, որ բնակչությունն իր ապրած վայրում կարողանա ձեռք բերել իր ցանկացած ապրանքը։ Շատ ցածր է գնորդների սպասարկման կուլտուրան, առևտրի ցանցի պարտիական կազմա-

digitised by A.R.A.R.@

կերպությունների անհրաժեշտ պայքար չեն մղում սովետական առևտրի կանոնները խախտողների, թերաչափողների և թերակշռողների դեմ։

Պարտիայի քաղաքային կոմիտեն, պարտիայի շրջկոմները պետք է է՛լ ավելի ուժեղացնեն հսկողությունը առևտրի նկատմամբ, որը մեր պարտիական կազմակերպությունների հարազատ գործն է։

Շատ կարևոր խնդիր է ժողովրդական առողջապահության հետագա բարելավումը։ Վերջին տարիների ընթացքում որոշ չափով ընդարձակվել է քաղաքի բուժհիմնարկների ցանցը. ավելացել է գործող մահճակալների թիվը։ Սակայն Առողջապահության մինիստրությունը և քաղաքային Սովետի գործկոմի առողջապահության բաժինը կտրուկ միջոցներ ձեռք չեն առնում հիվանդանոցներում բնակչության սպասարկումը լավ կազմակերպելու համար։ Պոլիկլինիկաներում և հիվանդանոցներում հերթեր են լինում, բուժաշխատողների կողմից երբեմն նկատվում է անհոգի վերաբերմունք դեպի հիվանդները։ Մենք պետք է մտածենք նոր բժշկական հիմնարկներ կառուցելու և եղածները բեռնաթափելու մասին։ Քաղաքի պարտիական և սովետական օրգանները պետք է մոտիկից զբաղվեն ժողովրդական առողջապահության հարցերով, բարելավեն բժշկական հիմնարկների գործունեությունը։ Երևանը պետք է ունենա մայրաքաղաքին վայել հիվանդանոցներ, ամբուլատորիաներ, կոնսուլտացիաներ և բժշկական այլ հիմնարկներ։

Նոր հաջողություններ են ձեռք բերված կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։ Աճել է դպրոցների ցանցը, ավելացել է սովորող երեխաների թիվը։ Որոշ քայլեր են կատարված պոլիտեխնիկ ուսուցման իրականացման գործում։ Քաղաքի 82 դպրոցներում կազմակերպված են մետաղի մշակման և փայտամշակման արհեստանոցներ, իսկ 16 դպրոցում գործում են լրիվ կոմբինացված արհեստանոցներ։ Այս գործում դպրոցներին լայն օգնություն են ցույց տալիս շեֆ ձեռնարկությունները, մասնավորապես պետք է նշել Կիրովի անվան, հայէլեկտրո, կանաչի, ավտոպահեստամասերի, կոմպրեսորների գործարանների պարտիական կազմակերպությունների և տնտեսական ղեկավարների հոգատար վերաբերմունքը իրենց շեֆ դպրոցների նկատմամբ։

Դպրոցի թերությունը առաջվա նման ուսուցման կտրվածությունն է կյանքից։ Մեր ժողովրդական կրթության օրգանների աշխատողները դեռևս զբաղված են պոլիտեխնիկական ուսուցման օգտին ընդհանուր խոսակցություններով, փոխանակ վճռական քայլեր կատարելու դրա պրակտիկ իրականացման համար։ Սովորողները սիստեմատիկաբար հաղորդակից չեն դարձվում մեր ձեռնարկությունների աշխատանքին։ Բայց չէ՞ որ շրջանավարտների մեծ մասը չի ընդունվում բարձրագույն ուսումնական հաստատություններ, և հետևաբար, պետք է աշխատանքի անցնի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։

Լուրջ թերություններ կան պարտուսի օրենքի կենսագործման ուղղությամբ. ճիշտ է, դպրոցներից մաղված երեխաների թիվը համեմատաբար պակասել է, բայց քաղաքում պարտադիր ուսուցումից առայժմ դուրս են մնում հարյուրավոր աշակերտներ։ Քաղաքի դպրոցներում դեռևս ցածր է սովորողների առաջադիմությունը։ 1956—57 ուսումնական տարում նույն դասարաններում մնացին ավելի քան 6000 աշակերտ։ Առաջադիմությունը ցածր է հատկապես Սունդուկյանի, Թելմանի, Գրիբոեդովի անվան դպրոցներում։



Քաղկոմը և շրջկոմները դեռևս չեն հասել դպրոցական սկզբնական պարտիական կազմակերպությունների դերի բարձրացմանը ուսումնա-դաստիարակչական աշխատանքների գործում։ Պետք է արմատական միջոցներ ձեռք առնել դպրոցներում դաստիարակչական աշխատանքի որակի բարձրացման, սովորողների կարգապահության ամրապնդման համար։ Հարկավոր է ստեղծել աշակերտների ամուր, առողջ կոլեկտիվ, բարելավել կոմերիտական և պիոներական կազմակերպությունների աշխատանքը դպրոցում, ապահովել դպրոցի և ընտանիքի ջանքերի միացումը սովորողների ճիշտ դաստիարակության համար։

Աճող սերնդի կոմունիստական դաստիարակությունը պարտիական կազմակերպությունների հարազատ գործն է։ Մենք պետք է հոգատարությամբ շրջապատենք ուսուցչին, ըստ արժանվույն գնահատենք նրա շնորհակալ աշխատանքը, այնպես անենք, որ նա հաջողությամբ կատարի իր առջև դրված պատվավոր խնդիրը։

Մեզ չի կարող չմտահոգել նախադպրոցական հիմնարկների աշխատանքը։ Մենք, ինչ գնով էլ լինի, պետք է ընդարձակենք մանկապարտեզների և մանկամսուրների ցանցը։

Մեզ մոտ հսկայական աշխատանք է կատարված ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների համար մասնագետների պատրաստման ուղղությամբ։ Վերջին երկու տարվա ընթացքում Երևանի բարձրագույն ուսումնական հաստատությունները և տեխնիկումները տվել են բարձրագույն և միջնակարգ կրթությամբ 11.300 մասնագետ. ընդլայնվել է մասնագետների պատրաստումը երեկոյան և հեռակա բուհերում։

Բարձրագույն դպրոցի աշխատանքի գլխավոր թերությունն այն է, որ դեռևս պատշաճ ուշադրություն չի դարձվում մասնագետների պատրաստման որակի վրա. դա ամենից առաջ բացատրվում է նրանով, որ բուհերը թույլ են կապված պրակտիկայի, արտադրության հետ։ Մեր տեխնիկան անընդհատ առաջ է գնում և հրաշքներ է գործում, մինչդեռ բարձրագույն դպրոցները ետ են մնում տեխնիկայի արդի մակարդակից. երիտասարդ ինժեները, գյուղատնտեսը, ուսման ընթացքում բավարար գիտելիքներ չեն ստանում կոնկրետ էկոնոմիկայի և արտադրության կազմակերպման հարցերի վերաբերյալ։ Հարկավոր է արմատապես բարելավել ուսանողների արտադրական պրակտիկան. ուսանողները պետք է լինեն մեր ռեսպուբլիկայի, մեր Միության ամենալավագույն ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովետական տնտեսություններում, մոտիկից ծանոթանան նոր տեխնիկայի, արտադրության կազմակերպման հետ, այնտեղ ձեռք բերեն աշխատանքային և արտադրական ունակություններ։

Անվիճելի են մայրաքաղաքի գիտական հիմնարկների և գիտնականների ձեռք բերած նվաճումները։ Միաժամանակ չենք կարող չնշել մեր գիտական հիմնարկների գործունեության մեջ եղած լուրջ թերությունները. ամենահիմնական թերությունը այն է, որ շատ գիտական հիմնարկներ իրենց ուշադրությունը չեն կենտրոնացնում գործնական նշանակություն ունեցող հարցերի լուծման վրա, չեն ընդհանրացնում մեր էկոնոմիկայի առաջավոր փորձը, թույլ են կապված պրակտիկայի, արտադրության հետ։

Երևանի պարտիական կազմակերպությունները պետք է լայն օգնություն

digitised by A.R.A.R.@

ցույց տան մեր գիտնականներին՝ գիտության դերը կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների լուծման գործում բարձրացնելու համար։

Երևանն ունի կուլտուր-լուսավորական հիմնարկների լայն ցանց։ Սակայն պետք է նշել, որ պարտիական կազմակերպությունները հարկ եղած ուշադրություն չեն դարձնում դրանց վրա. ցածր է կուլտուրայի տներում, ակումբներում, գրադարաններում տարվող աշխատանքի մակարդակը. լավ չի կազմակերպված քաղաքի բնակչության կինոսպասարկումը։ Անհրաժեշտ է քաղաքում ունենալ նոր կինո-թատրոններ, ընդարձակել ակումբների և գրադարանների ցանցը, նրանց համար ստեղծել աշխատանքի տանելի պայմաններ։

ՍՄԿՊ XX համագումարը խնդիր դրեց՝ ամեն կերպ բարձրացնել պարտիայի քաղկոմների ու քաղաքային շրջկոմների պատասխանատվությունը արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի համար։ Կենսագործելով համագումարի պահանջը, քաղաքի պարտիական կազմակերպությունները նկատելի շրջադարձ են կատարել դեպի տնտեսական շինարարության կոնկրետ ղեկավարման հարցերը, ուժեղացրել են արդյունաբերական ձեռնարկությունների տեխնիկայի և էկոնոմիկայի ուսումնասիրումը։

Սակայն կարելի՞ է արդյոք ասել, որ քաղկոմը, շրջկոմները և պարտիական կազմակերպությունները անում են անհրաժեշտ ամեն բան տնտեսության պարտիական ղեկավարման ասպարեզում։ Ոչ, չի կարելի ասել։ Այդ մասին է վկայում թեկուզ այն, որ քաղաքի մի շարք ձեռնարկություններ գտնվում են խրոնիկական ճեղքվածքի մեջ։ Քաղկոմը, շրջկոմները, սկզբնական պարտկազմակերպություններն անհրաժեշտ հետևողականություն հանդես չեն բերում ձեռնարկություններն այդ վիճակից դուրս բերելու համար։

Վերջին տարիների ընթացքում զգալի աշխատանք է կատարված պարտիական օրգանների կազմակերպական կառուցվածքը և նրանց գործունեության ձևերը կատարելագործելու ուղղությամբ։ Պարտիայի Ստալինյան և 26 կոմիսարների շրջկոմներում վերացվեցին բնագավառային բաժինները։ Նորն այստեղ այն է, որ յուրաքանչյուր հրահանգիչ սպասարկելով ավելի փոքրաթիվ կազմակերպությունների, հնարավորություն է ունենում հաճախակի լինել տեղերում և իմանալ իրերի իսկական վիճակը, զբաղվել ո՛չ միայն պարտիական աշխատանքի մեկ բնագավառով, այլ ամբողջ պարտիական-կազմակերպական աշխատանքով։ Դա բարձրացնում է հրահանգչի պատասխանատվությունը իր սպասարկած պարտկազմակերպությունների գործունեության համար։ Այսպես, նախքան վերակառուցումը Ստալինյան շրջանում հրահանգիչը սպասարկում էր ոչ պակաս 40 կազմակերպության, իսկ այժմ սպասարկում է 14—15 կազմակերպության։ Այժմ այդ ձևով են աշխատում պարտիայի բոլոր շրջկոմները։

Աշխատանքի նոր պայմաններում բարձրացվում է շրջկոմների և նրանց քարտուղարների պատասխանատվությունը. նրանք պարտավոր են լավ հրահանգավորել հրահանգիչներին, ղեկավարել, ուղղություն տալ նրանց ամենօրյա գործունեությանը, բարձրացնել նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Պահանջվում է, որ քաղկոմը և շրջկոմները լուրջ ուշադրություն դարձնեն հրահանգիչների ընտրությանը, որպես հրահանգիչներ առաջ քաշեն փորձ ունեցող, իր գործը սիրող եռանդուն աշխատողների։

Լուրջ թերություններ կան պարտիայի շրջկոմների աշխատանքում։ Ամենագլխավոր թերությունը սկզբնական պարտիական կազմակերպություններին



ցույց տրվող անբավարար ղեկավարությունն է։ Շրջկոմները, ինչպես հարկն է, մոտ չեն կանգնած նրանց, չգիտեն գործերի իսկական վիճակն ամեն մի առանձին վերցրած կազմակերպությունում։ Պետք է ըստ ամենայնի բարձրացնենք սկզբնական պարտկազմակերպությունների մարտունակությունը. հարկավոր է իմանալ, որ այժմ դրանից է հիմնականում կախված մեր առջև դրված խնդիրների հաջող լուծումը։ Մինչդեռ մի շարք պարտիական կազմակերպություններ չեն գտնվում իրենց կոչման բարձրության վրա, չեն քննարկում և լուծում օրվա հուզող, հրատապ հարցերը։

Թույլ է տրվում ներպարտիական դեմոկրատիայի և կոլեկտիվ ղեկավարման սկզբունքի խախտում։ Միանգամայն աննորմալ է, երբ 26 կոմիսարների անվան պարտշրջկոմը 1957 թվականի ընթացքում պլենումներում քննարկել է ընդամենը երկու հարց։

Այսուհետև ևս պետք է անշեղորեն կենսագործենք կոլեկտիվ ղեկավարության լենինյան սկզբունքը։ Պաշտպանելով պարտիական ղեկավարության կոլեգիալության սկզբունքը, Լենինը միաժամանակ հանդես էր գալիս ղեկավար աշխատողների դերի նսեմացման դեմ։

Հարցերի կոլեկտիվ քննարկումն ու որոշումը չեն բացասում, այլ ենթադրում են անձնական պատասխանատվություն։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ «Պետք է... դեմոկրատիզմը միացնել երկաթե կարգապահության հետ... անառարկելի ենթարկման հետ մի անձի, սովետական ղեկավարի կամքին՝ աշխատանքի ժամանակ»։

Կան աշխատողներ, որոնք անպատասխանատու վերաբերմունք են դրսևորում պարտիական և սովետական օրգանների որոշումների կատարման ուղղությամբ։ Ոչ ամենուրեք է կարգապահությունը գտնվում իր բարձրության վրա։ Միայն դրանով կարելի է բացատրել քաղաքի ձեռնարկությունների մի մասի կողմից պետական պլանների թերակատարումը, ասորտիմենտի և նոմենկլատուրայի կոպիտ խախտումը, կոոպերացված մատակարարման ձախողումը։

Կազմակերպական աշխատանքի մակարդակը, ինչպես նշում է ՍՄԿՊ XX համագումարը, վճռականորեն կախված է կատարման ստուգման, կադրերի ընտրության ու դաստիարակության, տնտեսական ու կուլտուրական շինարարության տարբեր բնագավառներում կոմունիստների տեղաբաշխման գործի դրվածքից։ Սխալ կլիներ չտեսնել կադրերի հետ կատարվող աշխատանքի բացերը։ Մեծ թերություն է այն, որ համարձակորեն ղեկավար պոստերում առաջ չեն քաշվում երիտասարդ, ընդունակ աշխատողներ։ Քաղկոմը, շրջկոմները հաշտվում են այն բանի հետ, որ քաղկոմի և շրջկոմների առանձին աշխատողներ 9—10 տարի շարունակ նստած են նույն տեղում՝ հրահանգչի, բաժնի վարիչի պաշտոնում։ Չէ՞ որ այդպիսի դեպքում աշխատողը, որքան էլ նա եռանդուն և գործին նվիրված լինի, կորցնում է ճաշակը պարտիական աշխատանքի նկատմամբ, հանդես չի բերում նախաձեռնություն, չի դրսևորում նորի զգացումը։ Կանանց ղեկավար պոստերի առաջքաշման գործում նույնպես երկչոտություն կա։ Քիչ կանայք կան պարտիական կազմակերպությունների բյուրոների և քարտուղարների կազմում, քաղաքային ու շրջանային Սովետների ղեկավարների մեջ։ Զափազանց ցածր է կանանց տոկոսը պարտիայի շարքերում նոր ընդունվածների մեջ։ Այդ խոշոր բացը պետք է վերացնել։

Պարտիայի քաղկոմը, շրջկոմները որոշ չափով ուժեղացրել են ուշադրու-

digitised by A.R.A.R.@

թյունը պարտիայի աճը կարգավորելու նկատառումով։ 1956—1957 թթ. պարտիայի մեջ ընդունվածների 46 տոկոսը բանվորներ են։ Պետք է նշել, սակայն, որ մի շարք պարտկազմակերպություններում անբավարար ուշադրություն է դարձվում պարտիայի մեջ բանվորների ընդունելության գործին։ Ավտոդողերի գործարանը մեկ տարվա ընթացքում պարտիայի անդամության թեկնածու է ընդունել միայն մեկ բանվորի։ Հարկավոր է մտածել այդ մասին։ Պետք է նաև իմանալ, որ գլխավորը պարտիայի շարքերի ո՛չ թե քանակական, այլ որակական աճն է։

Տնտեսական խնդիրները հաջողությամբ լուծելու համար շատ կարևոր նշանակություն ունի կոմունիստների ճիշտ տեղաբաշխումը, նրանց ավանգարդային դերի ապահովումը արտադրության մեջ։ Նորմալ չէ, երբ մի շարք ձեռնարկությունների կոմունիստների մեծ մասը աշխատում է արտադրության ոչ վճռական տեղամասերում. օրինակ՝ Հայէլեկտրագործարանի ավելի քան 440 կոմունիստներից գեներատորների և տրանսֆորմատորների ցեխերում անմիջապես աշխատում են ընդամենը 30 կոմունիստ։

Պետական և տնտեսական շինարարության, աշխատավորների նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման գործում կոչված են մեծ դեր խաղալու արհմիութենական կազմակերպությունները։ Պետք է նշել, որ արհմիությունների աշխատանքի մակարդակը բացահայտորեն ետ է մնում այն խնդիրներից, որը առաջադրում է պարտիան։ Այդ բանի համար առաջին հերթին մեղավոր են մեր պարտիական կազմակերպությունները։ Պետք է ընդունել, որ քաղկոմը և շրջկոմները լավ չեն զբաղվում արհմիութենական կազմակերպությունների հարցով։

Անշեղորեն կենսագործելով ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները, պետք է հասնել արհմիութենական աշխատանքների հետագա բարելավմանը, պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության գործում նրանց դերի բարձրացմանը։

Մեր կյանքում կարևոր դեր է խաղում լենինյան կոմերիտմիությունը։ Քաղաքի կոմերիտական կազմակերպությունը, որն իր մեջ ընդգրկում է 50 հազար պատանի ու աղջիկ, ակտիվորեն մասնակցում է տնտեսական և կուլտուրական շինարարությանը, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ դաստիարակչական լայն աշխատանք է կատարում երիտասարդության շրջանում։ Առանձնապես խրախուսելի է քաղաքի կոմերիտականների և երիտասարդության աշխատանքը խամ ու խոպան հողերի շրջաններում։ Բայց կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում շատ թերություններ կան. կոմերիտականների մի մասը արտադրության մեջ լավ չի դրսևորում իրեն. ցածր է կարգապահությունը մի շարք կոմերիտական կազմակերպություններում։ Կոմերիտմիության քաղկոմում, շրջկոմներում երբեմն կենդանի կազմակերպչական աշխատանքը փոխարինվում է պարադայնությամբ և աղմկարարությամբ։

Անհրաժեշտ է ամենուրեք ապահովել պարտիական ղեկավարությունը կոմերիտմիության նկատմամբ, հասնել կոմերիտական աշխատանքի բարելավմանը։

Երևանի պարտիական կազմակերպությունները, կենսագործելով ՍՄԿՊ Կենտկոմի ձեռնարկած միջոցները, նկատելի աշխատանք են կատարել աշխատավորների մարքսիստական-լենինյան դաստիարակությունը, իդեոլոգիական



աշխատանքը բարելավելու համար։ Բարձրացել է կոմունիստների և անպարտիականների հետաքրքրությունը դեպի մարքսիստական-լենինյան տեսության ուսումնասիրությունը, այն ավելի սերտորեն է կապվում տնտեսական ու կուլտուրական շինարարության գործնական խնդիրների հետ։ Ներկայումս ավելի քան 20.000 կոմունիստներ Երևանում պարտիական լուսավորության ցանցի տարբեր օղակներում ուսումնասիրում են մարքսիզմ-լենինիզմը։

Առանց թուլացնելու ուշադրությունը տնտեսական գիտելիքների պրոպագանդման նկատմամբ, պարտիայի քաղկոմը, շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները պարտավոր են մեծ ուշադրություն նվիրել մարքսիստական աշխարհայացքի, գաղափարախոսության հարցերին։ Դրա համար անհրաժեշտ է ընդլայնել ՍՄԿՊ պատմությունը, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը, քաղաքատնտեսության հիմունքները, մարքս-լենինյան տեսության և միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման պրակտիկայի պրոբլեմներն ուսումնասիրող խմբակների և սեմինարների ցանցը։ Պետք է կոմունիստներին օգնել տեսությունը կապելու կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ, ռևիզիոնիզմի և դոգմատիզմի դեմ մղվող պայքարի հետ։

Քաղաքի պարտիական կազմակերպությունների պարտքն է՝ արմատապես բարելավել պարտիական պրոպագանդայի գործը, այն դարձնել է՛լ ավելի գործուն, է՛լ ավելի նպատակասլաց, մարտական, այդ աշխատանքը ի սպաս դնել կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների կենսագործմանը։

Լուրջ նշանակություն ունի աշխատավորների շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը։ Մենք ապրում ենք այնպիսի ժամանակներում, երբ մեր մարդկանց քաղաքական և աշխատանքային ակտիվությունը արագորեն աճում է. հարկավոր է, ուրեմն, որ մասսայական-քաղաքական աշխատանքը լինի ավելի նպատակասլաց, օպերատիվ, կենդանի և տա իր գործնական արդյունքը։ Դժբախտաբար մեզ մոտ մասսայական-քաղաքական աշխատանքը կտրված է տնտեսական խնդիրներից, տվյալ կոլեկտիվի առջև դրված հարցերի լուծումից։ Պետք է հաղթահարել բնակչության հետ կատարվող աշխատանքում եղած շաբլոնը, որը անհետաքրքիր է դարձնում ագիտացիան։ Բնակչության մեջ տարվող աշխատանքում պետք է լայնորեն ներգրավել պարտիական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողներին։

Երկրում սկսվել և ծավալվում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստությունը, որը քաղաքական մեծ նշանակություն ունեցող կամպանիա է։ Ընտրությունների նախապատրաստությունը պետք է նպաստի բնակչության մեջ կատարվող քաղաքական-մասսայական դաստիարակչական աշխատանքի ուժեղացմանը։ Պետք է օգտագործել անցած ընտրությունների ընթացքում կատարված աշխատանքի հարուստ փորձը. մամուլը, ռադիոն լայնորեն ի սպաս դնել այդ նպատակին։ Քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հիմքում պետք է դնել սովետական հայրենասիրության, ժողովուրդների բարեկամության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների պրոպագանդան։

Իդեոլոգիական աշխատանքի շատ կարևոր բնագավառ է մեր արվեստը և գրականությունը։ Անժխտելի են այն հաջողությունները, որ վերջին տարիների ընթացքում ձեռք են բերված այդ բնագավառում, բարձրացել է արվեստով զբաղվող մեր ինտելիգենցիայի ստեղծագործական ակտիվությունը։ Սովետա-

digitised by A.R.A.R.@

*հայ գրականության և արվեստի աշխատողները ստեղծել են մի շարք արժեքավոր երկեր ու գործեր, որոնց նշանակությունը մեծ է մեր աշխատավորության դաստիարակության գործում։*

*Արվեստի և գրականության բնագավառում քիչ չեն նաև թերությունները։ Որոշ գրողներ լավ չեն խմանում մեր իրական կյանքը և դա բացասաբար է ազդում նրանց ստեղծագործությունների վրա։ Առանձին ընկերների մոտ նկատվում են մեր անցյալի կուլտուրայի ժառանգության իդեալականացման և ոչ ճիշտ մեկնաբանման երևույթներ։*

*Սովետական արվեստի և գրականության հետագա զարգացման համար մեծ նշանակություն ունեցավ ընկ. Խրուշչովի «Ժողովրդի կյանքի հետ գրականության և արվեստի սերտ կապի համար» հոդվածը, որտեղ նշված են սովետական արվեստի և գրականության ակտուալ խնդիրները մեր կյանքի և պայքարի այս պատմական ժամանակաշրջանում։*

*Երևանի գրողները, արվեստագետները ջերմորեն ընդունեցին ընկ. Խրուշչովի հոդվածը։ Կասկած չկա, որ Երևանի գրողներն ու արվեստագետները, ղեկավարվելով Կոմունիստական պարտիայի իմաստուն ցուցումներով, կստեղծեն լիարյուն, արժեքավոր, ճշմարտացի երկեր՝ արժանի մեր ապրած պատմական դարաշրջանին։*

*Վաղվա օրվա նկատմամբ վառ հավատով լցված սովետական ժողովուրդը թևակոխեց նոր՝ 1958 թվականը։ Սովետական երկիրը ներկայումս գտնվում է իր պատմական զարգացման նոր էտապում, երբ բուռն թափով ստեղծվում են կոմունիզմի բարձր աստիճանի նյութա-տեխնիկական նախադրյալները։ Մեծ են մեր նվաճումները, բայց մենք իրավունք չունենք տուրք տալու ինքնահանգըստացմանը, դա խորթ է մեզ։*

*Հունվարի 25-ին հրավիրվում է Հայաստանի Կոմունիստական պարտիայի XIX համագումարը։ Դա խոշոր իրադարձություն է ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների կյանքում։ Երևանի պարտիական կազմակերպությունները Հայաստանի բոլշևիկների հերթական համագումարին են գնում է՛լ ավելի միասնական, է՛լ ավելի սերտորեն համախմբված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի, Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի շուրջը։*

*Մենք պետք է անենք մեզանից կախված ամեն բան նոր, ավելի մեծ հաջողությունների հասնելու համար։ Մեր ձեռնարկություններում նոր ուժով պետք է ծավալել սոցիալիստական մրցությունը, մեր պարտիական կազմակերպությունները պետք է հաջողությամբ գլխավորեն և առաջ մղեն աշխատավորների ստեղծագործական եռանդն ու խանդավառությունը տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում նոր հաջողությունների հասնելու, պարտիայի XX համագումարի պատմական որոշումները հաջողությամբ կենսագործելու համար։*

---

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻՑ ՍՈՑԻԱԼԻԶՄԻՆ ԱՆՑՆԵԼՈՒ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

***Լ. ՍԱՐԴԱՐՅԱՆ***

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մինչև հիմքերը ցնցեց հին աշխարհը, սկիզբ դրեց կապիտալիզմի խորտակման ու սոցիալիզմի հաղթանակի դարաշրջանին, ամբողջ աշխարհի աշխատավորներին ցույց տալով նրանց լուսավոր ապագան։*

*Սկսվեց իր մասշտաբներով չտեսնված, մարդկության ճակատագրի համար վճռական նշանակություն ունեցող գոտեմարտը երկու սիստեմների՝ սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև։ Այդ ժամանակվանից անցել է ընդամենը 40 տարի, սակայն դա էլ բավական է, որպեսզի պարզ դառնար, որ այդ գոտեմարտում հաղթանակել է և ողջ աշխարհում կհաղթանակի Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ուղին, քանի որ այդ ուղիով են ընթանում սոցիալիզմի դրոշի տակ վճռականորեն համախմբվող բոլոր ժողովուրդները։*

*Այժմ սոցիալիզմին անցնելու հարցը գործնականորեն կանգնած է բազմաթիվ կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի առջև։ Դա իր արտահայտությունն է գտնում կոմունիստական և բանվորական պարտիաների ծրագրերում։ Ինքնին հասկանալի է, որ հսկայական նշանակություն է ստանում գիտական կոմունիզմի կարևորագույն հարցերից մեկը՝ տարբեր երկրներում սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրինաչափությունների և կոնկրետ առանձնահատկությունների հարցը։*

*Այս հարցը խորապես արծարծվեց և իր լուծումն ստացավ ՍՄԿՊ XX համագումարում և սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների Մոսկվայի խորհրդակցության Դեկլարացիայում։*

*Ժամանակակից իրադրության մեջ ճիշտ կողմնորոշվելու և այս կամ այն երկրում ռևոլյուցիոն շարժման գնահատականի հարցում չսխալվելու համար պետք է ղեկավարվել մարքսիզմ-լենինիզմի կողմից հիմնավորված սոցիալիզմի անցման ընդհանուր օրինաչափություններով, որոնք գործնականում ապացուցվել են ՍՍՌՄ կուտակած 40-ամյա փորձով և այժմ ապացուցվում են Եվրոպայի և Ասիայի ժողովրդական դեմոկրատիայի երկրների փորձով։ Այդ ընդհանուր օրինաչափությունների անտեսումը կամ աղավաղումն անպայման հանգեցնում է մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից նահանջին, ի վերջո ռևիզիոնիզմին ու օպորտունիզմին։*

*Այդպիսի վտանգավոր տենդենց է նկատվում այն մարդկանց հայտարարություններում, որոնք բացարձականացնում են ժողովրդական դեմոկրատիայի երկրների սոցիալիստական զարգացման որոշ առանձնահատկությունները և դրանք հակադրում սոցիալիզմի կառուցման ընդհանուր օրինաչափություն-*

digitised by A.R.A.R.@

ներին, նրա մայր ուղիներին։ Հակալենինյան այդ տենդենցն իր արտահայտությունը գտավ, այսպես կոչված, «ազգային կոմունիզմի» թեորիայի մեջ։ Թե ում է օգտակար նման թեորիան, այդ մասին պարզ խոսում են ՆԱՏՕ-ի ներկայացուցիչների հայտարարությունները «ազգային կոմունիզմի» գաղափարախոսությունն ամեն կերպ պրոպագանդելու և տարածելու մասին, որը հնարավորություն կտա մեկը մյուսի հետևից «ազատագրել» ժողովրդական դեմոկրատիայի երկրները։

«Ինտերնացիոնալ կոմունիզմի» գաղափարախոսության դեմ մղվող պայքարի մասնագետ Դալլեսը անմիջապես հանդես եկավ ի պաշտպանություն «ազգային կոմունիզմի» թեորիայի, հայտարարելով, որ այդ թեորիան «մեծ հեռանկարներ» է բացում, իհարկե, ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանների համար։

Կասկած չի կարող լինել, որ բուրժուական իդեոլոգիայի հորինած այդ թեորիան ամբողջովին ուղղված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների դեմ։ Դա բուրժուական նացիոնալիզմի նուրբ տեսակն է, որն ուղղվում է ժողովրդական դեմոկրատիայի երկրների, սոցիալիզմի լագերի դեմ և հանդիսանում է իմպերիալիստական «բաժանիր որ տիրես» քաղաքականության նոր վերահրատարակությունը։ Թե ինչի կարող է հասցնել այդ «թեորիան», պարզ կերպով ցույց տվին 1956 թվականին հոկտեմբերյան իրադարձությունները Հունգարիայում, որտեղ Նագ-Լաշոնցիի կոնտրռևոլյուցիոն խումբը ակտիվորեն պրոպագանդում էր «ազգային կոմունիզմի» գաղափարը, դեմ էր դուրս գալիս պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, նպատակ ունենալով դուրս գալ սոցիալիզմի լագերից և երկրում վերականգնել բուրժուական-խորտիստական կարգերը։

«Ազգային կոմունիզմի» հիմքում ընկած է սոցիալիզմի անցման ընդհանուր օրինաչափությունների բացասումը։ Կոմունիստական և բանվորական պարտիաները վճռական պայքար սկսեցին ռևիզիոնիստական այդ գաղափարախոսության դեմ։ Պատասխանելով այդ կարգի ռեակցիոն հայացքներին, Չեխոսլովակիայի ռեսպուբլիկայի հանգուցյալ պրեզիդենտ Ա. Զապոտոցկին սովետա-չեխոսլովակյան բանակցությունների ժամանակ հայտարարեց. «Արևմուտքում վերջերս սկսել են խոսել այն մասին, որ կապիտալիստական կառավարությունների համար մեր կոմունիզմը ընդունելի կլիներ, եթե նա լիներ այլ, ասենք ազգային, կամ լիբերալ, կարճ ասած, եթե նա այնքան էլ կոմունիստական չլիներ։ Ես կցանկանայի այդ մարդկանց հասցեին ասել հետևյալը — իզուր եք գլուխներդ ջարդում, իզուր եք ժամանակ կորցնում»։

Ռեալ իրականության և նրա բազմազան ձևերի ճանաչումը պահանջում է, դոգմատիզմի և աղանդավորության մեջ չընկնելու համար հաշվի առնել հասարակական-տնտեսական զարգացման ո՛չ միայն ընդհանուր օրինաչափությունները, այլև նրա արտահայտման կոնկրետ առանձնահատկությունները, սոցիալիզմի անցման տարբեր ձևերի հարցը ամեն մի երկրի տնտեսական, քաղաքական, պատմական և այլ առանձնահատկություններին համապատասխան։ Տարբեր երկրների սոցիալիզմի անցման սպեցիֆիկայի մոռացումը նահանջ է լենինիզմի դիրքերից։ Վ. Ի. Լենինը բազմիցս նախազգուշացրել է, որ անհրաժեշտ է կոմունիզմի սկզբունքների ճիշտ կիրառում՝ տվյալ ազգի, տվյալ ազգային պետության սպեցիֆիկային համապատասխան։ Նա դեռ 1919 թվականին գրել է. «Բոլորովին անկասկած է, որ մեր ռուսական տակտիկայի մերկ



ընդօրինակումը բոլոր մանրամասնություններով հունգարական ռևոլյուցիայի յուրահատուկ պայմաններում սխալ կլիներ։ Ես պետք է նախազգուշացնեմ այս սխալից» (Վ Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 270)։

Սոցիալիզմի կառուցման փորձը ինչպես ՍՍՌՄ-ում, այնպես էլ մյուս երկրներում պետք է կիրառել ստեղծագործաբար, ամեն մի երկրի սոցիալ-պատմական, ազգային առանձնահատկությունների ու տրադիցիաների հաշվառումով։ Այն դեպքում, երբ լուրջ ուշադրություն չի դարձվում ընդհանուրի և առանձնահատուկի դիալեկտիկական ճիշտ զուգակցմանը սոցիալիզմի կառուցման ասպարեզում, ստեղծվում են ավելորդ դժվարություններ (օրինակ՝ Հունգարիայում), որն անմիջապես, հասկանալի պատճառներով, օգտագործում է իմպերիալիզմը։

Համաշխարհային պատմական իրադրության մեջ վերջին տասնամյակում տեղի են ունեցել արմատական փոփոխություններ, որոնք պահանջում են նոր ձևով դնել մի շարք կոնկրետ հարցեր սոցիալիզմի անցման կապակցությամբ։ Սոցիալիզմը արդեն դուրս է եկել մի երկրի շրջանակներից և վերածվել համաշխարհային սիստեմի։

1917 թվականին հիմնված մեր միակ սոցիալիստական ռեսպուբլիկան գրավում էր աշխարհի տերիտորիայի 15,9 տոկոսը, այժմ սոցիալիստական լագերը գրավում է մեր երկրագնդի 26,6 տոկոսը։ Եթե Ռուսաստանի բնակչությունը 1917 թվականին կազմում էր աշխարհի բնակչության 7,4 տոկոսը, ապա սոցիալիզմի լագերի բնակչությունը այժմ կազմում է 36 տոկոս։ Սոցիալիստական լագերի աճի ու հզորացման հետ միասին շարունակվում է կապիտալիզմի սիստեմի խորացող ճգնաժամը։ Մեր աչքերի առաջ վերջնականապես քայքայվում է իմպերիալիզմի գաղութային սիստեմը։ Հասկանալի է, որ այս բոլորը միաժամանակ դասակարգային լուրջ տեղաշարժեր է առաջացնում բուրժուական հասարակության ընդերքում, ժողովրդական մասսաների պայքարն ավելի ու ավելի թեքվում է դեպի ձախ, ամրապնդվում է միջազգային կոմունիստական ու բանվորական շարժումը։ Լենինիզմի ոգով դաստիարակված կոմունիստական ու բանվորական պարտիաները հենվելով գիտական կոմունիզմի սկզբունքների վրա, այժմ իրականացնում են իմաստուն և ճկուն քաղաքականություն՝ սոցիալիզմի անցման ճանապարհին։

Պատմական փորձը լրիվ ապացուցում է սոցիալիզմի ընդհանուր օրինաչափությունների կիրառման անհրաժեշտությունը աշխարհի բոլոր երկրներում։ Միաժամանակ հարցի սպառիչ և ճիշտ լուծումը պահանջում է ասել, որ մարքսիստական-լենինյան ուսմունքը զարգանում է առանձին երկրների՝ սոցիալիզմի կառուցման ասպարեզում կուտակած փորձի ընդհանրացման միջոցով։ Մարքսիզմ-լենինիզմը ընդհանրացնում և ուսումնասիրում է այդ փորձի և՛ բովանդակությունը, և՛ ձևերը, ընդ որում եթե սոցիալիզմի բովանդակությունը բոլոր երկրներում նույնն է, ապա նրա անցման և կառուցման ձևերը կարող են լինել խիստ բազմազան։ Այս մոմենտը Կ. Մարքսը նշել է դեռ XIX դարի 70-ական թվականներին։ 1872 թվականին հանդես գալով Ամստերդամի բանվորների միտինգում, Մարքսն ասել է. «Մենք երբեք չենք պնդել թե բանվոր դասակարգը ամենուրեք հաղթանակի է հասնելու նույն միջոցներով։ Մենք գիտենք, որ պետք է հաշվի նստենք առանձին երկրների, հիմնարկների բարքերի ու տրադիցիաների հետ և մենք չենք ժխտում, որ կան այնպիսի երկրներ, ինչպես ԱՄՆ-ը, Անգլիան և եթե ես ավելի լավ իմանայի ձեր երկիրը, գուցե

digitised by A.R.A.R.@

ավելացնեի նաև Հոլանդիան, որտեղ բանվորներն իրենց նպատակին կարող են հասնել խաղաղ միջոցներով» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. XIII, ч. II, стр. 669)։

Սոցիալիզմը ինտերնացիոնալ երևույթ է։ Բայց կան և կարող են լինել սոցիալիզմի անցման ազգային առանձնահատկություններ, ձևեր և ուղիներ։ Սակայն այդ առանձնահատկությունները չեն կարող խախտել հիմնական էությունը, սոցիալիզմի անցման օբյեկտիվ, ընդհանուր օրինաչափությունները։

««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» աշխատությունում Վ. Ի. Լենինը կոմունիստական ու բանվորական պարտիաներին սովորեցնում է ղեկավարվել կոմունիզմի ընդհանուր սկզբունքներով, ընդ որում պահանջում է այդ սկզբունքների այնպիսի կիրառում, «որը մասնավորություններում ճիշտ ձևափոխեր այդ սկզբունքները, դրանք ճիշտ հարմարեցներ, կիրառեր ազգային ու ազգային-պետական տարբերությունների նկատմամբ» (Երկեր, հ. 31, էջ 98)։ Բազմիցս ընդգծելով հասարակության սոցիալիստական վերափոխման ինտերնացիոնալ բնույթը, Վ. Ի. Լենինը գրում էր. «Եվրոպան դեպի ռևոլյուցիա է գնում ոչ այնպես, ինչպես մենք եկանք, բայց Եվրոպան ըստ էության կատարում է նույնը» (Երկեր, հ. 30, էջ 540)։ Նա նշում էր, որ ռուսական ռևոլյուցիայի մի քանի հիմնական գծերը ունեն միջազգային նշանակություն, որ միջազգային մասշտաբով պատմական անխուսափելիություն է ներկայացնում այդ գծերի կրկնելը։

Սոցիալիզմը ՍՍՌՄ-ում հաղթանակեց նոր հասարակարգի անցման ընդհանուր օրինաչափությունների բազայի հիման վրա։ Այդ պատճառով էլ լենինիզմի կողմից ընդհանրացված Հոկտեմբերյան ռևոլյուցիայի և սովետական շինարարության փորձը անփոխարինելի ուղեցույց է սոցիալիզմի հունով ընթացող բոլոր ժողովուրդների համար։ Սոցիալիզմի կառուցման սովետական փորձի արհամարհումը, կամ աղավաղումը օբյեկտիվորեն, անկախ առանձին քաղաքական գործիչների ցանկություններից, հանգեցնում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների խախտման։ ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների կուտակած փորձն իր էական գծերով մարմնացնում է սոցիալիզմի հաղթանակի ընդհանուր օրինաչափությունները։

Որոնք են սոցիալիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունները։ Ինչպես ասված է կոմունիստական և բանվորական պարտիաների Մոսկվայի խորհրդակցության Դեկլարացիայում, այդպիսի ընդհանուր օրինաչափություններ են այս կամ այն ձևով պրոլետարական ռևոլյուցիայի իրականացման և այս կամ այն ձևով պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման գործում աշխատավոր զանգվածների ղեկավարումը բանվոր դասակարգի կողմից, որի կորիզը մարքս-լենինյան պարտիան է. բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության հիմնական զանգվածի և աշխատավորության մյուս խավերի հետ. արտադրության հիմնական միջոցների նկատմամբ կապիտալիստական սեփականության վերացումը և հանրային սեփականության հաստատումը. գյուղատնտեսության աստիճանական սոցիալիստական վերափոխումը. ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացումը, որն ուղղված է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման, աշխատավորների կենսամակարդակի բարձրացման նպատակին. գաղափարախոսության ու կուլտուրայի ասպարեզում սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացումը և բանվոր դասակարգին, աշխատավոր ժողովրդին, սոցիալիզմի գործին նվիրված սավար ինտելիգենցիայի ստեղծու-



մը. ազգային ճնշման վերացումը և ժողովուրդների միջև իրավահավասարության ու եղբայրական բարեկամության հաստատումը. արտաքին ու ներքին թշնամիների ոտնձգություններից սոցիալիզմի նվաճումների պաշտպանությունը. մյուս երկրների բանվոր դասակարգի համերաշխությունը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը։

Վ. Ի. Լենինը նշում էր, որ «Կապիտալիզմից կոմունիզմին անցնելը, իհարկե, չի կարող չբերել քաղաքական ձևերի ահագին առատություն և բազմազանություն, բայց դրանց բոլորի էությունն անխուսափելիորեն մեկ է լինելու՝ պրոլետարիատի դիկտատուրան» (Երկեր, հ. 25, էջ 533)։

Ղեկավարվելով մեծ Լենինի ուսմունքով, ՍՄԿՊ XX համագումարն իր որոշումների մեջ ընդգծեց, որ տիրապետող դասակարգերը կամավոր կերպով չեն զիջում իշխանությունը, որ անխուսափելի է դասակարգային պայքար ավելի կամ պակաս սրությամբ։ Պարտիայի XX համագումարին տրված ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշվում է. «Սոցիալիզմին անցնելու բոլոր ձևերի դեպքում անհրաժեշտ և վճռական պայմանը բանվոր դասակարգի քաղաքական ղեկավարությունն է՝ նրա առաջավոր մասի գլխավորությամբ։ Առանց դրա անհնար է անցումը սոցիալիզմին»։

Այսպիսին է սոցիալիզմի անցման ընդհանուր քաղաքական օրինաչափությունը։ Այդ պատճառով էլ առանց բանվոր դասակարգի պետական ղեկավարության սոցիալիզմ կառուցել անհնարին է։ Նոր, սոցիալիստական հասարակարգի տնտեսական հիմքի կառուցման համար անհրաժեշտ է կապիտալիստական արտադրական հարաբերությունները փոխարինել սոցիալիստական արտադրական հարաբերություններով։ Բուրժուական մի շարք երկրների աջ սոցիալիստական պարտիաները բազմիցս լինելով իշխանության գլուխ, նոր կարգի տնտեսական հիմք չստեղծեցին և չէին կարող ստեղծել, որովհետև նրանք նպատակ չունեն մասնավոր սեփականությունը փոխարինել հասարակական սեփականությամբ։ Անգլիական լեյբորիստների կիրառած երկաթի, քարածխի, պողպատի արդյունաբերության, կամ ֆրանսիական սոցիալիստների կիրառած էլեկտրաէներգիայի արդյունաբերության ազգայնացումը չէր կարող տնտեսական հիմք ստեղծել սոցիալիզմի համար, որովհետև նշված միջոցառումները իրականացվեցին բուրժուական հասարակության շրջանակներում, խոշոր մոնոպոլիաների պահպանման պայմաններում և կրում էին պետական կապիտալիզմի բնույթ։

Սակայն պետական կապիտալիզմի ուղղությամբ արվող այդ քայլերը օբյեկտիվորեն նախադրյալներ են ստեղծում սոցիալիզմի համար և այդ պատճառով էլ կոմունիստական պարտիաները պաշտպանում են նման միջոցառումները։

Սակայն կապիտալիստական արտադրաեղանակի հակասությունները կարող է լուծել միայն պրոլետարական ռևոլյուցիան, այդ կարող է անել ամենից հետևողական դասակարգը՝ բանվոր դասակարգը, որը մասնավոր կապիտալիստական սեփականությունը վերածում է սոցիալիստական, հասարակական սեփականության։

Վ. Ի. Լենինը ընդհանրացնելով Հոկտեմբերյան ռևոլյուցիայի փորձը, կոչ էր անում ուսումնասիրել ո՛չ միայն նրա միջազգային նշանակություն ունեցող գծերը, այլ նաև ռուսական ռևոլյուցիայի առանձնահատուկ պայմանները, նրա զարգացման հատուկ ուղին։ Լենինը Սովետներն անվանում էր պրոլետարա-



digitised by A.R.A.R.@

կան դիկտատուրայի ռուսական ձև, կամ նույն տեղում նշում էր որպես պրոլետարական դիկտատուրայի ազգային ձև (Երկեր, հ. 28, էջ 323—324)։

Լենինիզմը գտնում է, որ սոցիալիզմի անցման այս կամ այն առանձնահատկությունները, այս կամ այն ձևերը պարտադիր չեն բոլոր երկրների համար։ ՍՍՌՄ-ում անցման շրջանը ունեցավ հետևյալ հիմնական առանձնահատկությունները.

1) Պրոլետարական դիկտատուրան մեր երկրում ստեղծվեց բռնի, զինված ապստամբության ճանապարհով։

2) Ներքին և արտաքին կոնտրռևոլյուցիայի դաժան պայքարը անխուսափելի դարձրեց քաղաքացիական պատերազմը։

3) Ռուսաստանի կոնկրետ պատմական պայմաններում պրոլետարիատի իշխանության պետական ձև դարձան Սովետները։

4) Կոմունիստական պարտիան պրոլետարական դիկտատուրայի սիստեմում չկիսեց իշխանությունը այլ պարտիաների հետ։

5) Քաղաքի և գյուղի բուրժուազիան տնտեսական էքսպրոպրիացիայի ենթարկվեց խիստ մեթոդներով։

6) Քանի որ սոցիալիզմը հաղթանակել էր միայն մի երկրում և կապիտալիստական աշխարհը խիստ սպառնում էր նրան, ՍՍՌՄ-ը հարկադրված էր արագ թափով իրականացնել ինդուստրացումն ու կոլեկտիվացումը, ինչպես նաև պարտադիր կերպով զարգացնել արդյունաբերության բոլոր ճյուղերը և այլն։ Հասկանալի է, որ այս առանձնահատկությունների կրկնումը պարտադիր չէ բոլոր երկրների համար, որովհետև այժմ բացակայում են նրանց ծնող պայմաններից շատերը։ Իսկ ինչո՞վ բացատրել ամեն մի երկրում առաջացող կոնկրետ առանձնահատկությունները։

Մարքսիզմ-լենինիզմը գտնում է (և դա ապացուցվել է համաշխարհային պատմության ամբողջ ընթացքով), որ արտադրական հարաբերությունները արտադրողական ուժերի բնույթին համապատասխանելու ընդհանուր օրենքը չի բացասում հասարակական-տնտեսական ձևերի առաջացման ու զարգացման բազմաձևությունը, իհարկե, նույն բովանդակության առկայությամբ։

Դեռ 1916 թվականին «Մարքսիզմի ծաղրանկարի մասին» նշանավոր հոդվածում քննադատելով Պյատակովի հակամարքսիստական հայացքները, Վ. Ի. Լենինը գրում էր. «Նույնիսկ տրեստները, նույնիսկ բանկերը ժամանակակից իմպերիալիզմի օրով, միատեսակ անխուսափելի լինելով զարգացած կապիտալիզմի ժամանակ, միատեսակ չեն իրենց կոնկրետ ձևով տարբեր երկրներում։ Առավել ևս միատեսակ չեն, չնայած նրանց միասեռությանը հիմնականում, քաղաքական ձևերն առաջավոր իմպերիալիստական երկրներում՝ Ամերիկայում, Անգլիայում, Ֆրանսիայում, Գերմանիայում» (Երկեր, հ. 23, էջ 80—81)։

Հիրավի, կապիտալիստական տարբեր երկրների բուրժուազիան ստեղծել է իր երկրի պայմաններին և, մանավանդ, իր շահերին համապատասխան քաղաքական կարգեր, սկսած պառլամենտական ռեսպուբլիկայից, վերջացրած տոտալիտար ֆաշիստական դիկտատուրայով։ Իհարկե, քաղաքական ձևերի այս տարբերությունը չի շոշափում բովանդակությունը. փաստ է, որ այդ բոլոր երկրներում հաստատված է և տիրապետում է բուրժուազիայի դիկտատուրան։ Դիալեկտիկական անալիզի ենթարկելով այս ամենը, Վ. Ի. Լենինը գրում է, որ «նույնպիսի բազմազանություն երևան կգա և այն ճանապարհին, որով



մարդկությունը կընթանա այժմյան իմպերիալիզմից դեպի վաղվա սոցիալիստական ռևոլյուցիան» (Երկեր, հ. 23, էջ 81)։ Ընդհանրացնելով իր միտքը, Լենինը եզրակացնում է. «Բոլոր ազգերը կգան դեպի սոցիալիզմ՝ դա անխուսափելի է, բայց բոլորը կգան ոչ բոլորովին միատեսակ, յուրաքանչյուրը յուրահատկություն կմտցնի դեմոկրատիայի այս կամ այն ձևի մեջ, պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն տարատեսակության մեջ, հասարակական կյանքի զանազան կողմերի սոցիալիստական վերափոխումների այս կամ այն տեմպի մեջ» (նույն տեղում)։

Պատմական փորձը լիովին հաստատեց Վ. Ի. Լենինի կանխատեսությունը։ ՍՄԿՊ XX համագումարն արձանագրեց, որ արդեն այժմ սոցիալիստական հիմունքներով հասարակության վերակառուցման սովետական ձևից բացի գոյություն ունի ժողովրդական դեմոկրատիայի ձևը, ինչպես նաև չի բացառվում նոր ձևերի ստեղծումը սոցիալիզմին անցնող այլ երկրներում։

Տարբեր երկրներում ստեղծված քաղաքական պայմանները, կապված դասակարգերի ու պարտիաների ուժերի փոխհարաբերության հետ, ծնում են սոցիալիստական ռևոլյուցիայի բռնի ու խաղաղ ձևեր, սոցիալիստական դեմոկրատիայի միպարտիական, կամ բազմապարտիական ձևեր, կառավարության միպարտիական, կամ կոալիցիոն կազմ՝ Կոմունիստական պարտիայի պարտադիր ղեկավարման առկայության պայմաններում։

Տարբեր երկրներում ստեղծված տնտեսական պայմանները, կապված արտադրողական ուժերի զարգացման աստիճանի, տնտեսության ստրուկտուրայի, ինչպես նաև բուրժուազիայի տարբեր խավերի՝ դեպի տնտեսական վերափոխումներն ունեցած վերաբերմունքի հետ, հասարակության սոցիալիստական հիմքի կառուցման գործում ծնում են տարբեր մեթոդներ, ուղիներ, տեմպեր։

Այսպիսով, սոցիալիզմի անցման տարբեր ձևերի լենինյան ուսմունքի ամենակարևոր երեք կողմերը հետևյալն են. 1) բանվոր դասակարգի քաղաքական իշխանության անցնելու ուղիները (բռնի, խաղաղ), այլ խոսքով ասած, պրոլետարական ռևոլյուցիայի ձևերի հարցը. 2) պրոլետարիատի դիկտատուրայի տարբեր ձևերը, որոնք արտահայտվում են հասարակության պետական կազմակերպման տարբեր գործելակերպում. 3) տնտեսության սոցիալիստական վերափոխման առանձնահատկությունները, երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոոպերացիայի տարբեր մեթոդներն ու ձևերը, շահագործող դասակարգերի լիկվիդացիայի տարբեր եղանակներն ու մեթոդները։ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը նշել են, որ «Մեռնող իրականության փոխարեն նրա տեղն է գրավում նոր, կենսունակ իրականությունը. խաղաղ ձևով, եթե հինը բավական խելոք է, որպեսզի մեռնի առանց դիմադրության, բռնի՝ եթե նա կդիմադրի այդ անհրաժեշտությանը» (К. Маркс и Ф. Энгельс, Избранные соч., т. II, стр. 342)։

Զարգացնելով այս միտքը՝ Վ. Ի. Լենինը գրել է. «Կան պայմաններ, որոնց ժամանակ բռնությունը և՛ անհրաժեշտ է, և՛ օգտակար, և կան պայմաններ էլ, որոնց ժամանակ բռնությունը ո՛չ մի արդյունք չի կարող տալ» (Երկեր, հ. 29, էջ 51)։

Հայտնի է, որ Ռուսաստանի առանձնահատուկ պայմաններում, 1917 թվականի փետրվարյան ռևոլյուցիայից հետո, Վ. Ի. Լենինը հնարավոր էր համարում սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացումը։ Իհարկե, լե-

digitised by A.R.A.R.@

նինիզմի ըմբռնմամբ ռևոլյուցիայի խաղաղ զարգացումը չի նշանակում, թե բուրժուազիան կամավոր կերպով հրաժարվում է իշխանությունից։ Այդպիսի հրաշքներ չեն լինում։ Դա նշանակում է, որ պրոլետարիատի դասակարգային պայքարը ստեղծում է այնպիսի պայմաններ և դասակարգային ու պարտիական ուժերի փոխհարաբերության այնպիսի իրադրություն, երբ բուրժուազիան ստիպված է իշխանությունը զիջել ժողովրդին՝ առանց զինված դիմադրության, երբ նա ոչ մի հնարավորություն չի ունենում դիմելու քաղաքացիական պատերազմի, կամ զինված ինտերվենցիայի։

Ահա թե ինչու չի կարելի բացարձականացնել սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման հնարավորությունը։ Ընդհակառակն, կոմունիստական պարտիաները պարտավոր են բանվոր դասակարգին մոբիլիզացնել շահագործող դասակարգերի դեմ։ Հայտնի է, որ Հոկտեմբերյան ռևոլյուցիան կատարվեց համարյա անարյուն, հոկտեմբերի 25-ի օրը զոհվել են ընդամենը մի քանի տասնյակ մարդ։ Մեղավորը Ռուսաստանի պրոլետարիատն ու նրա պարտիան չէին, որ սկսվեց քաղաքացիական պատերազմ ու այդքան արյուն թափվեց։ Դրա ամբողջ մեղքը ընկնում է ռուսական և միջազգային բուրժուազիայի վրա։

Պատմական նոր պայմաններում և, մանավանդ, ՍՍՌՄ-ի առկայության պայմաններում, ժողովրդական դեմոկրատիայի համարյա բոլոր երկրներում բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից խաղաղ կերպով անցում կատարեցին դեպի սոցիալիստական ռևոլյուցիան։

«Պարենային հարկի մասին» նշանավոր աշխատությունում քննադատելով Բուխարինի սխալ հայացքները, Վ. Ի. Լենինը գրում էր. «...լիովին թույլատրելի է այն միտքը, թե պետք է լավ վճարել կապիտալիստներին, հատուցել նրանց, եթե... հանգամանքներն այնպես դասավորվեն, որ կապիտալիստներին հարկադրեն խաղաղ կերպով ենթարկվել և կուլտուրականորեն, կազմակերպված ձևով, հատուցման պայմանով անցնել սոցիալիզմին» (Երկեր, հ. 32, էջ 432)։

Առաջին անգամ մեծ մասշտաբներով այդ հնարավորությունն իրականացվեց Չինաստանում։ Հատկանշական է, որ մի չին բուրժուա, հաշվի առնելով չին պրոլետարիատի և ամբողջ ժողովրդի վճռականությունը սոցիալիզմի կառուցման գործում, հայտարարել էր. «Ավելի լավ է նստել սոցիալիզմի ուղիով ընթացող գնացքը, քան ընկնել նրա անիվների տակ»։

1948 թվականի փետրվարյան դավադրությունից հետո չեխոսլովակյան բուրժուազիան համոզվելով իր անզորության մեջ, ստիպված էր հրաժարվել քաղաքացիական պատերազմից։

ՍՄԿՊ XX համագումարը արձանագրեց, որ ներկա պայմաններում մի շարք երկրներում անցումը սոցիալիզմին հնարավոր է իրականացնել պառլամենտի միջոցով։ Ընդ որում այդ անցումը կատարվում է հետևյալ ձևով։ Բանվոր դասակարգը դասակարգային համառ պայքարի ընթացքում, Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ պարտության է մատնում ռեակցիոն, հակաժողովրդական ուժերին, կայուն մեծամասնություն է նվաճում պառլամենտում և բուրժուական դեմոկրատիայի օրգանից այն վերածում է իրոք ժողովրդական կամքի գործիքի։ Սոցիալիզմին անցնելու այս նոր հնարավորությունը պայմանավորված է հետևյալ գործոններով.

1) Սոցիալիզմի համաշխարհային լագերի ստեղծումով, նրա տնտեսական,



քաղաքական, ռազմական հզորությամբ և կապիտալիզմի հետագա թուլացմամբ։

2) Իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումով, որն է՛լ ավելի է մեծացնում դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերը։

3) Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացմամբ։

4) Կոմունիզմի գաղափարների համակումը հարյուր միլիոնավոր մարդկանց, կոմունիստական ու բանվորական պարտիաների քաղաքական ու կազմակերպական աճը, նրանց համառ պայքարը ռեֆորմիզմի, օպորտունիզմի բոլոր արտահայտությունների դեմ։

Բանվորական շարժման պառակտման հաղթահարումը և բանվորական պարտիաների գործողությունների միասնությունն է՛լ ավելի մեծ հնարավորություններ կստեղծեն խաղաղ կերպով սոցիալիզմին անցնելու համար։ Ինչպես II ինտերնացիոնալի օպորտունիստները, այնպես էլ ժամանակակից ռեֆորմիստները, գտնում են, որ կապիտալիզմի պայմաններում արդյունաբերության այս կամ այն ճյուղի զարգացումը և պետական կապիտալիզմի ստեղծումը, կոոպերացիայի, այդ թվում սպառողական միությունների (բանվորների մասնակցությամբ) ստեղծումն ու զարգացումը, տնտեսության որոշ ճյուղերի պլանավորումն ու սոցիալական ապահովագրությունը, աշխատանքի իրավունքի հռչակման հետ միասին արդեն նշանակում է սոցիալիզմ, որն ստեղծվում է մաս-մաս, էվոլյուցիոն եղանակով, չեզոք վերդասակարգային պետության կողմից, որը միջնորդի դեր է կատարում պրոլետարիատի և բուրժուազիայի միջև։ Հասկանալի է, որ սա ռևիզիոնիզմ է, որն ընկ. Տոլյատիի խոսքով ասած, նշանակում է «ենթարկվել կապիտալիզմին և սպասել մինչև այն ինքն իրեն վերածվի սոցիալիզմի»։

Կոմունիստական ու բանվորական պարտիաները քննադատելով ռևիզիոնիզմը, պարզ կերպով հայտարարում են. անցումը սոցիալիզմին, խաղաղ թե բռնի մեթոդներով, ռևոլյուցիոն թռիչք է, որը բանվոր դասակարգից և նրա պարտիայից պահանջում է մեծագույն կազմակերպվածություն, անողոք դասակարգային պայքար բուրժուազիայի դեմ, հարկ եղած դեպքում՝ զինված ապստամբություն։

Պառլամենտական եղանակով սոցիալիզմին անցնելու մասին ՍՄԿՊ XX համագումարի նշած ուղու ճշմարտությունը հաստատվում է Իտալիայում, Ֆրանսիայում, Ինդոնեզիայում և մի շարք այլ երկրներում կոմունիստական պարտիաների նվաճած լուրջ հաջողություններով։

Սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացման տարբեր մեթոդների ու եղանակների շնորհիվ Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ստեղծվեց պրոլետարիատի դիկտատուրայի նոր ձև—ժողովրդական դեմոկրատիայի կարգը, որը սովետական ձևից տարբերվում է հիմնականում նրանով, որ ժողովրդական դեմոկրատիայի դիկտատուրայի սիստեմում գոյություն ունի բազմապարտիականություն և բարենպաստ պայմանների հետևանքով այդ դիկտատուրայի բռնի կողմը ավելի թույլ արտահայտվեց, քան մեր երկրում։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրները սոցիալիստական տնտեսություն են ստեղծում հզոր սոցիալիստական լագերի առկայության պայմաններում։ Նրանք կարիք չունեն նույն տեմպով և մեթոդներով վարել կոլեկտիվացման և ինդուստրացման գործը, կամ մեզ նման զարգացնել էկոնոմիկայի բոլոր ճյուղերը, քանի որ նրանց տնտեսությունը զարգանում է սոցիալիզմի

digitised by A.R.A.R.@

երկրների փոխադարձ օգնության ու համագործակցության պայմաններում։ Այս ընդհանուր առանձնահատկությունների հետ միասին, ժողովրդական դեմոկրատիայի ամեն մի երկիր ունի իր առանձնահատկությունները։ Որպես օրինակ կարելի է վերցնել Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան։ Առաջին կարևոր առանձնահատկությունն այն է, որ Չինաստանում բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի ժամանակ լուծվեց իշխանության հարցը, անցումը սոցիալիզմին կատարվեց ավելի խաղաղ ձևով։

Սակայն մի բան պարզ է, որ պրոլետարիատի դիկտատուրայի սովետական և ժողովրդական դեմոկրատիայի ձևերի տարբերությունները չեն շոշափում հիմնականը, բովանդակությունը, որը սոցիալիզմի բոլոր երկրներում նույնն է՝ պրոլետարիատի դիկտատուրան։

Վերջապես, ժողովրդական դեմոկրատիայի երկրների զարգացման ամենից կարևոր առանձնահատկությունն այն է, որ նրանք սոցիալիզմ են կառուցում, աշխարհում առաջին անգամ սոցիալիզմ կառուցած երկրի՝ հզոր ՍՍՌՄ-ի առկայության պայմաններում։

Առաջին անգամ սոցիալիզմ կառուցած, տնտեսապես ամենից ուժեղ ՍՍՌՄ-ը սոցիալիզմի ուղիով գնացող բոլոր երկրներին ցույց է տալիս վաղվա (իր համար այսօրվա) օրը։ Ով ժխտում է մեր պետության 40-ամյա փորձը, ընդհանուր օրինաչափությունները, նա փաստորեն դեմ է դուրս գալիս պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, տուրք է տալիս «ազգային կոմունիզմի» գաղափարախոսությանը։

ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսական ու քաղաքական հզորության աճը ներկա իրադրության ամենից կարևոր առանձնահատկությունն է, որը մեծ հեռանկարներ է բացում համաշխարհային կոմունիզմի հաղթանակի համար։ Զինված մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքով, կոմունիստական ու բանվորական պարտիաները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը դիմավորեցին կոմունիզմի համար մղվող պայքարում տարած նոր հաջողություններով։

# «ՌԻԺԻ ԴԻՐՔԵՐԻՑ» ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՁԱԽՈՂՈՒՄԸ ԱՆԽՈՒՍԱՓԵԼԻ Է

ԱՐ. ՍԻՄՈՆՅԱՆ

Ատլանտյան բլոկը կամ ՆԱՏՕ-ն, որն ստեղծվել է 1949 թվականի ապրիլի 4-ին Վաշինգտոնում, իր անփառունակ պատմության ընթացքում երբեք այնպիսի անհաջողությունների չի հանդիպել, ինչպես 1957 թվականին։ Հենց սկզբից լինելով Ամերիկայի Միացյալ Նահանգների իմպերիալիստական շրջանների ագրեսիվ քաղաքականության գործիք, ՆԱՏՕ-ն ուղղված է ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ։ Նրա նպատակն է նաև ճնշել գաղութային և կախյալ երկրների ազգային-ազատագրական շարժումները, ճնշել դեմոկրատական ուժերը բուրժուական երկրներում։ Այդ բլոկի ձևավորման, ինչպես նաև հետագա տարիներին նրա ագրեսիվ բնույթի ուժեղացման ասպարեզում խոշոր դեր է խաղացել այն սխալ տեսակետը, որ ԱՄՆ-ը իբր թե իր ռազմական հզորությամբ աշխարհի ամենաուժեղ տերությունն է։ Բուրժուական մամուլը, պրոպագանդան պատեհ և անպատեհ առիթով փառաբանում էին ԱՄՆ-ի ուժը, «ամերիկյան ապրելակերպը», ճգնելով համոզել մարդկանց, որ «կատվից ուժեղ կենդանի չկա», որ եթե ամերիկյան իմպերիալիստները ցանկանան, ապա բավական է մեկ կամ մի քանի օր ամբողջ աշխարհին տիրանալու համար։ ԱՄՆ-ի ղեկավար շրջանները, նրա պաշտոնական և անպաշտոն գրչակները թմբկահարում էին այդ չափից ավելի ուռցրած առասպելը, ձգտելով հարթել ամերիկյան իմպերիալիստների ճանապարհը դեպի համաշխարհային տիրապետություն։ ՆԱՏՕ-ի երկրներում այդ առասպելը տարածում էին բուրժուազիայի սպասարկուները, աշխատելով վախեցնել այդ երկրների բանվորներին և մյուս աշխատավորներին, նրանց հեռու պահել դասակարգային պայքարից։

Առաջադիմական մամուլը միշտ էլ բացահայտել է ամերիկյան պրոպագանդայի կեղծիքը, հերքել նրա հորինվածքները։ Մեկը մյուսի հետևից ձախողվել են ԱՄՆ-ի և՛ փոքր, և՛ մեծ դավերը։ Սակայն ԱՄՆ-ի ագրեսիվ ավանտյուրիստական շրջանները չէին ուզում նկատել այդ պարտությունները և շարունակում էին գործել ավելի կամակոր ու ամբարտավան, քան նախկինում։

1957 թվականը ցրեց մշուշը բոլոր նրանց համար, ովքեր չգիտեին, թե ինչ բան է Ամերիկան։ Եվ նա ներկայացավ ամբողջ աշխարհի առջև հեղինակազրկված, և մարդիկ տեսան, թե ինչքան ողորմելի է նա տարիների սնապարծությունից հետո։ Բուրժուական մամուլը ավելի քան չորս տարի գրում էր ամերիկյան թռչող արկերի մասին, հոլովում նրանց անունները («Հոնեստ Ջոն», «Ատլաս», «Յուպիտեր» և այլն), նկարագրում նրանց տեսակները («Գետին—օդ—գետին», «Ջուր—օդ—գետին», «Գետին—օդ—ջուր» և այլն)։ Բազ-

digitised by A.R.A.R.@

մաթիվ հոդվածներում լռջորեն պատմվում էր, թե ինչպես ամերիկյան «Ավանգարդը» առաջինը կսավառնի դեպի միջմոլորակային տարածությունները, կսկսի պտտվել երկրագնդի շուրջը։

Բայց ավա՜ղ։ Սովետական Միությունն առաջ անցնելով Ամերիկայի Միացյալ Նահանգներից, 1957 թվականին բաց թողեց իր արհեստական արբանյակը, և այն էլ ոչ թե մեկը, այլ երկուսը, հաջողությամբ գործարկեց աշխարհում առաջին միջցամաքային բալիստիկ հրթիռը։

Միջազգային թատերաբեմում ուժերի հարաբերակցության փոփոխվելը և ԱՄՆ-ի, իմպերիալիստական լագերի ռազմական ուժերի գերազանցության վերաբերյալ առասպելի սնանկացումը խուճապ առաջացրեց նրա կառավարող շրջաններում, որտեղ տարբեր խմբեր սկսեցին մեղադրել իրար, անհաջողության պատճառները փնտրելով միմյանց մոտ։ Բնականաբար իրերի նման վիճակը ազդեց նաև Ատլանտյան պակտում ԱՄՆ-ի «ավագ» և «կրտսեր» «եղբայրակիցների» վրա։

ԱՄՆ-ի պետական դեպարտամենտը և Պենտագոնը (ԱՄՆ-ի ռազմական շտաբը) անհապաղ ձեռնամուխ եղան բոլոր միջոցներով հասարակական կարծիքի դեզինֆորմացիայի կազմակերպմանը, նորից ծավալվեց ռազմական հիստերիան, գեներալները՝ կադրային ու պաշտոնաթող, սկսեցին աղմկել սովետական արբանյակների կողմից «ազատ աշխարհին» սպառնացող վտանգի մասին։ Դալլեսը հասավ այն բանին, որ դեռևս մինչև ՆԱՏՕ-ի՝ Փարիզի սեսիայի գումարումը, միջուկային ռումբերով բեռնավորված ամերիկյան ռմբակոծիչները սկսեցին «փորձնական» թռիչքներ կատարել Անգլիայի և Ֆրանսիայի երկնքում։ Դեկտեմբերի 4—6-ը «կայացավ» ամերիկյան «Ավանգարդի» «փորձարկումը», որը վերջացավ բոլորին հայտնի անհաջողությամբ։ Հիստերիան ավելի ուժեղացավ։ Ամերիկյան կոնգրեսում և սենատում մոնոպոլիաների դրածոները նոր աղմուկ բարձրացրին «երկրի անվտանգությունը» ապահովելու նպատակով ռազմական բյուջեն և ծախսերը ավելացնելու օգտին։ Հորինվեց, այսպես կոչված, «փոխադարձ կախվածության դոկտրինան», ըստ որի ՆԱՏՕ-ի մեջ մտնող երկրների տերիտորիայում տեղադրվում են ամերիկյան հրթիռներ, որոնց օգտագործման իրավունքը տրվում է միայն ամերիկյան ռազմական իշխանություններին։ Վաշինգտոնը, ինչպես երևում է, փորձում է իր ռազմական ուժերի գերակշռության կորուստը փոխհատուցել պարտնյորների վրա գործադրվող ճնշման ուժեղացմամբ, պահանջելով, որ նրանք անտրտունջ ենթարկվեն իրեն։ Այս քաղաքականությունը իսկական հակաամերիկյան ցասում առաջ բերեց ՆԱՏՕ-ի երկրների ժողովուրդների մեջ, որը շարունակվում և օր օրի վրա խորանում է։

Նոր իրադրությունն ավելի սրեց հակասություններն ատլանտյան դաշնակիցների շարքերում։ ԱՄՆ-ը և Անգլիան՝ իրենց հորինած «սովետական ներխուժումից փրկելու» համար սկսեցին զենք մատակարարել Թունիսին, հաշվի չառնելով Ֆրանսիային, որի հետ Թունիսը գտնվում է «փոխադարձ կախվածության մեջ»։ Անգլիային ու Ֆրանսիային նեղում է Արևմտյան Գերմանիան, որը հավակնություն ունի դառնալու ԱՄՆ-ի առաջին պարտնյորը Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկում։

Այսպիսի պայմաններում, անցյալ տարվա դեկտեմբերի կեսերին, Փարիզի Շայո պալատը հավաքվեցին ատլանտյան բլոկի 15 երկրների կառավարու-



թյունների ղեկավարները՝ իրենց արտաքին գործերի, ռազմական և ֆինանսների մինիստրների հետ միասին։

ՆԱՏՕ-ի այդ սեսիային ծայրահեղ կարևոր նշանակություն էր տրվում. սկսած 1949 թվականից (բլոկը կազմելուց հետո), դա առաջին անգամն էր, որ այդպիսի հավաքում ներկա էին ատլանտյան պակտի բոլոր երկրների ղեկավարները։ ԱՄՆ-ի պատվիրակությունը Էյզենհաուերի և Դալլեսի գլխավորությամբ նախօրոք պատրաստել էր սեսիայի օրակարգը, որտեղ հիմնական ուշադրությունը պետք է դարձվեր ռազմական հարցերի վրա։ Նրանք իրար մեջ բաժանել էին սեսիայի աշխատանքն այն հաշվով, որ թույլ չտային պարտնյորներին դուրս գալու հնազանդությունից. պրեզիդենտն իր վրա էր վերցրել ամերիկյան «քաղաքական դոկտրինայի» պաշտպանությունը, իսկ պետական քարտուղարը՝ «ԱՄՆ-ի ռազմական ստրատեգիայի» պրոպագանդան։

Փարիզի սեսիայի նպատակն էր մշակել ատլանտյան նոր ստրատեգիա. քանի որ ԱՄՆ-ը չունի միջցամաքային հրթիռ, ապա միջազգային ասպարեզում ռազմական ուժերը «հավասարեցնելու» համար անհրաժեշտ էր ստանալ եվրոպական պարտնյորների համաձայնությունը՝ նրանց տերիտորիայում մոտիկ և միջին տարածությունների վրա գործող ատոմային հրթիռներով ամերիկյան բազաներ ստեղծելու մասին։ Մյուս կարևոր խնդիրը՝ դա ատլանտյան «համագործակցության» ապահովումն էր, իսկ դրա համար հարկավոր էր սեղմել պարտնյորներին, թույլ չտալ նրանց խոսելու Սովետական Միության կառավարության ուղերձներում բարձրացված հարցերի մասին։ Սակայն ամերիկյան օրակարգի վերաբերյալ լուրջ տարաձայնությունները, որ բռնկվեցին կոնֆերանսի հենց առաջին նիստում, ԱՄՆ-ի պատվիրակությանը ստիպեցին համաձայնվել առաջին հերթին քննարկելու այն առաջարկները, որոնք արված էին Սովետական կառավարության հայտնի ուղերձներում։ Այդ ուղերձներում շարադրված սովետական խաղաղասիրական առաջարկություններն այնքան համոզիչ են և այնպիսի մեծ տպավորություն են թողել միջազգային հասարակական կարծիքի վրա, որ խորհրդակցությունը չէր կարող անցնել դրանց կողքով։ Զնայած ամերիկացիների՝ իրենց պարտնյորների նկատմամբ բռնած «ուժի դիրքին», այնուամենայնիվ նրանցից ոմանք (Նորվեգիայի, Դանիայի, Կանադայի ներկայացուցիչները) պարզ կերպով արտահայտվեցին Սովետական Միության հետ բանակցություններ վարելու օգտին, դեմ դուրս եկան իրենց երկրների տերիտորիաներում հրթիռային զենքի բազաներ ստեղծելուն։

ՆԱՏՕ-ի սեսիայի եզրափակիչ կոմյունիկեում նույնպես քիչ չի խոսվում խաղաղության մասին։ Այդ կապակցությամբ Ն. Ս. Խրուշչովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի իններորդ սեսիայում արտասանած ճառում նշում է. «Մենք և՝ Սովետական Միությունը, համաձայն ենք ստորագրելու խաղաղության և զինաթափման վերաբերյալ այսպիսի հայտարարությունների տակ։ Ինչո՞ւ ՆԱՏՕ-ի մեջ մտնող երկրները և Վարշավայի պայմանագրի մեջ մտնող երկրները չմշակեն չհարձակվելու ընդհանուր դեկլարացիա։ Ինչո՞ւ պարտավորություններ չստանձնեն դադարեցնել պատերազմի կոչերը, վերացնել «սառը պատերազմի» սպառազինությունների մրցավազքի վիճակը, վերացնել առևտրի սահմանափակումները և խտրականությունը, զարգացնել կապերը գիտության, կուլտուրայի, սպորտի ասպարեզում»։

Հյուսիս-ատլանտյան բլոկի մեջ մտնող կառավարությունների ղեկավարները հայտարարեցին, թե իրենք Փարիզում հավաքվել էին ոչ ագրեսիվ մտա-

Государственная БИБЛИОТЕКА СССР им. В. И. Ленина

digitised by A.R.A.R.@

դրույթյուններով, որ իրենք պատերազմի նպատակներ չեն հետապնդում, որ իրենք իբր թե միայն ձգտում են խաղաղության և սոսկ միջոցներ են ձեռնարկում հնարավոր ագրեսիայից պաշտպանվելու համար։ Նրանք փորձեցին միջուկային նոր պատերազմի սպառնալիքով հղի իրենց ռազմական պլանները քողարկել ՆԱՏՕ-ի «պաշտպանողական նպատակների» մասին ֆրազներով։ Բայց չէ՞ որ արևմտյան պետություններին ոչ ոք ագրեսիայով չի սպառնում և, հետևաբար, նպաստավոր իրադրություն կա միջազգային լարվածությունը թուլացնելու, խաղաղության գործը ամրապնդելու համար։

ՆԱՏՕ-ի խորհրդի սեսիայի որոշումները վկայում են, որ այդ ագրեսիվ բլոկի ղեկավարները մտադիր են շարունակել սպառազինությունների մրցավազքը։ Նրա ընդունած դեկլարացիան, որը արևմտյան երկրներին միասնության կոչ է անում և անհիմն պնդումներ է պարունակում կարծեցյալ սովետական «սպառնալիքի» առթիվ, նպատակ ունի արդարացնել Միացյալ Նահանգների վարած «սառը պատերազմի» և սպառազինությունների մրցավազքի քաղաքականությունը։ Կոմյունիկեում հայտարարված է, որ որոշվել է Եվրոպայում ՆԱՏՕ-ի զորքերը զինել գործողության միջին շառավիղ ունեցող բալիստիկ արկերով։ Այնտեղ ասված է նաև բոլոր ասպարեզներում՝ ռազմածովային նավատորմի, ավիացիայի, թիկունքի ծառայության զինված ուժերի զինման ու կոմպլեկտավորման ասպարեզներում «ստանդարտացման» և «ուժերի ամենալայն միավորման» մասին՝ նպատակ ունենալով «ավելի լավ օգտագործել ռեսուրսները» և հասնել «ՆԱՏՕ-ի ուժերի ավելի մեծ մարտունակության»։

Կոմյունիկեից բխում է այն հետևությունը, որ Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկի պետությունները մտադիր են շարունակել ուրիշ երկրների, մասնավորապես Մերձավոր Արևելքի և Աֆրիկայի երկրների ներքին գործերին միջամտելու քաղաքականությունը և նրանց ներքաշել իրենց ռազմական պլանների մեջ։ Սեսիայի մասնակիցները Աֆրիկայի ժողովուրդներին կոչ արեցին «համագործակցել» ՆԱՏՕ-ի մեջ մտնող եվրոպական պետությունների հետ և ընդգծեցին Մերձավոր Արևելքում դրությունը «կայունացնելու» կարևորությունը։

Միաժամանակ ագրեսիվ բլոկի կազմակերպիչները ճգնեցին իրենց ռեակցիոն դիտավորությունները քողարկել միջազգային կոմունիզմի «սպառնալիքի», համաշխարհային տիրապետության նրա ձգտման մասին աղաղակներով։ Նրանց հրապարակած դեկլարացիայում անհիմն կերպով ասված է, թե իբր կոմունիստական ղեկավարները ձգտում են աշխարհի նկատմամբ իշխանության հասնել, բռնության, քայքայիչ գործողությունների միջոցով։ Հին հեքիաթնե՜ր։ «Կոմունիստների համար,— ասել է Ն. Ս. Խրուշչովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում արտասանած ճառում,— հարկ չկա ուժով պարտադրելու իրենց գաղափարները։ Կոմունիզմի գաղափարները մեր դարի ամենաառաջավոր գաղափարներն են, նրանք ապրում են այնտեղ, ուր ապրում է ժողովուրդը։ Այդ գաղափարները ոչնչացնել չի կարելի, ինչպես չի կարելի ոչնչացնել ժողովրդին»։

Հասարակության զարգացման արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին։ Սոցիալիզմի լագերը, որին գլխավորում է Սովետական Միությունը, օրեցօր ավելի ու ավելի է ուժեղանում և առնանում։ Պատմական զարգացման պրոցեսն անողոք է։ Աշ-



խարհում չկա այլևս մի այնպիսի ուժ, որ կարողանա սասանել սոցիալիզմի հզորությունը, ետ դարձնել պատմության անիվը։

Հիմնահատակ փլվում է գաղութային սիստեմը, Ասիայի ու Աֆրիկայի բազմաթիվ ժողովուրդներ դեն են նետում օտարերկրյա բռնակալների դարավոր լուծը։

XX դարում, մարդկության պատմության մեջ աննախընթաց հեղաշրջումների շնորհիվ կապիտալիզմը թևակոխել է իր վերջնական կործանման շրջանը։ Բանվոր դասակարգի, աշխատավորական մյուս զանգվածների կողոպուտ ու շահագործում, հրաժարում բուրժուական դեմոկրատիայից և անցում բացարձակ բռնությունների, էկոնոմիկայի ռազմականացում, պատերազմներ և տասնյակ միլիոնավոր մարդկանց բնաջնջում — ահա թե ինչ է բերել ժողովուրդներին կապիտալիզմը վերջին վեց տասնամյակների ընթացքում։ Այս ամենի հետևանքով ուժեղացել, չտեսնված սուր բնույթ են ստացել կապիտալիզմի հակասությունները։ Կապիտալիստական երկրների աշխատավորները տեսնում են, համոզվում, որ ազատագրվելու համար չկա ուրիշ ելք, բացի կապիտալիզմի տապալումից։ Այդ համոզմունքը նրանց մոտ ավելի է ամրապնդվում, դառնում խոր հավատ, երբ նրանք տեսնում են սոցիալիզմի ուղին բռնած, նոր կյանք կերտող ժողովուրդների համաշխարհային-պատմական հաջողությունները։

Կապիտալիզմը գտնվում է համապարփակ ճգնաժամի մեջ։ Այդ ճգնաժամից նա այլևս անկարող է դուրս գալ։ Պատմական անհրաժեշտություն է դարձել հին, կապիտալիստական արտադրական հարաբերությունները նոր, սոցիալիստական արտադրական հարաբերություններով փոխարինելը։ Իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու նախադրյալների առկայությունը ենթադրում է, որ այդ անցումը յուրաքանչյուր կապիտալիստական երկրի ժողովրդի ներքին գործն է, որ սոցիալիզմը այնտեղ կհաստատվի ոչ թե «դրսից ներմուծելու» ճանապարհով, այլ կհանդիսանա տվյալ երկրում սոցիալ-քաղաքական ուժերի հարաբերությունը հօգուտ բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների փոփոխվելու անխուսափելի արդյունքը։

Ուստի անցումը դեպի կոմունիզմ ոչ մի կապ չունի թշնամիների հնարած «կոմունիստական ագրեսիայի» հետ, որի մասին արդեն քանի՜երորդ անգամ, ՆԱՏՕ-ի վերջին սեսիայում նորից խոսեց Դալլեսը։ Նա ճգնում էր «ապացուցել», թե անհամատեղելի են խաղաղ գոյակցության սկզբունքը և կոմունիստների այն դրույթը, որ կապիտալիզմը անպայման պետք է կործանվի։ Անհրաժեշտ է բորբոքել «սառը պատերազմը», «ուժի դիրքերից» քաղաքականությունը և ստիպել կոմունիստներին հրաժարվելու իրենց գաղափարներից, աղմկում է Դալլեսը։ Բայց դալլեսյան այս դատողությունները ինչպես միշտ, այս անգամ էլ զուրկ են տարրական տրամաբանությունից. կոմունիստները երկու սիստեմների միջև գաղափարական տարաձայնությունների առկայությունն ընդունելով հանդերձ, երբեք էլ չեն գտնում, որ «ուժի դիրքերից» ելնող քաղաքականությամբ կարելի է տարածել կոմունիզմի գաղափարները։

Ինչ վերաբերում է կոմունիստներին «ստիպելու» նրա պահանջին, ապա կարելի է ասել, որ այստեղ էլ Դալլեսն ինքնատիպ չէ. ովքեր ասես, որ հանդես չեն եկել կոմունիստների դեմ նման անհեթեթ պահանջներով հենց այն օրից, երբ Եվրոպայում սկսեց շրջել կոմունիզմի ուրվականը։ Իսկ այսօր, երբ

digitised by A.R.A.R.@

*միջմոլորակային տարածության մեջ, երկրագնդի շուրջը հազարավոր պտույտներ են կատարել կոմունիստների բաց թողած արհեստական արբանյակները, կոմունիստներին «ստիպելու» մասին դալլեսյան դատողությունը միայն այն է վկայում, որ նրա հեղինակն այնքան է բորբոքել «սառը պատերազմը», որ ինքը զրկվել է սառը դատելու ընդունակությունից։*

*Դալլեսը հանդես է գալիս զինաթափման հարցերում ԱՄՆ-ի դիրքը փոխելու դեմ և պնդում է ամերիկյան հին առաջարկները, որոնք, ինչպես հայտնի է, արդեն փակուղու մեջ են գցել զինաթափման բանակցությունները։ Ամերիկյան «Բիզնես ուիկ» հանդեսը գրում է. Դալլեսը «գտնում է, որ բանակցությունները (Սովետական Միության հետ) ներկայումս անօգուտ են և ուշադրությունը կշեղեին արևմտյան պաշտպանությունն ամրապնդելու հույժ անհրաժեշտ ջանքերից», այսինքն՝ կխանգարեին սպառազինությունների մրցավազքի ուժեղացմանը։ Նա չի ուզում հասարակական կարծիքին արվող ձևական զիջումներից ավելի հեռուն գնալ, զիջումներ, որոնք քողարկեին ԱՄՆ-ի բացասական պատասխանը սովետական առաջարկներին։*

*Արտաքուստ համաձայնվելով Սովետական Միության հետ բանակցելու անհրաժեշտության գաղափարին, Դալլեսը, «Գազետ էնդ Դեյլի» թերթի արտահայտությամբ, «անում է ամեն հնարավոր բան, որպեսզի թույլ չտա իսկական բանակցություններ», ուստի և շարունակի «սառը պատերազմը»։*

*Ո՛չ միայն գաղափարական տարաձայնությունները, այլև միջազգային ամենակնճռոտ հարցերի առկայությունը երբեք էլ չեն կարող արդարացնել «սառը պատերազմը», առավել ևս «տաքը»։ Այստեղից հետևում է, որ արդի դարաշրջանում միջազգային զարգացման միակ ճիշտ ուղին երկու սիստեմների խաղաղ գոյակցությունն է, նրանց խաղաղ մրցությունը։*

*Իսկ եթե այդ այդպես է, եթե այժմ անխուսափելի է մեր մոլորակի վրա սոցիալիզմի և կապիտալիզմի միաժամանակյա գոյությունը, ապա ինչպիսի՞ն պետք է լինեն երկու սիստեմների երկրների հարաբերությունները, ի՞նչ ուղիներով պետք է զարգանան և ի՞նչ ձևեր պետք է ընդունեն տնտեսական ու կուլտուրական այն կապերը, որ ստեղծվել են ժողովուրդների միջև։ Այս հարցերի ճիշտ լուծումը, անշուշտ, անչափ կարևոր է մարդկության հետագա առաջընթացի, նրա ստեղծած նյութական բարիքները և կուլտուրական արժեքները բոլոր ժողովուրդների բարօրությանն ի սպաս դնելու համար։ Բայց դրանց ճիշտ լուծումը առավել կարևոր նշանակություն է ստանում այսօր, երբ մարդկային հանճարը հայտնագործել է ատոմային էներգիան, երբ, մի կողմից, մարդու համար չտեսնված հորիզոններ է բացվել բնության դեմ նրա անվերջ պայքարում և, մյուս կողմից, ստեղծվել է միջուկային զենքը, որի գործածությունը պատերազմում, անկասկած, սարսափելի հետևանքներ կունենա համայն մարդկության համար։*

*Սովետական պետությունն իր գոյության առաջին իսկ օրից երկու սիստեմների խաղաղ գոյակցությունը հռչակելով որպես իր արտաքին քաղաքականության հիմնական սկզբունքը, բոլոր միջոցներով պայքարում է խաղաղության, ժողովուրդների եղբայրական համագործակցության համար։ Այդ քաղաքականությունը լիովին համապատասխանում է բոլոր ժողովուրդների շահերին։ Սովետական մարդը՝ կոմունիզմի խանդավառ կառուցողը, քաջ գիտակցում է, որ բոլոր աշխատավոր ժողովուրդները, մեծ թե փոքր, ընդունակ են տնօրինելու իրենց բախտը, նրանք բոլորն էլ իր եղբայրներն են, աշխարհի որ*



*մասում էլ որ բնակվեն։ Սովետական ժողովուրդը նրանցից ոչ մեկի հետ պատերազմի միջոցով բաժանելու ոչինչ չունի։ Անսպառ են նրա անծայրածիր երկրի հարստությունները, անհատնում նրա ուժերը։ Մեր հսկա տերությունը ո՛չ միայն ամեն ինչ ունի կոմունիզմ կառուցելու համար, այլև կարող է, ինչպես այդ անում է շատ ժողովուրդների նկատմամբ, օգնություն ցույց տալ նաև ուրիշներին։*

*Սովետական Միությունը, ինչպես նաև նրա շուրջը համախմբված սոցիալիզմի լագերի բոլոր երկրները մտել են իրենց ծաղկման նոր շրջան։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 40-ամյակի տոնակատարությունը ՍՍՌՄ-ում և ամբողջ աշխարհում, կոմունիստական և բանվորական պարտիաների Մոսկվայի խորհրդակցությունը մի նոր ուժով ցույց տվին, որ ազատասեր մարդիկ անսասան են աշխատավոր մարդկության կենսական շահերը իմպերիալիզմի ոտնձգություններից պաշտպանելու վճռականության մեջ։*

*Սովետական ժողովրդին անսահման թանկ է իր լավագույն զավակների արյան գնով ձեռք բերած հաշտ ու խաղաղ կյանքը։ Ահա թե ինչու նա վճռականորեն պահանջում է բացառել պատերազմները, որպես միջազգային պրոբլեմները լուծելու միջոց, լինեն դրանք, այսպես կոչված, տեղական, ռեգիոնալ թե համաշխարհային։ Նա պահանջում է վերջ տալ «սառը պատերազմին» և սպառազինությունների մրցավազքին, արգելել միջուկային զենքի օգտագործումը, վերացնել առևտրի բնագավառում սահմանափակումն ու խտրականությունը, բոլոր ջանքերը գործադրել ամրապնդելու միջազգային խաղաղությունը և զարգացնելու ժողովուրդների բարեկամական հարաբերություններն ու համագործակցությունը։*

*Այդ են ուզում աշխարհի բոլոր աշխատավորները։*

*Ն. Ս. Խրուշչովի ճառի և Սովետական կառավարության արտաքին քաղաքականության հարցերի մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշման շուրջը արտասահմանյան արձագանքները ցույց են տալիս, թե ինչպիսի ուրախությամբ են դիմավորում քաղաքական ամենատարբեր ուղղություններին հարող մարդիկ իսկապես խաղաղության օգտին արված յուրաքանչյուր առաջարկություն։ Եվ, ընդհակառակն, յուրաքանչյուր մանևր, որ թելադրված է «սառը պատերազմը» շարունակելու գաղտնի մտադրություններով, դատապարտվում է ամբողջ աշխարհում։*

*ՍՍՌՄ Զինված Ուժերի նոր, 300 000 մարդով, կրճատման վերաբերյալ ՏԱՍՍ-ի հաղորդագրությունը իր վրա է բևեռել աշխարհի տարբեր երկրների բնակչության բոլոր խավերի խոր ուշադրությունը։ Արտասահմանյան բազմաթիվ թերթեր դա մի նոր կոնկրետ քայլ են համարում սպառազինությունների սահմանափակման, ինչպես նաև պետությունների մերձեցման և փոխըմբռնման ճանապարհին։ Բարի կամքի մարդիկ այսօրինակ քայլեր են սպասում Արևմուտքի պետություններից, քանի որ սպառազինությունների սահմանափակումը չի կարող միայն միակողմանի ակտ լինել։ Իտալական «Պաեզե» թերթը գրում է, որ զինված ուժերի կրճատումը նպատակ ունի թուլացնել միջազգային լարվածությունը և նպաստել վստահության մթնոլորտի վերականգնմանը։ Բացի դրանից, թերթը նշում է, որ 300 հազար զինվորի զորացրումը Սովետական պետությանը թույլ կտա տնտեսել մեծ միջոցներ և մեծ թվով մարդկանց փոխադրել խաղաղ աշխատանքի՝ հօգուտ ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման։*

digitised by A.R.A.R.@

Ծնելով աշխարհի խաղաղության շահերից և ղեկավարվելով սոցիալական երկու տարբեր սիստեմների գոյակցության հնարավորության լենինյան սկզբունքից, Սովետական կառավարությունը միջազգային լարվածությունը թուլացնելու հարցերի մասին հանդես եկավ նոր առաջարկություններով։ ՍՍՌՄ կառավարությունը ԱՄՆ-ի պրեզիդենտ Դ. Էյզենհաուերին և Մեծ Բրիտանիայի պրեմիեր-մինիստր Հ. Մակմիլանին ուղղած ուղերձներում առաջարկում է 1958 թվականի առաջին երեք ամիսների ընթացքում անցկացնել պետությունների ղեկավար գործիչների բարձր մակարդակով խորհրդակցություն՝ կառավարությունների ղեկավարների մասնակցությամբ։ Սովետական կառավարությունը գտնում է, որ խորհրդակցությունում առաջին հերթին պետք է քննարկել այնպիսի հարցեր, որոնց կարգավորումը կհամապատասխաներ ժողովուրդների իղձերին և մի կարևոր նախաձեռնություն կլիներ միջազգային իրադրությունը արմատապես փոխելու և «սառը պատերազմը» դադարեցնելու գործում։ Այնուհետև, ասված է, որ ատոմային ու ջրածնային զենքի արգելման խնդիրը, որպես մասսայական ոչնչացման զենքի, որի գործադրումը անհամատեղելի է քաղաքակիրթ մարդկության խղճմտանքի հետ, ավելի ու ավելի անհետաձգելի է դառնում։ Սովետական կառավարությունն իր կողմից անշեղորեն ձգտում է ատոմային ու ջրածնային զենք գործադրելուց հրաժարվելու հարցի շուրջը ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի կառավարությունների հետ համաձայնության գալու։ Ատոմային ու ջրածնային զենք ունեցող բոլոր տերությունների կողմից ստանձնված այդպիսի պարտավորությունը մեծ նշանակություն կունենար պետությունների հարաբերություններում վստահություն հաստատելու և ատոմային պատերազմի սարսափից ժողովուրդներին ազատելու համար։

Փաստաթղթում նշված է, որ «սառը պատերազմը» և սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու շահերին կհամապատասխաներ խորհրդակցությունում Հյուսիս-ատլանտյան դաշինքի անդամ պետությունների և Վարշավայի պայմանագրի մասնակից բոլոր պետությունների միջև չհարձակման այս կամ այն ձևով համաձայնագիր կնքելու հարցի քննարկումը։

Այնուհետև, Սովետական կառավարությունն անում է մի ամբողջ շարք կարևոր առաջարկություններ, որոնք վերաբերում են միջազգային հարաբերությունների տարբեր հարցերին և որոնք ուղղված են աշխարհում խաղաղությունն ամրապնդելու, երկու սիստեմների խաղաղ գոյակցության, Եվրոպայի անվտանգության ապահովման, փոխադարձ տնտեսական կապերի ընդլայնման և զարգացման նպատակին։

Մարդկությունը Արևմուտքի պետական գործիչներից ուղղակի պատասխան է սպասում Սովետական կառավարության արած պարզ և կոնկրետ առաջարկություններին, որոնք ռեալ ուղեցույց են միջազգային լարվածությանը վերջ տալու ճանապարհին։

Նոր պատերազմի վտանգի դեմ մինչև վերջ պայքարելու աշխարհի բոլոր ժողովուրդների վճռական կամքը հաստատուն երաշխիքն է այն բանի, որ խաղաղության ուժերը կհաղթեն պատերազմի ուժերին և կհասնեն միջազգային հրատապ պրոբլեմների խաղաղ լուծմանը, կապահովվի խաղաղությունը համայն աշխարհում։

---

# ՌԻԹՄԻԿ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԴԵՐԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Վ. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ

Հասարակական աշխատանքի բաժանման անընդհատ խորացման, ար-
դյունաբերության մեջ նոր, ինքնուրույն ճյուղերի և մասնագիտացված ձեռ-
նարկությունների ստեղծման համընթաց ավելի ու ավելի են խորանում, մեծ
ծավալ ու մասշտաբներ ընդունում սոցիալիստական տարբեր ձեռնարկություն-
ների տեխնիկա-տնտեսական կապակցությունները, նրանց գործունեության փո-
խադարձ կապն ու պայմանավորվածությունը։ Այս պայմաններում հրամայակա
պահանջ է ձեռնարկությունների ռիթմիկ, համաչափ գործունեությունը։

Արտադրության պրոցեսի ռիթմիկ կազմակերպումը, պատրաստի արտա-
դրանքի թողարկման համաչափությունը անմիջականորեն կապված են աշխա-
տանքի արտադրողականության բարձրացման, ձեռնարկության տնտեսական
գործունեության բարելավման հետ։ Աշխատանքի ռիթմիկ կազմակերպումը
աշխատանքի արտադրողականությունը բարձրացնող այնպիսի գործոն է, որը
խիստ անհրաժեշտ է բոլոր ձեռնարկություններին։

Արտադրության ռիթմը ձեռնարկության բոլոր օղակներում արտադրանքի
թողարկման գրաֆիկով սահմանված առաջադրանքների թե՛ որակական և թե՛
քանակական ցուցանիշների մշտական, սիստեմատիկ, համաչափ կատարումն
է՝ ամսվա առաջին օրվանից մինչև վերջին օրը։

Ձեռնարկությունների աշխատանքների համաչափ, ռիթմիկ կազմակերպումը բխում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության պլանաչափ (համամասնա-
կան) զարգացման տնտեսական օրենքի պահանջներից։ Այդ օրենքի պահանջ-
ներին համապատասխան կազմված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության պլա-
նի կատարողականն ապահովելու գործում սոցիալիստական ամեն մի ձեռնար-
կություն ունի իր որոշակի դերն ու տեղը։

Ըստ պլանի որոշակի կապեր ու պրոպորցիաներ են սահմանվում բազմա-
թիվ ձեռնարկությունների միջև և, բավական է, որ այդ ձեռնարկություններից
որևէ մեկը խախտի սահմանված կապն ու պրոպորցիան, դրանով իսկ կխախտ-
վի արտադրապես իրար հետ կապված մի ամբողջ շարք ձեռնարկություն-
ների գործունեությունը։ Դա պահանջում է, որ սոցիալիստական ձեռնարկու-
թյունները լուրջ ուշադրություն դարձնեն պլանավորման աշխատանքների վրա
և արտադրությունն այնպես կազմակերպեն, որ ապահովվի պլանով նախա-
տեսվող առաջադրանքների անթերի կատարումը։ Հենց ձեռնարկությունների
ռիթմիկ, համաչափ գործունեությունն էլ ապահովում է արտադրապես կից,
կոոպերացված ձեռնարկությունների անխափան աշխատանքը և բարենպաստ
պայմաններ ստեղծում դրանց գործողության հետագա բարելավման համար։
Սակայն համաչափ և ռիթմիկ աշխատանքի դերը միայն այդ չէ, այլև
այն, որ 1) ապահովում է տվյալ ձեռնարկության բոլոր օղակների համաչա-

digitised by A.R.A.R.@

*նական զարգացումը, 2) ապահովում արտադրական կարողությունների և բանվորական ուժի ռացիոնալ օգտագործումը, կասեցնում դրանց պարապուրդները, գերբեռնվածությունն ու թերբեռնվածությունը տարբեր օղակներում, 3) բարձրացնում է բանվորների արտադրական-տեխնիկական կարգապահությունը, թողարկված արտադրանքի որակը և կրճատում է խոտանը։*

*Ինչպես միևնույն ճյուղի տարբեր արտադրական ձեռնարկությունները, այնպես էլ միևնույն ձեռնարկության տարբեր ցեխերը արտադրապես կապված են միմյանց հետ։ Մի ձեռնարկության արտադրանքն օգտագործվում է մյուսի կողմից. ճիշտ այդպես էլ ձեռնարկության մի ցեխի արտադրանքը մտնում է մյուս ցեխը՝ պատրաստի արտադրանք դառնալու հաջորդ պրոցեսով անցնելու համար։ Հասկանալի է, որ կապակցությունների այդ ընթացքում որևէ ցեխի պլանների որակական, քանակական և ասորտիմենտային ցուցանիշների թերակատարումը չի կարող չանդրադառնալ նրան հաջորդող ցեխերի պլանների կատարողականի վրա։*

*Հետևաբար, ձեռնարկության ռիթմիկ, համաչափ աշխատանքի ապահովումն անհնարին կլիներ առանց նախօրոք կազմված պլանային առաջադրանքների, ձեռնարկության տարբեր օղակների այնպիսի համամասնական գործունեության, որը սահմանվում է նախօրոք կատարված ռեալ հաշվարկի հիման վրա կազմված գրաֆիկի համապատասխան։ Այդ պահանջում է՝ արտադրական բոլոր օղակների կարողությունների ճիշտ հաշվառում, վերջիններիս և բանվորական ուժի ճիշտ տեղաբաշխում՝ ըստ առանձին ցեխերի, տեղամասերի և արտադրական գործառնությունների, նյութա-տեխնիկական այնպիսի մատակարարում, որպեսզի բոլոր ցեխերը, տեղամասերը, հաստոցներն ու բանվորական տեղերը ապահովված լինեն հումքով, իսկ բանվորներն էլ իրենց արտադրական գործունեությունն անխափան իրականացնելու համար՝ անհրաժեշտ գործիքներով։ Այսպիսով, ձեռնարկության բոլոր օղակների համամասնական և, հետևապես, ռիթմիկ, համաչափ աշխատանքն ապահովելու համար յուրաքանչյուր ձեռնարկություն պետք է ունենա արտադրանքի թողարկման նախօրոք մշակված գրաֆիկ, որը՝*

*1) ելնի ձեռնարկության ռեալ հնարավորություններից և արտադրության տարբեր օղակների ներսում իրականությանը համապատասխանող ճիշտ համամասնություններ սահմանելու սկզբունքից.*

*2) հենվի ոչ թե հին, այլ տեխնիկա-տնտեսական առաջավոր նորմաների, առաջավորների փորձի, նորարարների ստուգված առաջարկությունների տվյալների վրա.*

*3) ընդգրկի ձեռնարկությունում արտադրվող բոլոր տեսակի արտադրանքները, ձեռնարկության արտադրական թե՛ հիմնական և թե՛ օժանդակ արտադրապրոցեսները։*

*Սոցիալիստական ձեռնարկություններում կան բոլոր պայմանները արտադրության պրոցեսի նորմալ ընթացքն ապահովող այդպիսի ճիշտ պլաններ կազմելու համար։ Եվ իրոք, ռեալ պլաններ մշակելու, աշխատանքի պրոցեսում դրանք ավելի ճշգրտելու և լրացնելու գործում մեր երկիրը ձեռք է բերել շատ ու շատ հաջողություններ։ Սոցիալիստական էկոնոմիկայի անընդհատ վերելքի ու էկոնոմիկայի պլանաչափ (համամասնական) զարգացումն ապահովելու գործում անգնահատելի է սոցիալիստական ճիշտ պլանավորման դերը, որն իրականացվել և իրականացվում է սոցիալիստական շինարարության ընթացքում։ Սակայն, ինչպես ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան (1956 թ.) և Փետրվարյան (1957 թ.) պլենումները նշեցին, ձեռնարկությունների արտադրական կարողությունները ճիշտ հաշվի առնելու, դրա հիման վրա նրանց գործունեությունը պլանավորելու, ձեռնարկությունների նյութա-տեխնիկական մատակարարումը կազմակերպելու գործում դեռևս կան լուրջ թերություններ, որոնք հանգեցնում են ձեռնարկությունների ռիթմիկ աշխատանքի, արտադրանքի թողարկման համաչափության խախտման և աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանի թերակատարման։*

*Արտադրական կարողությունները ճիշտ հաշվի չառնելու վրա հիմնված պլանավորումը ձեռնարկության ուժերը չի մոբիլիզացնում արտադրական ծրագիրը կատարելու համար։ Ուստի, ձեռնարկության ռիթմիկ աշխատանքի և արտադրանքի համաչափ թողարկման ապահովումն անհրաժեշտորեն պահանջում է ձեռնարկության արտադրական կարողությունների ճիշտ հաշվառման վրա հիմնված ճշգրիտ պլանավորում։*

*Վերադաս օրգանների հաստատած տեխարդֆինպլանները՝ յուրաքանչյուր եռամսյակ ըստ ամիսների բաժանումով, իջեցվում են ձեռնարկության բոլոր օղակներին։ Դրանց հիման վրա ձեռնարկության յուրաքանչյուր օղակի համար կազմվում են պատրաստի արտադրանքի թողարկման տասնօրյա և օրական, ինչպես նաև ժամային գրաֆիկներ։ Ըստ որում, արտադրական պլանները և առանձին օղակների գրաֆիկը կազմելիս միշտ հաշվի են առնվում հավաքման կամ վերջնամշակման ցեխի պահանջներն ու հնարավորությունները։ Այդպիսի օպերատիվ պլանավորումը ձեռնարկության ռիթմիկ աշխատանքը կազմակերպելու և արտադրանքը համաչափ թողարկելու կարևոր պայմանն է։ Աշխատանքի պրոցեսում արտադրության տարբեր օղակներում գրաֆիկից կատարվող շեղումները խախտում են սահմանված համամասնությունները ինչպես առանձին օղակների, այնպես էլ հավաքման կամ վերջնամշակման ցեխերի միջև։*

*Հավաքման կամ պատրաստի արտադրանք թողարկող ցեխի ռիթմը պայմանավորված է մյուս օղակների գործունեությամբ, նրանց աշխատանքի համաչափությամբ ու ռիթմով։ Այդ ցեխի ռիթմը կոչվում է գլխավոր ռիթմ, իսկ մնացած ցեխերինը՝ գլխավոր ռիթմին ենթակա ռիթմեր են և ծառայում են նրան։ Եթե մշակման և նախապատրաստական ցեխերում ռիթմը չի պաշտպանվում, ապա այդ ազդում է հավաքման կամ վերջնամշակման ցեխի գործունեության վրա և խախտում է պատրաստի արտադրանքի թողարկման ռիթմը։*

*Ձեռնարկության ռիթմիկ աշխատանքն ամենևին էլ չի նշանակում նրա բոլոր օղակների, ձեռնարկության արտադրանքի ծավալի մշտական ու անփոփոխ մակարդակի պահպանում։ Այդպիսի ենթադրությունը չէր արտացոլի ձեռնարկությունների իրական, տեխնիկական պրոգրեսը։ Նախ, ամեն մի ձեռնարկությունում թողարկվող արտադրանքի ծավալն անընդհատ աճում է, արմատավորվում են նոր մեքենաներ ու մեխանիզմներ, կիրառվում են բազմաթիվ նորարական առաջարկություններ, ուստի այս պայմաններում թե՛ ըստ գրաֆիկի և թե՛ կատարման պրոցեսում փոխվում է արտադրության ծավալը, մեծանում է նախկինի համեմատությամբ թողարկվող արտադրանքի քանակությունը։*

*Երկրորդ, ձեռնարկության արտադրական մասշտաբների ընդլայնման*

տենդենցն այնպիսին պետք է լինի, որ չխախտի նրա տարբեր օղակների համամասնությունը, հետևապես, նրանց ռիթմիկ գործունեությունը։

Ձեռնարկության տարբեր օղակների միջև սահմանվող համամասնությունները մշտական, կայուն չեն, նրանք ընդգրկում են մի որոշակի ժամանակաշրջան։ Դրանք անհրաժեշտորեն փոխվում են, որովհետև երբեք էլ աշխատանքի արտադրողականությունը ձեռնարկության բոլոր օղակներում չի կատարվում հավասարաչափորեն. մի օղակում առաջընթաց կա, մյուսում՝ դեռ ոչ, մեկում այն մեծ է, մյուսում՝ փոքր։ Որպես օրինաչափություն, տարբեր օղակների միջև եղող փոփոխությունները հավասարապես չեն ծավալվում։ Այսպիսի պայմաններում նախկին գրաֆիկով նախատեսվող նորմաների պահպանումը, մի կողմից, հանգեցնում է անհամամասնությունների և չի ապահովում արտադրության ռիթմիկ աշխատանքը, իսկ մյուս կողմից՝ մեծ արգելք է դառնում տեխնիկական պրոգրեսի, արտադրության պրոցեսում կատարվող բազմաթիվ նորարական առաջարկությունների կիրառման ճանապարհին։ Այդ պատճառով ձեռնարկության ռիթմիկ աշխատանքն ապահովելու, նրա արտադրական կարողությունները մաքսիմալ կերպով օգտագործելու և արտադրողականության բարձրացման առավել բարձր ցուցանիշների հասնելու համար պլանավորման ժամանակ պետք է ձեռնարկության տարբեր օղակների միջև սահմանված համամասնություններն անընդհատ վերանայվեն, նրանք ճշտվեն և համակցվեն փոփոխված իրադրությանը։ Ներարտադրական համամասնությունների վերանայումը նպաստում է ձեռնարկության ռիթմիկ գործունեությանը, նրա տարբեր օղակների միջև ճիշտ, հիմնավորված կապի ստեղծմանը, արտադրական կարողություններն ու բանվորական ուժը ճիշտ տեղաբաշխելուն և դրանց հիման վրա արտադրանքի թողարկման ծավալի ընդլայնմանը։

Այսպիսով, ձեռնարկության արտադրական կարողությունների, նորարարների ու առաջավորների ձեռք բերած նվաճումների մանրակրկիտ ուսումնասիրության ու վերլուծության հիման վրա կազմված գրաֆիկը ձեռնարկության համաչափ, ռիթմիկ աշխատանքն ապահովելու նախապայմաններից մեկն է։

Երբ խոսվում է ձեռնարկության ռիթմիկ, համաչափ աշխատանքի մասին, ապա այստեղ միշտ նկատի է առնվում, որ ձեռնարկությունը կատարում է գրաֆիկով նախատեսվող բոլոր առաջադրանքները, որն ընդգրկում է, մի կողմից, ինչպես ձեռնարկությունն ամբողջությամբ վերցրած, այնպես էլ նրա բոլոր օղակներն առանձին-առանձին, իսկ մյուս կողմից, ինչպես տարեկան ու եռամսյա, ամսական, այնպես էլ տասնօրյա ու օրական առաջադրանքները։ Ձեռնարկության ռիթմիկ աշխատանքի այսպիսի ուսումնասիրությունը հնարավորություն կտա պարզելու ձեռնարկության բոլոր օղակների և ամբողջ ձեռնարկության աշխատանքների մակարդակը։ Այդ հնարավորություն է տալիս պարզելու նաև, թե տարվա, ամսվա, տասնօրյակի ընթացքում ո՛ր օղակում է խախտվել արտադրանքի թողարկման ռիթմը, համաչափությունը և ինչն է դրա պատճառը։ Դրա համար էլ Երևանի արտադրական մի շարք ձեռնարկությունների արտադրանքի թողարկման ռիթմը վերլուծելիս վերցնում ենք՝ 1) ամբողջ գործարանի համախառն արտադրանքը, 2) որևէ օղակի արտադրանքի թողարկումը և 3) ժամանակի մեծ (տարի, եռամսյակ, ամիս) և փոքր (տասնօրյակ, օր) հատվածը։ Միայն այսպիսի ուսումնասիրությունն է հնարավորություն տալիս իմանալու ձեռնարկության աշխատանքի ռիթմի և արտադրանքի թողարկման համաչափության վիճակը։ Ձեռնարկություննե-



րում աշխատանքային ռիթմն այդ բոլոր հատվածներով պահպանելը թեև դժվար է, բայց այն կախված է ձեռնարկության ինչպես ճիշտ պլանավորումից, նրա համապատասխան օղակների միջև ճիշտ համամասնություն սահմանելուց, այնպես էլ պլանն իրականացնելիս աշխատանքները լավ և ճկուն կազմակերպելուց։

Այժմ տեսնենք, թե ինչպես է պահպանվում աշխատանքային ռիթմն ու համաչափությունը Երևանի մի քանի արդյունաբերական ձեռնարկություններում։

Վերցնենք Շահումյանի անվան կաշվի գործարանի 1957 թվականի առաջին կիսամյակի գործունեությունը։ Գործարանի 1957 թ. առաջին կիսամյակի համախառն արտադրանքի թողարկման ռիթմը, համաչափությունը, ըստ ամիսների, հետևյալն է (հունվար ամսվա պլանն ընդունենք 100 տոկոս).

| Ամիսներ | Պլանը՝ տոկոսներով հունվար ամսվա նկատմամբ | Պլանի կատարման տոկոսը |
|---|---|---|
| Հունվար | 100,0 | 110,6 |
| Փետրվար | 99,9 | 106,5 |
| Մարտ | 108,2 | 109,6 |
| Ապրիլ | 108,4 | 103,9 |
| Մայիս | 104,3 | 103,3 |
| Հունիս | 104,3 | 109,7 |

Աղյուսակից երևում է, որ ամբողջ գործարանի համախառն արտադրանքի թողարկումը թե՛ ամբողջ կիսամյակի և թե՛ առանձին ամիսների մասշտաբով ընդհանուր առմամբ տեղի է ունեցել ռիթմիկ, համաչափ։ Արտադրական պլանները բոլոր ամիսներին գերակատարվել են։ Ինչպես վերը նշվեց, արտադրանքի ռիթմիկ, համաչափ թողարկումն, իհարկե, երբեք էլ չի նշանակում մշտական, անփոփոխ մակարդակի պահպանում, այլ նշանակում է արտադրանքի թողարկման համաչափ աճում, այնպիսի աճում, որը տարբեր ամիսների միջև ստեղծի որոշակի օրինաչափություն։ Ինչպես երևում է աղյուսակից, այդ օրինաչափությունը լավ չի պահպանվել։

Գործարանի համախառն արտադրանքի կիսամյակային տվյալները արտադրանքի թողարկման համաչափությունն արտահայտում են մոտավորապես, քանի որ այստեղ մի ընդհանուր հայտարարի են բերվել ցեխերի և բոլոր տասնօրյակների ու օրերի ընթացքում կատարված աշխատանքների արդյունքները, համահարթվել են տարբեր ժամանակաշրջանի և տարբեր ցեխերի առավելություններն ու թերությունները։ Հնարավոր է, որ գործարանի կիսամյակի համախառն արտադրանքի թողարկումը ամսական հատվածով լինի համաչափ, ռիթմիկ, բայց տարբեր ցեխերի, տասնօրյակների և օրերի մասշտաբով այն խախտված լինի։ Դրա համար էլ ձեռնարկությունների աշխատանքի համաչափությունն ու ռիթմն ուսումնասիրելիս պետք է ելնել նրա բոլոր օղակներից (առանձին-առանձին)՝ ըստ տասնօրյակների և ըստ օրերի։

Ուստի վերցնենք Երևանի կաշվի գործարանի առաջին կիսամյակի որևէ ամսի, թեկուզ հունիսի, համախառն արտադրանքի թողարկման ռիթմը, համաչափությունն ըստ տասնօրյակների.

digitised by A.R.A.R.@

| Տասնօրյակներ | Պլանն առաջին տասնօրյակի նկատմամբ | Պլանի կատարման տոկոսը |
|---|---|---|
| Առաջին | 100 | 99.5 |
| Երկրորդ | 112 | 110 3 |
| Երրորդ | 100 | 119.0 |

Այստեղից պարզ է, որ տասնօրյակային հատվածով նա պաշտպանվել է համախառն արտադրանքի թողարկման համաչափությունը, երեք տասնօրյակում էլ պլանները կատարվել են։ Այդ վկայում է նաև այն, որ I տասնօրյակում թողարկվել է ամբողջ արտադրանքի 29,1 տոկոսը, II տասնօրյակում՝ 36,3 տոկոսը, իսկ III տասնօրյակում՝ 34,6 տոկոսը։ II տասնօրյակի թե՛ պլանի և թե՛ կատարողականի տեսակարար կշռի մեծ լինելը բացատրվում է նրանով, որ I և III տասնօրյակում կա երկու, իսկ II տասնօրյակում՝ մեկ հանգստյան օր։ Համախառն արտադրանքի թողարկումն ըստ օրերի ուսումնասիրելու կարիքը չի զգացվում, քանի որ այստեղ ևս համաչափությունը պահպանված է։ Բայց ինչպես վերը նշվեց, հնարավոր է, որ համախառն արտադրանքի թողարկման համաչափությունը ամբողջ գործարանի մասշտաբով պահպանված լինի, իսկ արտադրության առանձին օղակներում խախտված լինի։ Այս տեսակետից հետաքրքրական է վերցնել նույն գործարանի փափուկ (երեսացու) կաշիների վերջնամշակման ցեխի դարձյալ հունիսամսվա համախառն արտադրանքի թողարկումն ըստ տասնօրյակների և օրերի։ Այդ բնութագրվում է հետևյալ աղյուսակներում.

| Տասնօրյակներ | Պլանն առաջին տասնօրյակի նկատմամբ | Կատարման տոկոսը |
|---|---|---|
| Առաջին | 100 | 107,0 |
| Երկրորդ | 112,9 | 107,5 |
| Երրորդ | 100 | 118,7 |

| Օրացուցային օրերը | Պլանը՝ տոկոսներով առաջին օրվա նկատմամբ | Կատարման տոկոսը | Գերակատարում | Թերակատարում % |
|---|---|---|---|---|
| 21 հունիսի | 100 | 135,8 | 35,8 | — |
| 22 » | 100 | 98,3 | — | 1,7 |
| 23 » | կիրակի | | | |
| 24 » | 1·0 | 110,2 | 10,2 | — |
| 25 » | 100 | 104 6 | 4,6 | — |
| 26 » | 100 | 139.4 | 39,4 | — |
| 27 » | 100 | 130.6 | 30,6 | — |
| 28 » | 100 | 10·,0 | 1,0 | — |
| 29 » | 100 | 162,2 | 62,2 | — |
| 30 » | կիրակի | | | |

Ինչպես երևում է երկու աղյուսակներից էլ, ցեխի արտադրանքի թողարկման համաչափությունը պահպանված է, բայց արտադրական գրաֆիկի կատարման հաճախականությունը օրերի մասշտաբով գրեթե խախտվել է։ Իսկ գրաֆիկի կատարման հաճախականությունը արտադրանքի թողարկման համա-



չափության ցուցանիշն է։ Հաճախականությունը որոշվում է տվյալ ժամանակամիջոցում (այս օրինակում տասնօրյակների) արտադրական պլանի կատարված ու գերակատարված օրերի և աշխատանքային օրերի հարաբերությամբ։ Երբ արտադրանքի թողարկումը հավասարաչափ, ռիթմիկ է լինում, ապա այդ հարաբերության քանորդում ստացվում է մեկ։ Մեր օրինակում 8 աշխատանքային օրերից արտադրական պլանը կատարվել և գերակատարվել է 7 օր։ Ուստի այս տասնօրյակում գրաֆիկի հաճախականության ցուցանիշը կազմել է $^7/_8$=0,88։ Նշանակում է, որ արտադրական գրաֆիկի հաճախականությունն այնքան էլ լավ չէ։ Չնայած տասնօրյակների և օրերի հաշվով արտադրական պլանները գերակատարվել են, բայց կատարողական օրերի միջև չկա համաչափություն։ Ճիշտ է, օրական պլանները գերակատարվում են, բայց գերակատարման տոկոսների տարբերությունը շատ մեծ է. օրինակ՝ հունիսի 22-ին արտադրական պլանը 1,7 տոկոսով թերակատարվել է, 28-ին գերակատարվել է մեկ տոկոսով, իսկ 21-ին գերակատարվել է 35,8, 26-ին՝ 39,4, 27-ին՝ 30,6 և 29-ին՝ 62,2 տոկոսով։ Այդքան մեծ տարբերությունները վկայում են այն մասին, որ կամ պլաններն ավելի ցածր տոկոսով գերակատարված օրերին գործարանում չեն օգտագործվել ներարտադրական հնարավորությունները, կամ էլ ավելի շատ գերակատարված օրերին դիմել են գրոհի և թողարկել են ցածրորակ արտադրանք։

Արտադրանքի թողարկման, կամ գործարանի աշխատանքային ռիթմի բոլոր օղակների այսպիսի մանրազնին վերլուծության միջոցով հնարավոր է դառնում պարզել ձեռնարկության թերի կողմերը և բացահայտել նրա պատճառները։ Այս կերպ բացահայտվում են այն հնարավորությունները, որոնց օգտագործումով կարելի կլիներ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը։ Այդ, միաժամանակ, հնարավորություն է ընձեռում հաջորդ ժամանակաշրջանի գրաֆիկը կազմելիս հաշվի առնել բոլոր հնարավորությունները և կազմել ճիշտ, բանվորներին ու ինժեներա-տեխնիկական աշխատողներին մոբիլիզացնող պլաններ։

Երբ ձեռնարկությունը ռիթմիկ է աշխատում, նրա արտադրական բոլոր օղակներում արտադրական կարողություններն ու աշխատաժամանակը ռացիոնալ են օգտագործվում և միավոր ժամանակի ընթացքում թողարկվում է ավելի շատ արտադրանք, այսինքն՝ աշխատանքի արտադրողականությունը բարձր է լինում։ Եվ, ընդհակառակն, եթե գործարանի որևէ օղակում աշխատանքը ոչ ռիթմիկ է, ապա դա խախտում է տվյալ օղակի հետ կապված մնացած բոլոր օղակների ռիթմիկությունը և դրանով իսկ տեղի է տալիս արտադրական կարողությունների ու բանվորական ուժի աշխատաժամանակի ոչ ռացիոնալ օգտագործման և պարապուրդների, բարձրանում է արտադրանքի ինքնարժեքը, թուլանում է աշխատանքային կարգապահությունը։ Ձեռնարկության որևէ օղակի ոչ ռիթմիկ աշխատանքը խախտում է արտադրանքի թողարկման հավասարաչափությունը, իսկ այդ ազդում է տվյալ ձեռնարկությունների հետ արտադրապես կապված մյուս ձեռնարկությունների աշխատանքների վրա։

Ահա թե ինչու Կոմունիստական պարտիայի Կենտկոմը և Սովետական կառավարությունը միշտ էլ դնում են ձեռնարկությունների ռիթմիկ աշխատանքի, արտադրանքի թողարկման հավասարաչափությունն ապահովելու անհրաժեշտությունը։ Այդ անհրաժեշտությունն ավելի ու ավելի է բարձրանում, ինչպես արդեն նշվեց, սոցիալիստական էկոնոմիկայում հասարակական աշխատանքի

digitised by A.R.A.R.@

բաժանման խորացմանը և մասնագիտացված ձեռնարկությունների ավելանալուն զուգընթաց։

Արտադրության միջոցների հանրային սոցիալիստական սեփականությունը, ի տարբերություն կապիտալիստական մասնավոր սեփականության, ապահովում է բոլոր ձեռնարկությունների ռիթմիկ աշխատանքը։ Սոցիալիստական հանրային սեփականությունը հնարավորություն է տալիս, ելնելով պլանաչափ (համամասնական) զարգացման տնտեսական օրենքի օբյեկտիվ պահանջներից, ճշտորեն պլանավորել ինչպես ամբողջ ժողովրդական տնտեսությունը, այնպես էլ ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերը, իսկ ճյուղերի ներսում՝ նրա տարբեր օղակները։ Այս հնարավորություն է տալիս ձեռնարկությունների միջև կատարել նյութական ու ֆինանսական միջոցների ճիշտ բաշխում և սահմանել որոշակի կարգ արտադրապես կապված ձեռնարկությունների նորմալ գործունեությունն ապահովելու համար։ Սակայն դա այն օբյեկտիվ հնարավորությունն է, որ պետք է լավագույն և բանիմաց ձևով օգտագործվի ձեռնարկությունների աշխատողների և վերադաս օրգանների կողմից։ Բայց միշտ չէ, որ այդ օբյեկտիվ հնարավորությունը կարողանում են օգտագործել առանձին ձեռնարկություններ և վերադաս օրգաններ։

Այսպես, առանձին ձեռնարկություններում, չնայած ամբողջ գործարանի մասշտաբով կատարվում են համախառն արտադրանքի թողարկման պլանները, բայց չի պահպանվում աշխատանքային ռիթմը, ամսվա սկզբի օրերին լավ չեն օգտագործվում արտադրական կարողություններն ու բանվորական ուժը, իսկ վերջին օրերին «գրոհի» միջոցով կատարում են արտադրական պլանները։

Ավտոպահեստամասերի գործարանում 1957 թվականի առաջին կիսամյակում մի շարք ներարտադրական ռեզերվներ հայտաբերելու և խելացիորեն օգտագործելու միջոցով հնարավոր եղավ 1956 թ. համեմատությամբ բարձրացնել թե՛ աշխատանքի արտադրողականությունը և թե՛ պլանների կատարման տոկոսը։ Բայց ձեռնարկությունը դեռևս աշխատում է ոչ ռիթմիկ և արտադրանքի թողարկումն անհամաչափ է։ Այդ է ցույց տալիս գործարանի ավտոպահեստամասերի արտադրանքի 1957 թ. առաջին կիսամյակի թողարկման պլանային առաջադրանքների կատարողականն ըստ տասնօրյակների և ըստ օրերի։ Բերենք միայն տասնօրյակների կատարողականը։

Ավտոպահեստամասերի գործարանի ավտոմասերի 1957 թվականի առաջին կիսամյակի ապրանքային արտադրանքի թողարկման պլանների կատարողականն ըստ տասնօրյակների.

| Տասնօրյակներ | Հունվար | Փետրվար | Մարտ | Ապրիլ | Մայիս | Հունիս |
|---|---|---|---|---|---|---|
| Առաջին | 56.4 | 56,4 | 60,7 | 67,2 | 30,1 | 35,7 |
| Երկրորդ | 85,0 | 94,7 | 114,5 | 78,4 | 76,0 | 81,2 |
| Երրորդ | 152,4 | 96,1 | 99,4 | 152,0 | 133,0 | 118,0 |

Այստեղ արտադրանքի հավասարաչափ թողարկում գոյություն չունի։ Պլաններն առաջին և երկրորդ տասնօրյակներում միշտ էլ թերակատարվում են։ Որպեսզի վիճակն ավելի պարզ լինի, տեսնենք ինչպիսին է ըստ տասնօրյակների թողարկված արտադրանքի տեսակարար կշիռն ամսվա թողարկած արտադրանքի մեջ։ Այդ է ցույց տալիս հետևյալ աղյուսակը.



| Տասնօրյակներ | Հունվար | Փետրվար | Մարտ | Ապրիլ | Մայիս | Հունիս |
|---|---|---|---|---|---|---|
| Առաջին | 14,9 | 23,3 | 20.2 | 24,0 | 9,8 | 14,2 |
| Երկրորդ | 25,3 | 42,5 | 42,7 | 28,0 | 28,4 | 37,6 |
| Երրորդ | 59,8 | 34,2 | 37,1 | 48,0 | 61,8 | 48,2 |
| Ընդամենը | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 |

Ինչպես աղյուսակն է ցույց տալիս, ավտոպահեստամասերի թողարկման պլանը կատարվել է ոչ թե բոլոր տասնօրյակներում հավասարապես, այլև I տասնօրյակում արտադրական կարողությունները և բանվորական ուժը ռացիոնալ չեն օգտագործվել, իսկ III տասնօրյակում, ընդհակառակն, ստեղծվել է լարում վիճակ և գրոհի միջոցով պլանները գերակատարվել են։

Աշխատանքի նման բնույթի հիմնական պատճառը նյութա-տեխնիկական մատակարարումների վատ կազմակերպումն է, հիմնական և օժանդակ նյութերի համապատասխան պաշարների բացակայությունը։ Այս բացատրվում է ինչպես ձեռնարկության, այնպես էլ վերադաս օղակների անբավարար աշխատանքով։

Ո՛չ միայն ավտոպահեստամասերի, այլև Երևանի շատ ձեռնարկություններում աշխատանքային ռիթմը հաճախ խախտվում է նյութա-տեխնիկական անբավարար մատակարարման պատճառով։

Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը կապված է Սովետական Միության 55 քաղաքների հետ, որոնցից ստանում է մոտ 1038 տեսակի հիմնական և մեծ քանակությամբ օժանդակ նյութեր։ Պարզ է, որ գործարանի աշխատանքները և արտադրական կարողությունների օգտագործման մակարդակը շատ բանով կախված կլինեն նյութա-տեխնիկական մատակարարման աստիճանից։

Նյութա-տեխնիկական վատ մատակարարման պատճառով 1956 թվականին գործարանի առանձին ցեխերում ցածր է եղել արտադրական կարողությունների օգտակար գործողության գործակիցը, խախտվել է պատրաստի արտադրանքի թողարկման ռիթմը։

Ահա թե ինչպիսին է եղել էլեկտրամեքենաշինական գործարանի 1956 թվականի երկրորդ կիսամյակում հավաքման ցեխերի յուրաքանչյուր տասնօրյակում թողարկած արտադրանքի տեսակարար կշիռն ամսական արտադրանքի մեջ։

| Տասնօրյակներ | Հուլիս | Օգոստոս | Սեպտեմբեր | Հոկտեմբեր | Նոյեմբեր | Դեկտեմբեր |
|---|---|---|---|---|---|---|
| Առաջին | 8,6 | 14,7 | 6,7 | 16,8 | 9,6 | 8,6 |
| Երկրորդ | 27,0 | 16,9 | 20,7 | 27,5 | 24.6 | 21,9 |
| Երրորդ | 64,4 | 68,5 | 72,6 | 57,7 | 65,8 | 69,5 |
| Ընդամենը ամսվա ընթացքում | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 |

Բանն այն է, որ ամբողջ գործարանի մասշտաբով պլանները կատարվում են։ Բայց իրականում այստեղ ռիթմիկ, համաչափ աշխատանքի մասին խոսք անգամ լինել չի կարող։ Այստեղ տասնօրյակների թողարկած

digitised by A.R.A.R.@

արտադրանքի չափի մեջ չկա կապ, օրինաչափություն, չկա ռիթմ։ Ուշագրավն այն է, որ բոլոր ամիսներում էլ արտադրանքի գերակշռող մասը թողարկվում է III տասնօրյակում, միայն այդ տասնօրյակում ավելի շատ արտադրանք է թողարկվում, քան I և II տասնօրյակներում միասին վերցրած։ I և, մասամբ, II տասնօրյակներում մշակման ցեխերից չստանալով համապատասխան արտադրանք, հավաքման ցեխերի կարողությունները մնում են թերբեռնված և նորմալ ծանրաբեռնվածությամբ չեն աշխատում, իսկ III տասնօրյակում ծանրաբեռնվում են արտադրական կարողությունները։ Մշակման ցեխերից դետալները հավաքման ցեխեր մուտք են գործում ուշացումներով։

Էլեկտրամեքենաշինական, ինչպես և այլ գործարանների 1956 թ. աշխատանքային ռիթմի խախտվելու հիմնական պատճառը նյութա-տեխնիկական անհամաչափ մատակարարումն է։

Ձեռնարկություններին անհրաժեշտ նյութերով մատակարարելու անբավարար վիճակը, որը բացահայտվեց ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1957 թվականի Փետրվարյան պլենումում, հետևանք էր արդյունաբերության արդեն հնացած ճյուղային, գերատեսչական կառավարման։ Նախկին խիստ կենտրոնացված պլանավորումը հնարավորություն չէր տալիս բավարարելու ձեռնարկությունների պահանջները անհրաժեշտ հումքով ու նյութերով։

1957 թվականի մայիսին ՍՍՌՄ Գերագույն Սովետի VII սեսիայում ընդունվեց Օրենք արդյունաբերության և շինարարության կառավարումը տերիտորիալ սկզբունքներով տնտեսական վարչական շրջանների հիման վրա իրականացնելու համար։

Արդյունաբերության և շինարարության կառավարման համար յուրաքանչյուր տնտեսական վարչական շրջանում ստեղծված ժողովրդական տնտեսության խորհուրդները, իրականացնելով արդյունաբերության և շինարարության տերիտորիալ կառավարումը, կարող են իրենց տերիտորիայում գտնվող բոլոր ձեռնարկությունների հնարավորություններն ու պահանջները մանրազնին ուսումնասիրելու միջոցով կազմակերպել նրանց անխափան աշխատանքը։ Այժմ արդեն հնարավորություն է ստեղծվում ինչպես Հայաստանի, այնպես էլ Երևանի տերիտորիայում գտնվող շատ ձեռնարկությունների կոոպերացման համար։ Այդ մի կողմից հնարավորություն կտա բարելավելու ինչպես նյութատեխնիկական մատակարարման և ձեռնարկությունների ռիթմիկ աշխատանքն ապահովելու գործը, այնպես էլ նվազեցնելու երկրի հեռավոր վայրերից կատարվող փոխադրումները, պակասեցնելու տրանսպորտային ծախսերը և իջեցնելու միավոր արտադրանքի ինքնարժեքը։

Սոցիալիզմի պայմաններում, երբ արտադրության միջոցները հանրային սոցիալիստական սեփականություն են, կան օբյեկտիվ բոլոր պայմանները ձեռնարկությունների ռիթմիկ և համաչափ աշխատանքն ապահովելու համար, միայն հարկավոր է այդ ռեալ պայմանների հաշվառման հիման վրա աշխատանքների ճկուն և լավ կազմակերպում։

---

# ՆՈՐ ՈՒ ԱՎԵԼԻ ՄԵԾ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## Գ. ԱԼԵՔՅԱՆ

Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը բազմիցս նշում էր, որ երբ որոշված է պարտիայի քաղաքականությունը, նրա հաջողությունը պայմանավորված է պարտիական-կազմակերպական աշխատանքով։ Անշեղորեն կենսագործելով Վ. Ի. Լենինի ցուցումը, մեր պարտիան իր գործունեության բոլոր ժամանակաշրջաններում խոշոր տեղ է տվել մասսաների մեջ կատարվող պարտիական-կազմակերպական, ագիտացիոն-մասսայական աշխատանքներին։

Պարտիայի հերոսական պատմությունը ցույց է տալիս, թե կյանքում որքան վճռական նշանակություն ունի պարտիական-կազմակերպական, պարտիական-քաղաքական աշխատանքը, պարտիայի անդամների ու թեկնածուների անձնական օրինակը, պարտիական կյանքի լենինյան նորմերի անշեղ պահպանումն ու կիրառումը, որին պարտիայի XX համագումարն առանձնահատուկ ուշադրություն նվիրեց։

Մարտունու շրջանի պարտիական կազմակերպություններն իրենց աշխատանքի հիմքում դնելով XX համագումարի պատմական որոշումները, մի շարք քաղաքագործնական միջոցներ ձեռնարկեցին մասսաների մեջ կատարվող քաղաքական ու կազմակերպական աշխատանքը բարելավելու և նրանց մոբիլիզացնելու՝ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու վերաբերյալ պարտիայի դիրեկտիվները պատվով կատարելու համար։ Հաշվի առնելով, որ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման ու անասնաբուծության զարգացման համար շրջանն ունի բարենպաստ պայմաններ, հողային ու ոռոգման լայն ռեզերվներ, պարտիական կազմակերպություններն իրենց ամբողջ ուշադրությունը բևեռեցին այն բանի վրա, որպեսզի խելացիորեն օգտագործվեն եղած պայմաններն ու ռեզերվները, որոնք հնարավորություն կտան ամբողջապես վերցրած շրջանի և շատ կոլտնտեսությունների տևականորեն ետ մնալը հաղթահարելու և առաջավորներին հավասարվելու համար։ Պարտիայի շրջանային կոմիտեի, պարտիական կազմակերպությունների, սովետական ու գյուղատնտեսական օրգանների առաջնակարգ խնդիրը դարձավ կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպման բարելավումը, հանրային տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարության ուժեղացումը և, որը գլխավորն է, պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կատարման համար, կոլտնտեսությունների, դաշտավարական բրիգադների ու անասնապահական ֆերմաների վիճակի համար բոլոր կոմունիստների և ղեկավար աշխատողների դերի ու պատասխանատվության բարձրացումը։

Մեծ Լենինը սովորեցնում էր, որ կոմունիստը նոր հասարակարգի կա-

digitised by A.R.A.R.@

*ռուցման առաջավոր մարտիկն է: Ինչպիսի պոստում էլ լինի պարտիայի անդամը, ինչպիսի աշխատանք էլ որ նա կատարի, պարտավոր է պայքարել պարտիայի քաղաքականությունը կյանքում կենսագործելու համար, իր ամբողջ ուժերը և գիտելիքները նվիրել սոցիալիստական շինարարության գործին, մեր մեծ Հայրենիքի ամրապնդման գործին: Ահա թե ինչու պարտիան իր բոլոր անդամներից մշտապես պահանջել և պահանջում է աշխատանքում օրինակ ցույց տալ անկուսակցականներին և նրանց գլուխն անցած ապահովել առաջադրված պլանների կատարումն ու գերակատարումը:*

*Որպեսզի կոմունիստները կարողանան արտադրության մեջ ապահովել իրենց ավանգարդային դերը և բարձր հիմքերի վրա դնեն աշխատանքի կազմակերպումը, անհրաժեշտ է ճիշտ դասավորել նրանց ուժերը, հաշվի առնել յուրաքանչյուրի կարողությունը, գիտելիքներն ու կազմակերպական ընդունակությունը: Հենց այդ էլ նկատի ունենալով, պարտիայի Մարտունու շրջկոմն ու սկզբնական կազմակերպությունները լրջորեն զբաղվեցին արտադրության մեջ կոմունիստների ուժերը ճիշտ դասավորելու հարցով և հասան այն բանին, որ շատ ու շատ կոմունիստներ աշխատանքի անցան կոլտնտեսային արտադրության վճռական տեղամասերում: 1957 թվականին ավելի քան 200 կոմունիստ շարքային աշխատանքի ուղարկվեցին դաշտավարական բրիգադաներում և անասնապահական ֆերմաներում, որոնց ճնշող մեծամասնությունը արտադրության մեջ ապահովեց իր ավանգարդային դերը: Արտադրության մեջ կոմունիստների թվի ավելացումը հնարավորություն տվեց անասնապահական 13 ֆերմաներում և դաշտավարական ու տրակտորային 26 բրիգադաներում ստեղծելու պարտիական խմբեր, որոնք քաղաքական-մասսայական ամենօրյա լայն աշխատանք են կատարում աշխատավորների շրջանում:*

*Կոլտնտեսային արտադրության մեջ հիմնական օղակները բրիգադան ու ֆերման են, որոնց միջոցով ստեղծվում են նյութական բարիքներ: Այդ օղակներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու նպատակով պարտիայի շրջկոմը, սկզբնական կազմակերպություններն ու կոլտնտեսությունների վարչությունններն ուշադիր կերպով ուսումնասիրեցին դաշտավարական բրիգադաների և ֆերմաների վարիչների կազմը, ծանոթացան նրանց աշխատանքի արդյունքներին և 42 մարդու ազատեցին իրենց պարտականություններից, որոնք աշխատանքում իրենց չէին արդարացնում: Կոլտնտեսականները հավանություն տվին այդ միջոցառմանը. աշխատանքից ազատված մարդկանց փոխարեն առաջ քաշվեցին ընդունակ, գրագետ, աշխատասեր ընկերներ, որոնք անցած տնտեսական տարվա ընթացքում շատ ուժ և էներգիա գործադրեցին հանձնարարված գործը պատվով կատարելու, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը ավելացնելու համար: Մի շարք կոլտնտեսություններում կադրերն ըստ ազգակցական, բարեկամական, ընկերական կապերի ընտրելու սխալ և պարտիայի կողմից դատապարտված պրակտիկայի լիկվիդացումը լրջորեն բարձրացրեց նրանց պատասխանատվությունը կոլտնտեսային մասսաների առաջ և ապահովեց հանձնարարված գործի ժամանակին կատարումը:*

*Շրջանի աշխատավորները մտնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, պարտավորվել էին 1957 թվականին արտադրել 103 հազար*



*ցենտներ հացահատիկ, 56.200 ցենտներ կարտոֆիլ, 7250 ցենտներ ծխախոտ և 46 հազար ցենտներ կաթ:*

*Պարտիական կազմակերպությունների անմիջական օգնությամբ շրջանի բոլոր կոլտնտեսականներն ու ՄՏ կայանի մեխանիզատորները եռանդուն աշխատանքի անցան մրցությունում վերցրած պարտավորությունները, պետական բոլոր առաջադրանքները պատվով կատարելու համար: Նրանք հրաշալի նախաձեռնություն հանդես բերին եղած ռեզերվներն օգտագործելու, մեխանիզացիայի համար նոր տարածություններ ստեղծելու, դաշտերը պարարտացնելու, ցանքերը մշակելու և բերքահավաքը անկորուստ կատարելու ուղղությամբ:*

*1957 թվականին կոլտնտեսությունների և ՄՏ կայանի մեխանիզատորների միջոցով 5500 հեկտար հողամասից հավաքվեցին քարերը և 500 հեկտարի վրա վերացվեցին միչնակները: Արտերը պարարտացնելու նպատակով դաշտ տեղափոխվեցին 22 հազար տոննա օրգանական և ավելի քան 1200 տոննա հանքային պարարտանյութեր: Այդ և մյուս միջոցառումները հնարավորություն տվին ժամանակին և բարձր որակով կատարելու գարնանացանը, ցանքերի մշակումը, որի շնորհիվ էլ անցած տարի աճեց բարձր բերք: Այդպիսի տարիներ, իհարկե, Մարտունիում շատ են եղել, բայց բերքը ժամանակին չի հավաքվել և մնացել է ձյան տակ: Ուստի, հաշվի առնելով անցյալի փորձը, պարտիական կազմակերպությունները բերքահավաքի աշխատանքների կազմակերպումը վերցրին իրենց ձեռքը և, գլխավորելով կոլտնտեսականների և մեխանիզատորների ակտիվությունը, ապահովեցին բերքահավաքի հաջող ավարտումը:*

*Շրջանի կոլտնտեսությունները հացահատիկային կուլտուրաների ցանքատարածություններից ստացան 113,421 ցենտներ համախառն բերք, այսինքն՝ պլանային առաջադրանքը գերակատարեցին ավելի քան 10 հազար ցենտներով: 1956 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստացված 7,7 և 1957 թվականի պլանով նախատեսված 9,5 ցենտների դիմաց շրջանում ամեն մի հեկտարից միջին հաշվով ստացվեց 11,4 ցենտներ հացահատիկ, կամ համախառն բերքն ավելացավ 33,340 ցենտներով: Հացահատիկի բերքատվության բարձրացման գործում բարձր ցուցանիշների հասան Վարդենիկի, Ալիշալուի, Մարտունու, Ն. Գետաշենի, Ծակ-քարի և այլ կոլտնտեսություններ: Ալիշալուի կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացավ 13,2 ցենտներ, Վարդենիկի կոլտնտեսությունը՝ 13, Ծակ-քարի կոլտնտեսությունը՝ 12,4 ցենտներ հացահատիկ և այլն: Տասնյակ բրիգադներ հասան ավելի բարձր ցուցանիշների: Այսպես, օրինակ, Վարդենիկի կոլտնտեսության դաշտավարական № 2 բրիգադան, որի բրիգադավարն է ընկ. Սերյոժա Ջիրոյանը, ամբողջ ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարին միջին հաշվով ստացավ 18,1 ցենտներ բերք, Գաբրիել Մկրտչյանի բրիգադան (Ն. Գետաշենից)՝ 16,2 ցենտներ բերք և այլն:*

*Լավ բերք ստացվեց նաև կարտոֆիլի ցանքատարածություններից: 1956 թվականին ամեն մի հեկտարից ստացված 49,1 ցենտների և 1957 թվականի պլանով նախատեսված 90,7 ցենտների դիմաց 610 հեկտար ցանքատարածության ամեն մի հեկտարից միջին հաշվով ստացվեց 90,9 ցենտներ կարտոֆիլ, կամ համախառն բերքն ավելացավ 25,100 ցենտներով, որը կոլտնտեսություններին հնարավորություն տվեց պետական մթերումների պլանները կատարե-*

digitised by A.R.A.R.@

լուց հետո յուրաքանչյուր աշխօրին բաշխելու 1—2 կիլոգրամ, իսկ առանձին կոլտնտեսություններում (Մաղինա, Լեռնակերտ, Ն. Գետաշեն, Ալիչալու)՝ մինչև 4 կիլոգրամ կարտոֆիլ։

Զգալի հաջողություններ են ձեռք բերվել ծխախոտի բերքատվության բարձրացման գործում։ Բավական է ասել, որ 1956 թվականի յուրաքանչյուր հեկտարից ստացված 7,2 ցենտների դիմաց, 1957 թվականին ստացվեց 11,9 ցենտներ ծխախոտ, կամ 1956 թվականի 4424 ցենտներ համախառն բերքի դիմաց ստացվեց 6995 ցենտներ համախառն բերք, այն էլ այն դեպքում, երբ տեղի ունեցավ կրկնակի կարկտահարում և ցրտահարություն։ Ծխախոտի բերքատվության բարձրացման գործում աչքի ընկան Մաղինայի կոլտնտեսությունը, որն ամեն մի հեկտարից ստացավ 18, Վաղաշենի կոլտնտեսությունը՝ 17, Վարդենիկի և Ծովինարի կոլտնտեսությունները՝ 13,7, Մարտունու և Ղարանլուղի կոլտնտեսությունները՝ 12,8 ցենտներ միջին բերք։

Պարտիական կազմակերպությունները մի շարք միջոցառումներ անցկացրին նաև անասնաբուծության մթերքների արտադրությունն ավելացնելու մասին պարտիայի դիրեկտիվները կենսագործելու ուղղությամբ և հասան որոշակի հաջողությունների։ 1957 թվականի ընթացքում, նախորդ տարվա համեմատությամբ, կաթի արտադրությունը ավելացավ 5000 ցենտներով, իսկ ֆուրաժային մեկ կովի կաթնատվությունը՝ 225 կիլոգրամով։ Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման ասպարեզում ավելի բարձր արդյունքների հասան Վաղաշենի, Զոլաքարի, Ղարանլուղի, Ալիչալուի կոլտնտեսությունները, որոնք կաթի համախառն արտադրության տարեկան պլանը կատարեցին հոկտեմբեր ամսին։

Անասնաբուծության զարգացման ամենակարևոր պայմանը կերի կայուն բազայի ստեղծումն է։ Այդ ուղղությամբ նույնպես լարված աշխատանք կատարվեց, որի շնորհիվ 1957 թվականին գերակատարվեցին խոտի, ծղնոտի կուտակման և սիլոսի պատրաստման պլանները։

Բերքատվության բարձրացման և անասնաբուծության մթերքների արտադրության ավելացման շնորհիվ, մի կողմից շրջանը ժամկետից շուտ կատարեց և գերակատարեց հացահատիկի, կաթի, մսի, բրդի և ձվի մթերումների պետական առաջադրանքները և մյուս կողմից՝ զգալի չափով ավելացան կոլտնտեսությունների դրամական միջոցներն ու մեկ աշխօրին հասանելիք եկամուտը։

Ելնելով Հայաստանի Կոմունիստական պարտիայի XVIII համագումարի որոշումներից, շրջանային կոմիտեն իր ամենօրյա աշխատանքի ընթացքում հատուկ ուշադրություն նվիրեց և մի շարք միջոցառումներ անցկացրեց տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունները առաջավորների մակարդակին հասցնելու համար։ Մանրամասն ուսումնասիրելով Վ. Գետաշեն, Լիճք, Ծակքար, Երանոս և այլ գյուղերի կոլտնտեսությունների վիճակը և ետ մնալու պատճառները, շրջկոմը լսեց պարտիական կազմակերպությունների հաշվետվությունները և գործնական միջոցառումներ մշակեց բացահայտված սխալներն ու թերությունները լիկվիդացնելու, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու ուղղությամբ։ Ընդունված որոշումները կյանքում կենսագործելու համար ուժեղացվեց օպերատիվ և կոնկրետ ղեկավարությունը, վերոհիշյալ կոլտնտեսություններին ամրացվեցին շրջկոմի անդամներից, որոնք պարտիական կազմա-



կերպությունների հետ միասին զգալի աշխատանք կատարեցին հանրային տնտեսության զարգացման գործում։

Հաշվի առնելով պարտիայի այն ցուցումը, որ գործի հաջողությունը որոշում են կադրերը, կենդանի մարդիկ, շրջկոմը Ծակ-քարի պարտիական կազմակերպության և կոլտնտեսության վարչության հետ միասին վերանայեց ղեկավար կադրերը և նրանց օգնեց կոմունիստների ու կոմերիտականների ուժերը դասավորելու արտադրության զանազան ճյուղերում։ Աշխատանքում իրեն չարդարացրած բրիգադավար Կարապետ Ալեքսանյանը հեռացվեց գործից և նրա փոխարեն առաջադրվեց պարտիայի անդամ Հայկ Պողոսյանը։

Պարտիական կազմակերպության որոշմամբ 7 կոմունիստ ազատվեցին երկրորդական աշխատանքից և ուղարկվեցին արտադրության մեջ։ Դա հնարավորություն տվեց դաշտավարական 3 բրիգադներում և կովաբուծական ֆերմայում ստեղծելու պարտիական-կոմերիտական խմբակներ, որոնք զգալի աշխատանք կատարեցին կոլտնտեսականների շրջանում ագիտացիոն-մասսայական աշխատանքի կազմակերպման, սոցիալիստական մրցության ծավալման ու ստանձնած պարտավորությունները գործի վերածելու ուղղությամբ։

Լուրջ ուշադրություն նվիրվեց աշխատանքի կազմակերպման ու հաշվառման հարցերին. բրիգադավարները սկսեցին ժամանակին գրանցել կոլտնտեսականների աշխօրերը և կիրառել վարձատրման շահագրգռող միջոցներ։ Պարտիական կազմակերպության և կոլտնտեսության վարչության միասնական և համերաշխ աշխատանքի շնորհիվ ժամանակին կատարվեց գյուղատնտեսական կուլտուրաների ցանքը, մշակումը և բերքահավաքը։

Շնորհիվ կոլտնտեսականների եռանդուն աշխատանքի, կոլտնտեսությու-
նը դուրս եկավ իր նախկին վիճակից։ 1956 թվականի 4,5 ցենտների դիմաց
1957 թվականին ամեն մի հեկտարից ստացվեց 12,4 ցենտներ հացահատիկ,
25,2 ցենտներ կարտոֆիլի դիմաց՝ 80,8 ցենտներ և 4,2 ցենտներ ծխախոտի
դիմաց՝ 6,7 ցենտներ։ Եվ այս բոլորը այն դեպքում, երբ կրկնակի կար-
կտահարություն տեղի ունեցավ։ 1957 թվականի ընթացքում, նախորդ տար-
վա համեմատությամբ, կաթի համախառն արտադրությունն ավելացավ 90
ցենտներով, իսկ ֆուրաժային մեկ կովի կաթնատվությունը՝ 225 կիլոգրամով։
Այս բոլորի շնորհիվ զգալի չափով ավելացավ կոլտնտեսության դրամական
եկամուտը և աշխօրերի արժեքը։ Կոլտնտեսականներն իրենց վաստակած ամեն
մի աշխօրի դիմաց ստացան 4 ռուբլի դրամ, 3 կգ. հացահատիկ, 40 գ. կա-
րագ, 60 գ. պանիր, 500 գ. կարտոֆիլ և այլ մթերքներ։

Պարտիական կազմակերպությունների օգնությամբ խոշոր հաջողություն-
ների հասան նաև Երանոսի, Լիճքի, Վ. Գետաշենի, Ղարանլուղի կոլտնտեսու-
թյունները։ Երանոսի կոլտնտեսությունում մեկ աշխօրին հասավ դրամ՝ 5
ռուբլի, հացահատիկ՝ 3 կգ., կարտոֆիլ՝ 9,5 կգ., կաղամբ՝ 1 կգ. և այլ մթերք-
ներ, Լիճք գյուղում 1956 թվականի համեմատությամբ հացահատիկի համա-
խառն արտադրությունը ավելացավ 3000 ցենտներով, կարտոֆիլինը՝ 1200 և
ծխախոտինը՝ 200 ցենտներով։

Հանրագումարի բերելով 1957 թվականի տնտեսական տարվա արդյունք-
ները, չի կարելի չնշել, որ հաջողություններն ավելի շատ կլինեին, եթե պար-
տիական կազմակերպությունները և կոլտնտեսությունների վարչությունները,
ՄՏ կայանը, շրջանային ղեկավար օրգանները կարողանային լավ կազմակեր-
պել ցանքերի մշակումը և առանձնապես բերքահավաքն ու հանրային ունեց-

digitised by A.R.A.R.@

վածքի պաշտպանությունը։ Գյուղատնտեսական կուլտուրաների մշակությունը և բերքահավաքը վատ կազմակերպելու հետևանքով Աղամխանի և Լենինակերտի կոլտնտեսությունները չկատարեցին հացահատիկի, Լիճքի, Ղարանլուղի, Մարտունու, Ծովինարի կոլտնտեսությունները՝ կարտոֆիլի, Երանոսի, Թաղագյուղի, Լիճքի, Ն. Գետաշենի, Աստղաձորի, Զոլաքարի և Ալիչալուի կոլտնտեսությունները՝ ծխախոտի բերքատվության պլանները։

Մի շարք պարտիական կազմակերպություններ չկարողացան հանձնարարված գործի համար բարձրացնել կադրերի և բոլոր կոմունիստների պատասխանատվությունը, դրա պատճառով էլ մենք ականատես եղանք աղաղակող թերությունների։ Բավական է ասել, որ բերքահավաքը ժամանակին չկատարելու հետևանքով Զոլաքարում սեպտեմբերի 15—20-ը հնձված 100 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացվեց մոտ 12,2 ցենտներ, իսկ հոկտեմբերի 15—20-ը հնձված 70 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից՝ 7,8 ցենտներ բերք։ Ղարանլուղում՝ սեպտեմբերի 10—30-ը հնձված 298 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 10,4 իսկ հոկտեմբերի 1—3-ը հնձված 186 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից՝ 7,2 ցենտներ բերք։ Շատ կոլտնտեսություններում չկազմակերպվեց հասկահավաք, խզում առաջացավ հնձի, տեղափոխման և կալսման միջև, կորուստներ եղան կալերում և փոխադրումների ժամանակ։

Ծխախոտը ժամանակին չհավաքելու պատճառով բերքի մոտ 10—15 տոկոսը ցրտահարվեց։ Պարտիական կազմակերպությունների և կոլտնտեսությունների ղեկավարների թողտվության պատճառով կարտոֆիլի բերքահավաքը շատ կոլտնտեսություններում (Լիճք, Ծովինար, Աստղաձոր և այլն) անցավ անկազմակերպ, տեղի ունեցան բերքի զգալի կորուստներ և շռայլումներ։

Երբ վերլուծում ենք գյուղատնտեսության մեջ գոյություն ունեցող թերությունները և դրանց պատճառները, գալիս ենք այն եզրակացության, որ դրանց արմատները պարտիական կազմակերպությունների անբավարար աշխատանքի մեջ են, կոմունիստների անբավարար դաստիարակության և տնտեսության համար նրանց պատասխանատվության թուլության մեջ։

Պարտիական կազմակերպությունների աշխատանքի փորձը ցույց է տվել կոմունիստների ուժերը արտադրության վճռական տեղամասերում ճիշտ տեղաբաշխելու դրական արդյունքները։ Բայց, չնայած դրան, մի շարք պարտիական կազմակերպություններում առանձին կոմունիստներ խուսափում են արտադրության մեջ աշխատելուց, բոլոր ճանապարհներով ձգտում են հասնել պաշտոնների, իսկ պարտիական կազմակերպությունները լռությամբ են անցնում այդպիսի փաստերի կողքով և հաճախ էլ նրանց վերցնում են հովանավորության տակ։ Դրա հետևանքով, օրինակ, Ղարանլուղ գյուղի կոլտնտեսային պարտիական կազմակերպության 42 անդամից կոլտնտեսության մեջ շարքային աշխատանք են կատարում միայն 12-ը (որոնցից 5-ն էլ վաստակել են 60—120 աշխօր), Աղամխանի կոլտնտեսության պարտկազմակերպության 20 անդամից միայն 3-ը, Լիճքի 27 կոմունիստից՝ 10-ը, Աստղաձորի 32 կոմունիստից՝ 9-ը և այլն։ Ինչո՞վ բացատրել այդպիսի աննորմալ դրությունը, երբ կոմունիստների ուժերը ճիշտ չեն տեղաբաշխվում արտադրության մեջ։ Դա պետք է բացատրել նրանով, որ պարտիական որոշ կազմակերպություններ շեղումներ են կատարում պարտիայի դիրեկտիվներից, հանդես չեն բերում սկզբունքային մոտեցում այդ կարևոր հարցում և կոմունիստների, կադրերի



ուժերը դասավորելիս, հաշվի են առնում ո՛չ թե գործի, այլ անհատ մարդկանց շահերը։

Շուրջ չորս տարի Երանոսի կոլտնտեսության № 2 դաշտավարական բրիգադայի բրիգադավար էր աշխատում պարտանդամ Արշավիր Մնացականյանը։ Նրա ղեկավարած բրիգադան այդ ժամանակաշրջանում ոչ մի տարի չէր կատարել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության պլանային առաջադրանքները։ Սակայն ամեն տարի կադրերը վերանայելիս նա մնում էր իր պաշտոնում, որովհետև Մնացականյանը բարեկամական մոտիկ կապերով կապված էր կոլտնտեսության և պարտիական կազմակերպության ղեկավարների հետ, իսկ սկզբնական պարտիական կազմակերպությունը հանդուրժում էր այդ։

Վարդենիկի կոլտնտեսությունում դաշտավարական բրիգադայի բրիգադավար էր աշխատում Վ. Մուշեղյանը, որը կատարել էր աշխօրերի շռայլում, բայց պարտիական կազմակերպությունը ո՛չ միայն նրան չէր ենթարկել պատասխանատվության, այլև թողել էր իր պաշտոնում։ Աղամխան գյուղի կոլտնտեսության կովաբուծական ֆերմայի վարիչ Արտաշ Գրիգորյանը վերջին երկու տարվա ընթացքում չէր ապահովել կաթնատվության և հոտի գլխաքանակի աճման պլանների կատարումը, սակայն կոլտնտեսության ղեկավարները և պարտիական կազմակերպությունը համառ կերպով հովանավորում էին նրան, որպեսզի նա մնար իր աշխատանքում։

Պարտիայի շրջանային կոմիտեն վերանայելով կադրերի հարցը, չհաստատեց վերոհիշյալ մարդկանց իրենց աշխատանքում թողնելու մասին սկզբնական պարտիական կազմակերպությունների որոշումները և նշեց նրանց ոչ ճիշտ վերաբերմունքը կադրերի ընտրության և դաստիարակության գործում։

Քիչ չեն նաև այնպիսի դեպքերը, երբ պարտիական կազմակերպությունները արտադրությունից խուսափող կոմունիստների նկատմամբ հանդես են բերում ճիշտ մոտեցում, սակայն նրանք հրաժարվում են պարտկազմակերպությունների որոշումները կատարելուց և նույնիսկ բռնում են շանտաժի ու վարկաբեկման ուղին։ Այսպես, օրինակ, Ծակ-քարի սկզբնական պարտիական կազմակերպությունը կոլտնտեսությունը տևականորեն ետ մնալու վիճակից հանելու նպատակով վերանայում է կադրերը և որոշում է ընդունում պարտիայի անդամ Հ. Պողոսյանին, որն աշխատում էր որպես գնորդ, առաջադրել դաշտավարական բրիգադայի բրիգադավար։ Սակայն նա ո՛չ միայն չի կատարում պարտկազմակերպության որոշումը, այլև վիրավորվում է, որ հաշվի չեն առնում իր ցանկությունը։ Միայն այն բանից հետո, երբ շրջանային կոմիտեն որոշեց պարտիական կարգապահությունը խախտելու համար Պողոսյանին ենթարկել խիստ պատասխանատվության, նա ընդունեց իր սխալը և խոստացավ պրակտիկ աշխատանքում իրեն արդարացնել։

Լիճքի պարտկազմակերպության անդամներ Հ. Գալստյանը, Ա. Մարտոյանը, Գ. Գևորգյանը, Ս. Մնացականյանը չկատարեցին աշխօրերի պարտադիր մինիմումը, իսկ պարտիական կազմակերպությունը մինչև հիմա էլ չի քննարկել նրանց հարցը և միջոցառումներ չի ձեռնարկել, որպեսզի արտադրության մեջ ապահովի բոլոր կոմունիստների ակտիվ մասնակցությունը։

Պարտիան պահանջում է ուշադիր կերպով ունկնդրել կոմունիստների ձայնին, պահանջներին և հարգել պարտիայի Կանոնադրությամբ նրանց տրված իրավունքները։ Սակայն շատ տեղերում դաստիարակությունը սխալ կազ-

digitised by A.R.A.R.@

մակերպելու հետևանքով որոշ կոմունիստներ իմանում են միայն իրենց իրավունքները, իսկ այն խոշոր պարտականությունները, որ դրված են իրենց վրա, մոռանում են։

Առանձին կոմունիստներ անձնական նեղ շահերը բարձր դասելով համապարտիական շահերից, խանգարում են պարտիական կազմակերպությունների նորմալ աշխատանքը և չեն կատարում պարտիայի Կանոնադրությամբ սահմանված պարտականությունները։ Այդպիսի արարքների համար պարտիական կազմակերպությունների և շրջանային կոմիտեի բյուրոյի կողմից մի շարք կոմունիստներ ենթարկվեցին պարտիական պատասխանատվության, իսկ Երանոս գյուղի կազմակերպության անդամներ Ա. Շահինյանը, Ն. Հայրապետյանը, Ծակ-քարի պարտկազմակերպությունից՝ Մ. Գալստյանը պարտիայի անդամությունից փոխադրվեցին թեկնածու՝ մեկ տարի ժամանակով։

Առանձին պարտիական կազմակերպություններ և պարտկազմակերպությունների քարտուղարներ լիբերալ մոտեցում են ցույց տալիս պարտիական կյանքի նորմերը խախտող կոմունիստների նկատմամբ, անհրաժեշտ գնահատական չեն տալիս նրանց արարքներին և սպասում են, որ հարցերը քննվեն միայն վերադաս օրգանների կողմից։ Ծովինարի կոլտնտեսության նախկին նախագահ Վ. Հակոբյանի թողտվության պատճառով տեղի են ունեցել հանրային ունեցվածքի վատնման, շռայլման, գյուղատնտեսական արտելի օրինակելի Կանոնադրության խախտման բազմաթիվ փաստեր։ Սկզբնական պարտիական կազմակերպությունը և նրա նախկին քարտուղար Ք. Գյուրջոյանը ո՛չ միայն ժամանակին չեն հսկել և կանխել թույլ տրված խախտումները, այլև նույնիսկ շրջկոմի կողմից այդպիսիք բացահայտվելուց հետո էլ հովանավորում էին մեղավորներին և ամեն կերպ փորձում նսեմացնել խախտումները։

Ջոլաքարի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունը բաղկացած է 57 հոգուց։ Թվում է, որ այդպիսի խոշոր կազմակերպությունը աչալուրջ կհետևի և կհսկի կոլտնտեսության գործերին, կպահպանի հանրային սեփականությունը, ժամանակին կբացահայտի և կուղղի թույլ տրվող սխալները։ Սակայն իրականում այդպես չի լինում։ Պարտիայի նախկին անդամ Վ. Ենգիբարյանը 1956 թվականին աշխատելով որպես գլխավոր հաշվապահի օգնական, կեղծել էր իր անձնական հաշվի գրանցումները, կոլտնտեսությունից յուրացրել էր գյուղատնտեսական մթերքներ և իր բարեկամներին գրանցել ավելի աշխօրեր։ Պարտիական կազմակերպությունը երկար ժամանակ, մինչև շրջկոմի միջամտությունը, չէր քննարկում այդ հարցը, բայց երբ քննարկեց, որոշեց Ենգիբարյանին հայտարարել նկատողություն։ Շրջկոմի բյուրոն չհաստատեց կազմակերպության որոշումը և Ենգիբարյանին վտարեց պարտիայի շարքերից։ Հարց է առաջանում, պարտիական կազմակերպությունը որևէ եզրակացություն հանե՞ց այդ փաստից, թե ոչ. կյանքը ցույց տվեց, որ ոչ։ Շատ չանցած, բերքահավաքի շրջանում, բրիգադավար Պետիկ Սաֆարյանը գործարքի մեջ մտնելով պահեստապետ Մ. Թամոյանի հետ, կեղծ օրդերներ էին կազմել՝ 40 ցենտներ հացահատիկ յուրացնելու համար։ Այդ հարցը պարտիական կազմակերպությունում քննելիս ընդունել են հետևյալ որոշումը. նկատի ունենալով, որ պարտիայի անդամ Պետիկ Սաֆարյանը ունի խիստ նկատողություն, հայտարարել զգուշացում, իսկ պարտանդամ Ա. Թամոյանին հայտարարել նկատողություն, որովհետև անցյալում ստացել է զգուշացում։

Կոմունիստների որոշ մասի մոտ գոյություն ունի բարեհոգություն, ան-



տարբերություն դեպի թերություններն ու խախտումները։ Մինչդեռ իսկական կոմունիստը պետք է ապրի արտադրության կյանքով, ծավալի սոցիալիստական մրցությունը, մշտապես միջոցներ գտնի արտադրությունը բարձրացնելու, եղած թերությունները վերացնելու համար։ Որտեղ էլ որ աշխատի կոմունիստը, միևնույն է, նա իրավունք չունի լռությամբ անցնել թերությունների կողքով։ Ժողովրդի շահերը, պետության շահերը կոմունիստի համար պետք է լինեն սրբություն, բարձրագույն օրենք, և նա պետք է համառ, հետևողական պայքար տանի օրենքների խախտման դեմ։ Դժբախտաբար կան առանձին կոմունիստներ, որոնք փոխանակ ազնվորեն աշխատելու, միշտ հիշեցնում են իրենց նախկին ծառայությունները, կարծելով, թե դա իրենց իրավունք է վերապահում խախտելու վերադաս օրգանների որոշումները, լրիվ չկատարելու կանոնադրական իր պարտականությունները։

Պարտիական կազմակերպությունների կողմից տարվող քաղաքական-դաստիարակչական անբավարար աշխատանքը շատ հաճախ հասցնում է այն բանին, որ առանձին կոմունիստների և անպարտիականների մոտ հանդես են գալիս մանրբուրժուական, էգոիստական տրամադրություններ։ Այդ կարգի մարդկանց չի հետաքրքրում պարտիայի և ժողովրդի շահը, հասարակական հանրօգուտ աշխատանքը, շրջանի, գյուղի պատիվը։ Վարդենիկ գյուղի պարտկազմակերպության անդամ Համազասպ Ալոյանը բարվոք է համարել զբաղվելու իր անձնական կարտոֆիլի վաճառքով, քան ներկա լինելու պարտկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովին, որտեղ քննարկում էին պարտկազմակերպության և կոլտնտեսության կյանքի հետ կապված շատ կարևոր ու հրատապ հարցեր։ Վ. Գետաշենի կոլտնտեսային պարտկազմակերպության անդամներից ստեղծվում է հանձնաժողով, որպեսզի պաշտպանեն կոլտնտեսության բերքը, սակայն հենց իրենք՝ հանձնաժողովի անդամները գիշերը յուրացնում են այն և բռնվում հանցանքի մեջ։ Կամ կարիերիզմը այնքան էր զարգացել Ն. Գետաշենի կոլտնտեսության նախագահի նախկին տեղակալ և պարտկազմակերպության բյուրոյի նախկին քարտուղար Մ. Սուքիասյանի մոտ, որ չէր բավարարվում իր պաշտոններով և զանազան ձևերով ձգտում էր դառնալ կոլտնտեսության վարչության նախագահ։ Նկատվում են նաև այնպիսի դեպքեր, երբ որոշ ղեկավար աշխատողներ պարտիայի և կառավարության որոշումները մինչև վերջ կենսագործելու, կադրերի, կոմունիստների դաստիարակությունը ճիշտ կազմակերպելու գործում ո՛չ միայն հանդես չեն բերում հետևողականություն, այլ հենց իրենք են հովանավորում խախտումներ թույլ տվողներին և դրանով իսկ պայմաններ ստեղծում խախտումները խորացնելու ու չարաշահումները շարունակելու համար։ Օրինակ, Մաղինա գյուղի պարտկազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը խոտի գողացման փաստը ստուգելու համար ստեղծում են հանձնաժողով, որի մեջ մտնում են՝ Ավագ Մուրադյանը, Վահան Տարախչյանը և Կոլյա Մնացականյանը։ Հանձնաժողովը արձանագրություն է կազմում խոտի գողացման համար և այն ներկայացնում միլիցիայի բաժանմունքին՝ մեղավորներին քրեական պատասխանատվության ենթարկելու։ Սակայն, երբ սկսվում է գործի իսկական քննությունը, հանձնաժողովի անդամները հրաժարվում են իրենց ցուցմունքից և մեղադրյալներին վերցնում պաշտպանության տակ։

Ջոլաքարի կոլտնտեսության վարչության ղեկավարները ավելի հեռու են անցել։ Նրանք տեղեկանք են տվել մի ոմն կոլտնտեսականի, որ «թույլատրր-

վում է իր սեփական բանջարանոցից ստացած դափնյա տերևը տեղափոխել Ռուսաստան վաճառելու։

Սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է ճիշտ կազմակերպեն կոմունիստների, մեր բոլոր կադրերի դաստիարակությունը, ամեն կերպ բարձրացնեն նրանց պատասխանատվությունը տնտեսության վիճակի, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար։ Պարտիական կազմակերպությունները պետք է լիակատար պատասխանատվություն կրեն կոմունիստների դաստիարակության և աշխատանքի համար։ Անհրաժեշտ է կոմունիստներին դաստիարակել թերությունների նկատմամբ անհաշտ վերաբերմունքի ոգով, միշտ հիշելով, որ սկզբունքային գիծը միակ ճիշտ գիծն է, և մարդիկ ընդունվում են Կոմունիստական պարտիայի շարքերը ո՛չ թե անձնական շահերի, այլ մեծ նպատակի համար, կոմունիստական հասարակարգի կառուցմանը մինչև վերջ նվիրված լինելու համար։

Անհրաժեշտ է պարտիական կազմակերպական ամբողջ աշխատանքը ուղղել տնտեսության բոլոր օղակներում կարգապահությունն ամրապնդելու, պլանային առաջադրանքները լրիվ կատարելու համար։ Իրականացնելով կոլտնտեսությունների վարչությունների գործունեության նկատմամբ իրենց վերահսկողության ֆունկցիան, կոլտնտեսային պարտիական կազմակերպությունները պարտավոր են քաղաքական ու կազմակերպական աշխատանքի բոլոր ձևերով ու մեթոդներով ապահովել իրենց ազդեցությունը կոլտնտեսությունների գործերի վրա, գյուղական աշխատավորներին ոգևորեն ու կազմակերպեն նորանոր հաջողություններ ձեռք բերելու համար։ Անհրաժեշտ է մշտապես հիշել, որ չի կարելի լավ հսկողություն սահմանել տնտեսության նկատմամբ, վատ կազմակերպելով դաստիարակչական աշխատանքը, հոգ չտանելով կոմունիստների գաղափարական-քաղաքական մակարդակը բարձրացնելու մասին։

Առաջավոր պարտիական կազմակերպությունների փորձը ցույց է տալիս, որ միայն այն ժամանակ է հնարավոր ուժեղ հսկողություն սահմանել կոլտնտեսությունների գործերի վրա, երբ կոմունիստները գործում են համերաշխ, հանդես են բերում նախաձեռնություն, պայքարում են թերությունների դեմ և անձնական օրինակով իրենց հետևից տանում են անպարտիականներին։

Տնտեսական հաջողությունների պայմանը պարտիական-քաղաքական աշխատանքն է։ Պարտիական կազմակերպությունների առաջնահերթ պարտականությունն է՝ բարձրացնել քաղաքական աշխատանքի մակարդակը, իրենց ազդեցությունն ամեն կերպ տարածել աշխատավորների վրա, ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի միջոցով նրանց մշտապես պարզաբանել պարտիայի քաղաքականությունը և աշխատավորներին համախմբել՝ պատվով կատարելու ՍՄԿՊ XX համագումարի առաջադրած խնդիրները։

Մարտունու շրջանի պարտիական կազմակերպությունները պետք է բոլոր աշխատավորների ուժերը մոբիլիզացնեն՝ 1958 թվականը գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման վճռական տարի դարձնելու և դրանով իսկ օգնելու մեր սոցիալիստական Հայրենիքին՝ կոմունիզմի կառուցման մեծ գործում։

---

# ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ ՇԱՄՇԱԴԻՆՈՒՄ

*Ա. ՓՈԼԱԴՅԱՆ*

ՀԿՊ Կենտկոմի 1955 թվականի Նոյեմբերյան պլենումը որոշել է ռեսպուբլիկայի հյուսիս-արևելյան շրջաններում ընդարձակել այգիների տարածությունը և դրանք դարձնել ռեսպուբլիկայի այգեգործության երկրորդ բազան։

Շամշադինի հողակլիմայական պայմանները մեծ հնարավորություն են տալիս տարեցտարի ընդարձակելու խաղողի և պտղատու այգիների տարածությունը, բարձրացնելու դրանց բերքատվությունը։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ շրջանում մշակվող խաղողի տարբեր սորտերից ստացվում են սեղանի բարձրորակ գինիներ, որոնք առատ հումք են հանդիսանում շամպայն գինու արտադրության համար։

Շամշադինում կլիման ավելի մեղմ է, և ձմեռը վազերը չեն թաղվում։ Դրա առավելությունն այն է, որ այգիների միջշարային մշակությունը, վարը, պարարտացումը, փորը և մյուս աշխատանքները կարելի է կատարել ուշ աշնանը, նույնիսկ ձմռան ամիսներին, ինչպես նաև՝ վաղ գարնանը։ Իսկ այդ հնարավորություն է տալիս ավելի ռացիոնալ օգտագործելու բանվորական ուժն ու տեխնիկան։ Հաշվի առնելով, որ շրջանի կոլտնտեսությունների էկոնոմիկայում այգեգործությունը դառնում է առաջատար ու եկամտաբեր ճյուղերից մեկը, շրջանի պարտիական ու սովետական կազմակերպությունները, ՄՏՍ կայանն ու կոլտնտեսությունները մեծ աշխատանք են կատարում խաղողի և պտղատու այգիների տարածություններն ընդարձակելու և բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ։

Մինչև 1950 թվականը շրջանի կոլտնտեսություններում ընդամենը կային 76 հեկտար խաղողի և 142 հեկտար պտղատու այգիներ։ Եղած այգիներն էլ վատ մշակելու հետևանքով հեկտարից ստացվում էր 27 ցենտներ միջին բերք։ Խաղողագործությունն ու պտղաբուծությունն այդ վիճակում թողնելն աններելի էր։ Ուստի շրջանի պարտիական կազմակերպությունները, սովետական օրգաններն ու կոլտնտեսությունները կոնկրետ միջոցառումներ ձեռնարկեցին գյուղատնտեսության այդ ճյուղը զարգացնելու համար։

1951 թվականին շրջանի կոլտնտեսությունները տնկեցին 10 հեկտար խաղողի և 10 հեկտար պտղատու այգիներ, իսկ 1952 թվականին՝ 36 հեկտար խաղողի և 18 հեկտար պտղատու այգիներ։ Հետագա տարիներին խաղողի և պտղատու այգիների տարածությունը ընդարձակվեց ավելի լայն թափով։ Միայն 1957 թվականին շրջանի կոլտնտեսությունները տնկել են 60 հեկտար խաղողի և 18 հեկտար պտղատու այգիներ։ 1950 թվականի 76 հեկտար խաղողի և 142 հեկտար պտղատու այգու դիմաց շրջանի կոլտնտեսությունները 1957 թվակա-

digitised by A.R.A.R.@

նին արդեն ունեին 407 հեկտար խաղողի և 370 հեկտար պտղատու այգիներ:
Սա լուրջ առաջխաղացում է:

Չնայած այգեգործության զարգացման ուղղությամբ տեղի ունեցած որոշ
առաջընթացին, այնուամենայնիվ այգիների ընդարձակման տեմպը Շամշադի-
նում չէր կարելի բավարար համարել: Առանձին կոլտնտեսություններում շատ
դանդաղ էին ընդարձակվում այգետարածությունները, հոգ չէր տարվում տըն-
կիների սեփական տնտեսություն ունենալու, լավորակ փոփոխակներ աճեցնելու
և եղած այգիները ոռոգելի դարձնելու ուղղությամբ: Բավական է նշել, որ
մինչև 1955 թվականը շրջանի կոլտնտեսությունները խաղողի տնկիները ձեռք
էին բերում Նոյեմբերյանի շրջանից, Վրացական ու Ադրբեջանական ռեսպուբ-
լիկաներից, այդ նպատակի համար ծախսելով մեծ գումարներ: Հոգ չէր տար-
վում այգեգործական բրիգադները մասնագետներով ապահովելու մասին: Այս
բոլորի հետևանքով շատ ցածր էր այգեգործությունից ստացված եկամուտը:

Պարտիայի շրջանային Կոմիտեի բյուրոն մեծ նշանակություն տալով այ-
գեգործության զարգացմանը, նպատակահարմար գտավ այդ հարցը հատուկ
քննության առարկա դարձնել շրջանային կոմիտեի պլենումում: Գործարար
մթնոլորտում անցավ այգեգործության, որպես հեռանկարային կուլտուրայի
զարգացման, հարցի քննարկումը: Ինչպես զեկուցողը, այնպես էլ ելույթ ունե-
ցող ընկերները, ելնելով նախնական արդյունքներից, նշեցին այգեգործության
այն կարևոր դերը, որ կարող է խաղալ շրջանի էկոնոմիկայի զարգացման գոր-
ծում: Պարտիայի շրջկոմի պլենումը շրջանի պարտիական կազմակերպություն-
ներից, կոլտնտեսությունների վարչություններից պահանջեց ձեռնարկել բոլոր
միջոցառումները՝ այգեգործության զարգացման գործում եղած թերությունները
վերացնելու և խաղողի այգիների տարածությունը առաջին հերթին բարձրորակ
փոփոխակների հաշվին 1960 թվականին հասցնելու առնվազն 600 հեկտարի:
Պլենումը միաժամանակ պահանջեց նոր այգիներ տնկելիս հաշվի առնել մեքե-
նայական աշխատանքի հնարավորությունը, ստեղծել սեփական տնկարանա-
յին տնտեսություն, խնամքով մշակել խաղողի ու պտղատու այգիները:

Պարտիական կազմակերպություններն ու կոլտնտեսությունների վարչու-
թյունները միանգամայն ճիշտ վարվեցին, երբ ամենից առաջ մտահոգվեցին
այգեգործությունը մասնագետ և փորձառու կադրերով ապահովելու մասին:
Ձեռք առած միջոցառումների շնորհիվ շրջանի Չինարի, Այգեձոր, Դրղի, Զո-
րաթան, Մովսես, Վ. Կարմիրաղբյուր, Նորաշեն, Բերդ, Ծաղկավան գյուղերի կոլ-
տնտեսությունների այգեգործական բրիգադների բրիգադավարներ և օղակա-
վարներ առաջադրվեցին բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթու-
թյուն ունեցող ընկերներ: Կադրերի այդ ձևի դասավորումը մեծ չափով նպաստ-
եց այգեգործության բարելավմանը: Կոլտնտեսությունների վարչությունների
ուշադրության առարկա դարձավ սեփական տնկարանային տնտեսություն ստեղ-
ծելու հարցը: Այժմ շրջանի Մովսես, Դրղի, Զորաթան, Չինարի, Այգեձոր գյուղերի
կոլտնտեսություններն ունեն իրենց սեփական տնկարանային տնտեսություն-
ները, որոնցից լավ արդյունքներ են ստացվել: Բավական է ասել, որ 1956—
1957 թվականներին բոլոր կոլտնտեսությունները այգետնկման պլանը կատա-
րեցին սեփական տնկիներով:

Մեծ աշխատանք ծավալվեց ջրաշինարարության ուղղությամբ, որը խոշոր
չափով կնպաստի այգեգործության հետագա զարգացմանը. 1956—1957
թվականներին ջրատար խողովակների միջոցով Ծաղկավանգյուղից Պառավաքար



գյուղը ջրանցք անցկացվեց, որն ունի 10 կիլոմետր երկարություն և ոռոգում է
մոտ 200 հեկտար տարածություն: Երկարացվեց Բերդգեխ ջրանցքը, որի շնոր-
հիվ Թովուզի և Վ. Կարմիրաղբյուր կոլտնտեսությունների դաշտերից ու այգի-
ներից ոռոգելի դարձավ 250 հեկտար տարածություն: Այժմ ընթացքի մեջ է Դրղի,
Մովսես գյուղերի ցանքատարածությունների ոռոգման համար ջրանցքի շինա-
րարությունը, որը ոռոգելի կդարձնի մոտ 300 հեկտար տարածություն: Բերդ
գյուղի կոլտնտեսությունն իր ուժերով կառուցում է ջրանցք, որը կոռոգի ավելի
քան 100 հեկտար տարածություն: Մովսեսի, Չինարիի, Բերդի և մի շարք այլ
կոլտնտեսություններ կառուցում են ջրամբարներ:

Այգեգործության արագ զարգացումը պահանջում է մեքենայացնել նրա
աշխատատար պրոցեսները: Պետք է նշել, որ գյուղատնտեսության մեխանիզա-
տորները զգալի գործ են կատարել այդ ուղղությամբ: ՄՏ կայանի ունեցած տեխ-
նիկան հնարավորություն է տալիս զգալիորեն կրճատել ձեռքի աշխատան-
քը, մեքենայացնել այգիների մշակությունը: Օգտագործելով այդ հնարավորու-
թյունները՝ կոլտնտեսությունները նոր այգիներ տնկում են նախօրոք պլանա-
վորված և մեխանիզացիան օգտագործելու համար միանգամայն հարմար տա-
րածություններում: Այգիների մոտ 50 տոկոսի այգեփորը կատարվում է ՄՏ
կայանի մեքենաների միջոցով, որը ո՛չ միայն զգալի չափով թեթևացնում է կոլ-
տնտեսականների աշխատանքը, այլև լայնորեն նպաստում է բերքատվության
բարձրացմանը: Այգիների միջշարային մշակության գործում այժմ լայնորեն
օգտագործվում են նաև ձիաքարշ կուլտիվատորները: Այգեգործության մեջ մե-
խանիզացիայի լայն օգտագործման համար մեծ նշանակություն ունի նաև
տնկաշարքային սիստեմի կիրառումը: Այդ ուղղությամբ ևս շրջանի կոլտնտե-
սությունները զգալի աշխատանք են կատարել, որի շնորհիվ խաղողի այգիների
գրեթե 70 տոկոսը անց է կացված տնկաշարքի վրա:

Այգեգործության զարգացման և բերքատվության բարձրացման կարևոր
պայմաններից մեկն էլ խաղողի փոփոխակների ընտրությունն է: Հայկական
ՍՍՌ Այգեգործական, գինեգործական և պտղաբուծական ինստիտուտի կողմից
կատարված խաղողի փոփոխակների պատվաստակալների ուսումնասիրու-
թյունները ցույց տվին, որ ներմուծված մի շարք նոր փոփոխակներ, ինչպես՝
Ալիգոտեն և Կաբերնեն, շրջանի հողակլիմայական պայմաններում հիանալի
արդյունք են տալիս: Այդ փոփոխակների բերքից ստացվում են բարձր որակի
սեղանի գինիներ: Ալիգոտե խաղողի այգիների մեկ հեկտարի միջին բերքատվու-
թյունը տարբեր այգետարածություններում տատանվել է 70—220 ցենտների
միջև, իսկ Կաբերնեինը՝ 50—160 ցենտների միջև: Լավ արդյունք են տալիս
նաև շամպայնի գինիների հիմնական սորտեր համարվող Պինո սևը և Լալվարի
խաղողի փոփոխակները: Այժմ կոլտնտեսություններն առանձին ուշադրություն
են դարձնում բարձր բերքատու խաղողի փոփոխակների աճեցման վրա և
այգիները ընդարձակում են փոփոխակների պատվաստված տնկիներով:

Շամշադինի շրջանի հողակլիմայական պայմանները շատ նպաստավոր
են նաև պտղաբուծության զարգացման համար: Մեր պայմաններում հնարավոր
է մեկ հեկտարից ստանալ 100—150 ցենտներ միրգ: Հաշվի առնելով պտղա-
տու այգիների բարձր եկամտաբերությունը, շրջանի կոլտնտեսությունները
զգալի աշխատանք են կատարել նաև այդ ուղղությամբ: Բավական է նշել, որ
այժմ շրջանում եղած 370 հեկտար մրգատու այգիների տարածությունը 1965
թվականին կհասնի 1000 հեկտարի:

digitised by A.R.A.R.@

Խաղողի և պտղատու այգիների տարածությունների ընդարձակման հետ զուգընթաց կոլտնտեսականները ջանք չեն խնայում բերքատվության բարձրացման համար։ Կատարելագործելով այգեգործության աշխատանքի մեթոդներն ու ձևերը, արմատավորելով սովետական գիտության նվաճումները, ճիշտ կիրառելով ագրոկանոնները, այգեգործները տարեցտարի ավելացնում են խաղողի բերքատվությունը։ Այսպես, օրինակ, եթե 1950 թվականին շրջանում խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացվել է 27 ցենտներ բերք, ապա անցյալ տարի ստացվել է 107 ցենտներ։

Շրջանի առաջավոր կոլտնտեսությունները, բրիգադները, օղակները և առանձին կոլտնտեսականներ ավելի բարձր ցուցանիշների են հասել։ Այգեձորի կոլտնտեսությունը մեկ հեկտարից պլանով նախատեսված 80 ցենտների դիմաց ստացել է 190 ցենտներ խաղող, Ղրղիի կոլտնտեսությունը՝ 80-ի դիմաց 131 ցենտներ։ Այգեձոր գյուղի կոլտնտեսությունում կրտսեր ագրոնոմ Գուրգեն Միրզոյանի ղեկավարած օղակը յուրաքանչյուր հեկտարից պլանով նախատեսված 80 ցենտներ խաղողի դիմաց ստացել է 215 ցենտներ, նույն կոլտնտեսության Անդրանիկ Մարանդյանի ղեկավարած օղակը՝ 80 ցենտների դիմաց՝ 204 ցենտներ։ Ջինարիի կոլտնտեսությունում Մամիկոն Վանյանի ղեկավարած օղակը մեկ հեկտարից ստացել է 170 ցենտներ, Մովսես գյուղի կոլտնտեսության Աթաբեկ Անդրեասյանի օղակը՝ 136 ցենտներ խաղողի բերք և այլն։

Անցյալ տարիների համեմատությամբ զգալիորեն բարձրացել է պտղատու այգիների բերքատվությունը։ Զորաթան գյուղի Կամոյի անվան կոլտնտեսությունը 13,1 հեկտար պտղատու այգու յուրաքանչյուր հեկտարից պլանով նախատեսված 50 ցենտների դիմաց ստացել էր 76 ցենտներ, Ջինչինի կոլտնտեսությունը՝ 78 ցենտներ պտուղ։ Պտղի բարձր բերք են ստացել նաև Նորաշենի, Ծաղկավանի, Ղրղիի կոլտնտեսությունները։

Առաջավոր այգեգործական կոլտնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ այգեգործության զարգացումը կարելի է առաջ մղել միայն և միայն ագրոկանոնները ճիշտ կիրառելու, աշխատանքը օրինակելիորեն կազմակերպելու, ինչպես նաև կոլտնտեսականների անձնական շահագրգռվածությունը բարձրացնելու միջոցով։

Անցյալ տարիներին Շամշադինի շրջանում այգիները մշակվում էին խմբային ձևով, չէր կիրառվում անհատական գործարքը, խախտվում էր լրացուցիչ վարձատրության կարգը, որը շահագրգռվածություն չէր առաջացնում կոլտնտեսականների մեջ, որի հետևանքով էլ բերքատվությունը տարեցտարի բարձրանալու փոխարեն իջնում էր։ Շրջանային կոմիտեի խորհրդով 1956 թվականին կոլտնտեսություններում այգիներն ամրացվեցին առանձին կոլտնտեսականների և այգիների մշակության ու բերքահավաքի ընթացքում կիրառվեց անհատական գործավարձի սիստեմը։ Այդ հիման վրա էլ կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում կոլտնտեսությունների օրինակելի կանոնադրության մեջ կատարվեցին լրացումներ։ Կարգ սահմանվեց՝ պլանից ավելի ստացված խաղողի և մրգի 30—40 տոկոսը բաշխել բարձր բերք ապահովող այգեգործ կոլտնտեսականներին։ Վարձատրման այդ սիստեմը բարձրացրեց կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը, և նրանք կիրառելով ագրոկանոնները, աշխատում են ավելի առատ բերք ստանալ։

Անցյալում Շամշադինի շրջանում այգիները, այն էլ ոչ բոլորը, պարարտացվում էին միայն տեղական պարարտանյութով։ Այգեգործները համոզվե-



ցին, որ դա բավական չէ բարձր բերք ստանալու համար։ Ահա թե ինչու 1956 թ. աշնանը և 1957 թ. գարնանը նրանք այգեփորի հետ միասին այգետարածությունները պարարտացրին նաև հանքային պարարտանյութերով։

Բազմաթիվ օրինակներով կարելի է ցույց տալ, որ խաղողի բերքի զգալի մասը երբեմն փչանում ու կորչում է վնասատուների և հիվանդությունների դեմ ժամանակին ու վճռական պայքար չկազմակերպելու հետևանքով։ Հաշվի առնելով այդ, շրջանի կոլտնտեսություններն անցյալ տարի կազմակերպված պայքար տարան խաղողի վնասատուների դեմ, որի շնորհիվ բերքի կորուստն աննշան եղավ։

Վերջին ժամանակներս բարելավվել է նաև պտղատու այգիների մշակությունը։ Օրինակ, անցյալում պտղատու այգետարածություններում չէր կատարվում միջշարային մշակություն, առանձին կոլտնտեսություններ այգիներում ցանում էին հացահատիկային կուլտուրաներ, ծառերի շուրջը բաժակներ չէին փորվում և այգիները չէին ջրվում։ Իսկ այդ բոլորը բացասաբար էին ազդում բերքատվության վրա։ Ահա թե ինչու անցյալ տարի այգիներում հացահատիկային կուլտուրաների ցանքն արգելվեց, ավելի մեծ ուշադրություն հատկացվեց պարարտացման, միջշարային մշակության և ոռոգման վրա, որի շնորհիվ էլ ստացվեց մրգի լավ բերք։

Կոլտնտեսականների ազնիվ աշխատանքի և այգիների մշակությունը օրինակելի կերպով կազմակերպելու շնորհիվ 1957 թ. Շամշադինի շրջանում խաղողի և պտղատու այգիներից ստացվեց լավ բերք, որը հնարավորություն տվեց նախորդ տարիների համեմատությամբ ավելի շատ խաղող հանձնել պետությանը։ Եթե 1956 թվականին շրջանի կոլտնտեսությունները պետությանը հանձնել էին ընդամենը 2500 ցենտներ խաղող, ապա 1957 թվականին հանձնեցին 4400 ցենտներ, իսկ այս տարի նախատեսվում է հանձնել շուրջ 10.000 ցենտներ։

Այգիների տարածություններն ընդարձակելու և բերքատվությունը բարձրացնելու շնորհիվ մեծ չափով աճել է կոլտնտեսությունների եկամուտը։ Շրջանի կոլտնտեսությունները եթե 1952 թվականին միայն այգեգործությունից ստացել էին 700 հազար ռուբլի, ապա անցյալ տարի ստացան 9 միլիոն ռուբլի։ Կոլտնտեսությունների եկամտի աճման շնորհիվ զգալիորեն բարձրացավ նաև կոլտնտեսականների աշխօրերի արժեքը։ Բարձր բերք աճեցնելու համար շատ կոլտնտեսականներ, իբրև լրացուցիչ վարձատրություն, ստացան մեծ քանակությամբ խաղող և պտուղ։ Այսպես, 1957 թվականին շրջանում բարձր բերքի առաջավոր այգեգործ կոլտնտեսականներին տրվել է պարգև-հավելում՝ 1151 ցենտներ խաղող և 503 ցենտներ պտուղ։ Այգեձորի կոլտնտեսության Գուրգեն Միրզոյանի ղեկավարած օղակի անդամները որպես լրացուցիչ վարձատրություն ստացել են 8.200 կգ. խաղող, Վ. Կարմիրաղբյուրի կոլտնտեսության Գրիշա Մեսրոբյանի ղեկավարած օղակի անդամները՝ 1134 կգ., Մովսես գյուղի կոլտնտեսության այգեգործական բրիգադայի անդամները՝ 28.000 կգ. խաղող և այլն։

Շրջանի հողակլիմայական պայմանները հնարավորություն են տալիս աճեցնել նաև ցիտրուսային կուլտուրաներ, ձիթապտուղներ։ Այդ ուղղությամբ ևս զգալի աշխատանք է կատարվել։

Շամշադինի շրջանի պայմաններում մեծ հնարավորություններ կան նաև անջրդի այգիների ընդարձակման համար։ Երևանի Այգեգինեգործական ինս-

digitised by A.R.A.R.@

տիտուտը, 1947 թվականից սկսած, Վ. Կարմիրաղբյուր գյուղի անջրդի հողերում խաղողի փորձնական այգիներ է տնկել։ Արդյունքները ցույց են տալիս, որ ագրոտեխնիկայի միջոցառումների ամբողջ կոմպլեքսի կիրառման դեպքում վազը լավ է աճում և բարձր բերք է տալիս։ Այդ օրինակով անջրդի այգիներ են աճեցրել նաև Ն. Կարմիրաղբյուրի և Ղրղի կոլտնտեսությունները։

Այգիների ընդարձակման հարցով զբաղվում են նաև շրջանի բարձրադիր գյուղերի կոլտնտեսությունները, որոնք արդեն տնկել են խաղողի առաջին հեկտարները։ Նախնական փորձերը ցույց են տալիս, որ խաղողի համապատասխան փոփոխակներ ընտրելու և այգիները ճիշտ մշակելու դեպքում այդ գյուղերում նույնպես կարելի է զարգացնել խաղողագործությունը։

Խաղողագործության և պտղաբուծության բնագավառում Շամշադինում ձեռք բերած այս նախնական հաջողությունները հիմք չեն տալիս հանգստանալու։ Այդ բնագավառում շրջանում, նամանավանդ առանձին կոլտնտեսություններում դեռևս կան լուրջ թերություններ։ Այսպես, օրինակ, Ծաղկավան և Հախում գյուղերի կոլտնտեսությունները լայն հնարավորություններ ունեն այգեգործությունը զարգացնելու համար, մինչդեռ կոլտնտեսությունների վարչությունները ու պարտիական կազմակերպությունները չափազանց անբավարար են զբաղվում այդ գործով։ Դրա հետևանքով էլ վերջին հինգ տարվա ընթացքում Ծաղկավանի կոլտնտեսությունը տնկել է ընդամենը 8 հեկտար այգի, իսկ Հախումինը՝ 10 հեկտար։ Մի շարք կոլտնտեսություններ դեռևս լավ չեն խնամում ու աճեցնում յուրաքանչյուր վազ ու ծառ, որի հետևանքով այգիներից բարձր բերք չի ստացվում։

Այգեգործության զարգացման գործում եղած հիմնական թերություններից մեկն էլ այն է, որ մի շարք կոլտնտեսություններում միջոցներ ձեռք չեն առնըվում այգիները լիարժեք դարձնելու համար, որը մեծ չափով ազդում է բերքատվության վրա։ Ահա թե ինչու առաջիկա մեկ-երկու տարում արմատակալներ տնկելու միջոցով պետք է ապահովել այգիների լիարժեքությունը։

Պլանով նախատեսված է Շամշադինի շրջանում մինչև 1965 թվականը խաղողի այգիների տարածությունը հասցնել 1000 հեկտարի։ Գրեթե այդքանի էլ հասնելու է պտղատու այգիների տարածությունը։ Խաղողագործության և պտղաբուծության անընդհատ աճը լայն հեռանկարներ է բացում շրջանում գինեգործության ու պահածոների արդյունաբերության արագ զարգացման համար։ Արդեն սկսվել է շամպայն գինիների արտադրության կոմբինատի կառուցումը։ Միաժամանակ պետք է նշել, որ շրջանի գյուղերը գտնվում են երկաթուղային կայարաններից շատ հեռու, իսկ ռեսպուբլիկայի մայրաքաղաքից՝ 200—250 կիլոմետրի վրա, որը հնարավորություն չի տալիս ստացած բերքը ժամանակին հասցնել սպառողին։ Գործը կշահի, եթե Հայկական ՍՍՌՄ Ժողտնտխորհը մտածի Շամշադինի շրջանում պահածոների գործարան կառուցելու մասին։ Միաժամանակ պետք է մտածել Թովուզից մինչև շրջկենտրոն երկաթուղի կառուցելու մասին։

Շամշադինի պարտիական կազմակերպությունները գլխավորելով կոլտնտեսությունների քաղաքական ակտիվությունը՝ բոլոր հնարավորություններն ու ռեզերվները օգտագործում են Շամշադինը ռեսպուբլիկայի առաջավոր այգեգործական ու պտղաբուծական շրջաններից մեկը դարձնելու համար։

---

# ԱՆՇԵՂՈՐԵՆ ԿԻՐԱՌԵԼ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԵԼԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ, Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Գյուղատնտեսական արտելը կամավոր միավորված գյուղացիների կոլեկտիվ տնտեսություն է, որը կազմակերպված է հիմնական արտադրամիջոցների հանրայնացման սկզբունքով։ Գյուղատնտեսական արտելը իր տընտեսությունը վարում է Սովետական պետության սեփականությունը հանդիսացող հողի վրա, և գյուղատնտեսական արտադրության պրոցեսը կատարվում է արտելի անդամների և ՄՏ կայանի բանվորների համատեղ ուժերով՝ ՄՏ կայանների տրակտորների, մեքենաների ու ժամանակակից ուրիշ արտադրամիջոցների օգնությամբ, որոնք նույնպես պատկանում են պետությանը։ Ստացվող արտադրանքը կոլտնտեսային սեփականությունն է, և արտելի անդամները իրենք են տնօրինում այն։

Արտելի կառավարման բարձրագույն օրգանը կոլտնտեսության անդամների ընդհանուր ժողովն է, որը քննարկում ու վճռում է կոլտնտեսային կյանքին վերաբերող բոլոր հարցերը։ Ժողովների միջև ընկած ժամանակամիջոցում արտելի գործերը վարելու համար արտելի անդամների ժողովն ընտրում է վարչություն՝ 2 տարվա ժամկետով։

Սպիտակի շրջանի Հարթագյուղի կոլտնտեսության վարչությունը (նախագահ Գ. Աֆրիկյան) մեծ կարևորություն է տալիս արտելի անդամների ընդհանուր ժողովին։ Կոլտնտեսության վարչությունը խնամքով նախապատրաստում է քննարկվող հարցերը և բոլոր կոլտնտեսականներին նախապես տեղեկացնում ժողովի վայրի, ժամանակի և քննարկվող հարցերի մասին։ Որպես կանոն, ժողովները գումարվում են երկու ամիսը մեկ անգամ։ Ժողովներում քննարկվում և վճռվում են կոլտնտեսային կյանքի էական հարցերը։

Կոլտնտեսականների ընդհանուր ժողովները պետք է գումարվեն ժամանակին։ Մինչդեռ ռեսպուբլիկայում քիչ չէ այն կոլտնտեսությունների թիվը, որտեղ ժողովներ հազվադեպ են գումարվում։ Արտաշատի շրջանի Մրգավան գյուղի կոլտնտեսությունում (նախագահ Ց. Հասրաթյան) 1956 թվականի և 1957 թվականի առաջին կիսամյակում ոչ մի ժողով չի գումարվել, բացի հաշվետու-ընտրական ժողովից։

Ստեփանավանի շրջանի Լեջան գյուղի Շահումյանի անվան արտելի անդամների ընդհանուր թիվը կազմում է 694 մարդ։ Այստեղ 1957 թվականի առաջին կիսամյակում կայացել է արտելի անդամների 5 ժողով, ընդ որում այդ ժողովներից երեքին մասնակցել են արտելի անդամների 25—35 տոկոսը։ Մինչդեռ նույն արտելի ընդունած Կանոնադրությամբ նախատեսված է,

digitised by A.R.A.R.@

որ ընդհանուր ժողովներն օրինական կարող են համարվել այն դեպքում, երբ արտելի անդամների երկու երրորդը ներկա է լինում ժողովին։

Կան նաև այնպիսի կոլտնտեսություններ, որտեղ արտելի կարևորագույն հարցերը լուծվում են միայն վարչությունների միջոցով, առանց ընդհանուր ժողովի քննարկման և հաստատման ներկայացնելու։

Էջմիածնի շրջանի Արշալույս գյուղի կոլտնտեսության անդամների ընդհանուր ժողովում քննության չեն դրվել արտելի արտադրական պլանը, մուտքի, ելքի նախահաշիվը, ՄՏ կայանի հետ կնքված պայմանագիրը, վարչական ապարատի հաստիքները, նրանց վարձատրության չափը և այլ կարևոր հարցեր։ Այդ պատճառով էլ թույլ են տրվել արտադրական նորմաների կոպիտ խախտում և աշխօրերի մեծ շռայլումներ։ Այդպիսի օրինակներ կարելի է բերել նաև Արթիկի և Ապարանի շրջանների կոլտնտեսություններից։

Առանձին կոլտնտեսություններում չափից դուրս ծանրաբեռնվում է ընդհանուր ժողովների օրակարգը, որի հետևանքով հարցերի քննարկումը կրում է ձևական բնույթ։ Արտաշատի շրջանի Շահումյան գյուղի Կիրովի անվան կոլտնտեսության 1957 թվականի մայիսի 21-ի ժողովում քննարկվել է 12 հարց, իսկ 1956 թվականի օգոստոսի 18-ի ժողովում՝ 47 հարց, մինչդեռ կոլտնտեսային դեմոկրատիայի սկզբունքները պահանջում են, որ ընդհանուր ժողովների օրակարգը լինի չափավոր, որպեսզի հարցերը քննարկվեն բազմակողմանիորեն։ Ժողովներում այդքան շատ հարցերի քննարկումը չի նպաստում կոլտնտեսականների ակտիվության բարձրացմանը, չի ապահովում նրանց մասնակցությունը քննարկվող հարցերի լուծմանը։ Դեռ ավելին, շատ դեպքերում որոշումները ընդունվում են առանց քվեարկելու։ Ներկոլտնտեսային դեմոկրատիայի նման խախտումները մեծ վնաս են հասցնում կոլտնտեսականների նախաձեռնությանն ու ակտիվությանը և որոշումների կատարման գործում ստեղծում են անպատասխանատվություն։

Արտելի գործերի կառավարման մյուս կարևոր կողմը արտելի անդամների և նախագահի միջև ճիշտ փոխհարաբերությունների ստեղծումն է։ Կոլտնտեսության նախագահը չի կարող արտելի գործերը լավ վարել ու կազմակերպել, եթե արտելի բոլոր անդամների հետ սերտ համագործակցության մեջ չմտնի։ Ուստի կոլտնտեսության անդամների, վարչության և նախագահի փոխհարաբերությունները պետք է կառուցվեն ո՛չ միայն ենթարկվելու, այլ փոխադարձ համագործակցության վրա։ Փորձը ցույց է տալիս, որ այն կոլտնտեսություններում, որտեղ արտելի անդամների ու նախագահի հարաբերությունները հիմնված են փոխադարձ հարգանքի վրա, այնտեղ գործը բարեհաջող է ընթանում, լավ է օգտագործվում հողատարածությունը, հողի յուրաքանչյուր հեկտարից ավելի շատ եկամուտ է ստացվում և կոլտնտեսականների վաստակած աշխօրերի դիմաց շատ մթերքներ ու դրամ է բաշխվում։

Բասարգեչարի շրջանի Նորակերտ գյուղի «Կարմիր Հոկտեմբեր» կոլտնտեսությունը մեր ռեսպուբլիկայի առաջավոր կոլտնտեսություններից մեկն է։ Այս կոլտնտեսության ցանքատարածությունը 1000 հեկտարից ավելի է։ Այստեղ ամեն տարի գյուղատնտեսական կուլտուրաների բարձր և կայուն բերք է ստացվում։ Բավական է հիշատակել, որ վերջին 15 տարվա ընթացքում յուրաքանչյուր հեկտարից հացահատիկի միջին բերքը կազմել է 16—20 ցենտներ։ Այդ հաջողությունը գլխավորապես հետևանք է այն բանի, որ կոլտնտեսության նախագահ ընկ. Զաքարյանը հենվում է մասսաների ստեղծագործական



նախաձեռնության և ակտիվության վրա, կիրառում է սոցիալիստական աշխատանքի ձևերը, չի շեղվում ներկոլտնտեսային դեմոկրատիայի հիմունքներից։ Այստեղ, բացի կոլտնտեսության վարչության անդամներից, վարչության նիստերին մասնակցում են նաև բրիգադավարները, ֆերմաների վարիչները, մասնագետները և արտադրության առաջավորները, որոնք գործնական մասնակցություն են ունենում հարցերի քննարկմանը։ Կոլտնտեսության վարչությունն ամենուրեք հաշվի է առնում առաջավորների փորձը, խրախուսում նրանց։ Կոլտնտեսության հանրային շահերը զուգակցվում են կոլտնտեսականների անձնական շահերի հետ։ Աշխատանքի բարձր արտադրողականության շնորհիվ այս կոլտնտեսություններում մեկ աշխօրի արժեքը դրամական արտահայտությամբ կազմում է 21 ռուբլի։

Կան նաև այնպիսի կոլտնտեսություններ (Ազիզբեկովի, Վեդու և այլ շրջաններում), որտեղ վարչության նախագահները կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում հանդես չեն գալիս եռամսյակային հաշվետվություններով և կոլտնտեսության վարչության նիստերին մասնակից չեն դարձնում կոլտնտեսային ակտիվին։ Նրանք հանդես են գալիս տարեկան միայն մեկ անգամ՝ հաշվետու, կամ հաշվետու-ընտրական ժողովում։ Դրա հետևանքը լինում է այն, որ կոլտնտեսության վարչության նախագահը պատասխանատվություն չի զգում կոլտնտեսականների առաջ, թուլանում է կապը կոլտնտեսականների հետ, խախտվում են նորմալ հարաբերությունները կոլտնտեսության ղեկավարի և կոլտնտեսականի միջև։ Այս ամենը լուրջ վնաս է հասցնում արտելի ամրապնդմանը։

Արտելի գործերի հաջող ղեկավարման հիմնական պայմանը կադրերի
ճիշտ ընտրությունն ու նրանց տեղաբաշխումն է, ղեկավար անձնակազմի միջև
պարտականությունների ճիշտ սահմանումը։ Այս առումով ուսանելի է Նոյեմ-
բերյանի շրջանի Ղալաչա գյուղի Ստալինի անվան կոլտնտեսության վարչա-
կառավարչական ապարատի կազմակերպական կառուցվածքը։ Այդ կոլտնտե-
սությանը առհավետ օգտագործման համար ամրացված է 3287 հեկտար հող։
Արտադրության մեջ աշխատում են 822 կոլտնտեսական, որոնք տարեկան
վաստակում են ավելի քան 210 հազար աշխօր։ Յուրաքանչյուր աշխատունակ
կոլտնտեսական միջին հաշվով վաստակում է 280 աշխօր։ Արտելի անդամնե-
րի ընդհանուր ժողովի որոշմամբ այստեղ կազմակերպված է 6 դաշտավարական,
2 այգեգործական և 1 կերի հայթայթման բրիգադներ։ Դաշտավարական բրի-
գադներում կազմակերպված է շարահերկ կուլտուրաների աճեցման 12 օղակ։
Օղակավարները կոլտնտեսականների հետ հավասար կերպով մասնակցում են
բոլոր աշխատանքներին։ Կոլտնտեսության նախագահ ընկ. Ս. Գաբրիելյանը ղե-
կավարում է բոլոր բրիգադների և ֆերմաների աշխատանքը, հետևում է ընդ-
հանուր ժողովների և վարչության որոշումների կատարմանը։

Կոլտնտեսության գյուղատնտեսն անմիջականորեն ղեկավարում է դաշտավարական և այգեգործական բրիգադների աշխատանքը, ամենօրյա առաջադրանքներ է տալիս բրիգադներին և վերահսկում դրանց կատարմանը։ Նա իրականացնում է նաև գյուղատնտեսական աշխատանքի որակի ամենօրյա վերահսկողություն, կազմակերպում բրիգադներում և օղակներում ստացվող բերքի հաշվառում։

Կոլտնտեսային կադրերի ընտրության և տեղաբաշխման գործը ոչ բոլոր տեղերում է, որ լավ է կազմակերպված։ Կարելի է բերել այնպիսի օրինակ-

digitised by A.R.A.R.@

ներ, երբ շնորհալի, պատրաստված մարդկանց հետ միասին կոլտնտեսային ղեկավար աշխատանքի համար ընտրվում և առաջ են քաշվում իրենց գործնական հատկություններով թերունակ մարդիկ, որոնք գործը ձախողում են։ Այլապես ինչով բացատրել այն, երբ կլիմայական և հողային նույնանման պայմաններ ունեցող առանձին կոլտնտեսություններ ունեն արտադրական տարբեր ցուցանիշներ։

Ղափանի շրջանի Ն. Խոտանան գյուղի կոլտնտեսությունն անցած տարի ֆուրաժային յուրաքանչյուր կովից ստացավ 1600 լիտր կաթ, իսկ այս տարվա անցած 9 ամսում՝ 1632 լիտր. մինչդեռ նրա հարևան մի շարք կոլտնտեսություններում ֆուրաժային կովի կաթնատվությունը 750 լիտրից չի անցնում։

Սիսիանի շրջանի Սպանդարյան և Անգեղակոթ գյուղերի կոլտնտեսություններն ունեն հողակլիմայական միևնույն պայմանները։ 1956 թվականին 100 հեկտար հողի դիմաց առաջինը ստացավ 101,5 ցենտներ կաթ, իսկ երկրորդը՝ 47,6 ցենտներ։ Ինչո՞ւմն է բանը։ Բանը միայն տնտեսության ղեկավարման մեջ է։ Այնտեղ, որտեղ խելացիորեն օգտագործվում են բոլոր ռեզերվները, արդյունքը լինում է բարձր։ Վճռականը կոլտնտեսության ղեկավարությունն է, բանիմաց և ազնիվ ղեկավարների առկայությունը։

Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղի «Լենինյան ուղի» կոլտնտեսության նախագահ ընկ. Հ. Գրիգորյանը, որը պարտիայի կոչով որպես երեսունհազարական մեկնել է գյուղ, կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի աշխատողների առաջ հարց բարձրացրեց ոչխարների ցեղը բարելավելու մասին։ Այդ ջերմորեն ընդունեցին անասնապահները։ Այնուհետև այդ հարցը քննության դրվեց կոլտնտեսության վարչության նիստում, ապա՝ ընդհանուր ժողովում և ընդունվեց համապատասխան որոշում։ Որոշման կենսագործման արդյունքը եղավ այն, որ այժմ կոլտնտեսության հոտի զգալի մասը նրբագեղմ ոչխարներ են։ Կոլտնտեսությունը, որն ունի ավելի քան 10 հազար ոչխար, 1956 թվականին յուրաքանչյուր ոչխարից ստացավ 3,72 կիլոգրամ բուրդ և պլանով նախատեսված 14,5 տոննայի փոխարեն պետությանը հանձնեց 28 տոննա բուրդ։ Կոլտնտեսությունը միայն ոչխարաբուծությունից ստացավ 1.434.000 ռուբլու եկամուտ, իսկ 1957 թվականին բրդի եկամուտը 150.000 ռուբլով գերազանցում է 1956 թվականի եկամտից։

Խնձորեսկի կոլտնտեսության համեմատությամբ տնտեսապես զարգանալու ավելի նպաստավոր պայմաններ ունի Հոկտեմբերյանի շրջանի Արգավանդ գյուղի Սվերդլովի անվան կոլտնտեսությունը։ Այս կոլտնտեսության վարչությունը և սկզբնական պարտկազմակերպությունը փոխանակ կոնկրետ գործ ձեռնարկելու կոլտնտեսությունը առաջավորներին հասցնելու համար, բավարարվում են սոսկ որոշումներ ընդունելով։ Կոլտնտեսության վարչությունը մեկ տարում ունեցել է 38 նիստ։ Այդ նիստերում քննարկվել են աշխատանքային կարգապահությունը խախտող բազմաթիվ կոլտնտեսականների հարցեր։ Սակայն այդ որոշումներից հետո էլ աշխատանքային կարգապահությունը կոլտնտեսություններում շատ ցածր է, որովհետև ղեկավարությունը բանիմաց և գործունակ չէ։

Սրա հակապատկերն է Մեղրու շրջկենտրոնի Ստալինի անվան կոլտնտեսության վարչությունը (նախագահ Ի. Հայրապետյան), որը հմտորեն գլխավորում է կոլտնտեսականների նախաձեռնությունն ու եռանդուն աշխատանքը։ Կոլտնտեսությունը միայն այգիներից անցյալ տարի ստացել և պետությանն



է հանձնել ավելի քան 450 տոննա դեղձ։ Տարեցտարի բարձրանում է նաև հանրային տնտեսության դրամական եկամուտը։ 1956 թվականին կոլտնտեսության դրամական եկամուտը կազմեց 3.979.000 ռուբլի, իսկ 1957 թվականին այն ավելացել է 300.000 ռուբլով։ Զգալիորեն ավելացել է նաև կոլտնտեսականների աշխօրերի հասույթը։ Մեկ աշխօրին որպես ավանս տրվել է 35 ռուբլի, իսկ տարվա վերջին կբաշխվի 45 ռուբլի։

Կոլտնտեսությունները ղեկավարելու լավագույն օրինակներ կարելի է բերել Ախտայի, Ստեփանավանի, Կալինինոյի, Հոկտեմբերյանի և այլ շրջաններից։ Սակայն այդ կոլտնտեսությունների կողքին կան առանձին կոլտնտեսություններ, որտեղ ցածր է աշխատանքի արտադրողականությունը, որի հիմնական պատճառներից մեկը կոլտնտեսականների վատ մասնակցությունն է հանրային աշխատանքներին։

Կիրովականի, Արթիկի, Աշտարակի և Աղինի շրջանների շատ կոլտնտեսականներ չեն կատարում աշխօրերի պարտադիր մինիմումը, որի հետևանքով գյուղատնտեսական աշխատանքները ձգձգվում են, աշխատանքի արտադրողականությունը ցածր է. այս ամենը իջեցնում են ազնվորեն աշխատող կոլտնտեսականների վարձատրությունը։

Աշխատանքի բարձր արտադրողականությունը ապահովելու գործում վճռական նշանակություն ունի բրիգադաների աշխատանքի լավ կազմակերպումը, և այն, թե ով է գլխավորում բրիգադան։ Բայց առանձին կոլտնտեսություններում պատշաճ ուշադրություն չեն դարձնում բրիգադավարների ընտրության և առաջքաշման գործին։

Վեդու շրջանի Ավշար գյուղի կոլտնտեսությունում որպես բրիգադավարներ աշխատում են Մ. Մարգարյանը և Վ. Զաքարյանը, որոնց ղեկավարած բրիգադաներն աշխատում են հողակլիմայական միևնույն պայմաններում։ Մարգարյանը յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացավ 28 ցենտներ բամբակ, իսկ Զաքարյանի բրիգադայի բամբակենու մեկ հեկտարի միջին բերքատվությունը 15 ցենտներից չանցավ։

ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի բյուրոն 1957 թ. սեպտեմբերի 20-ին, քննության առնելով Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության կենսագործման ընթացքը, նշեց, որ առանձին կոլտնտեսությունների վարչություններ և նախագահներ հանրային սեփականությունը պահպանելու փոխարեն թույլ են տալիս կամայականություն և անօրինականություն։ Այսպես, օրինակ, Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության վարչությունը (նախագահ Ա. Մեժլումյան), խախտելով սահմանված օրենքները, շահադիտական նպատակներով կոլտնտեսության վարչա-կառավարչական ապարատի համար լրացուցիչ վարձատրության այնպիսի ձևեր է կիրառել, որոնց հիման վրա չնչին տարածությունից հացահատիկի բերքատվության պլանը գերակատարելու համար կոլտնտեսության նախագահին, ագրոնոմին, զոոտեխնիկին և հաշվապահին գրանցվել է 715 աշխօր։ Նրանք բացի իրենց հիմնական վարձատրությունից, որպես «լրացուցիչ վարձատրություն» կոլտնտեսությունից ապօրինի կերպով ստացել են 49 հազար ռուբլի։

Մարտունու շրջանի ՄՏ կայանը վերջին երեք տարվա ընթացքում չէր ստուգել Ծովինար գյուղի կոլտնտեսության վարչության գործունեությունը։ Վերջերս այդ կոլտնտեսությունում կատարված ստուգումներով հայտաբերվեցին հանրային տնտեսության միջոցների շռայլումներ։

digitised by A.R.A.R.@

Կոլտնտեսային միջոցների հափշտակման և շռայլման փաստեր հայտաբերվեցին նաև Աշտարակի շրջանի Ոսկեվազ գյուղի կոլտնտեսությունում։ Կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Աթանեսյանը չի պայքարել հանրային միջոցներ հափշտակողների դեմ, զբաղվել է աչքակապությամբ, արհեստականորեն բարձրացնելով ֆուրաժային կովի կաթնատվությունը։

Կենտրոնական Կոմիտեի բյուրոն դատապարտեց այդ կոլտնտեսությունների վարչությունների վարքագիծը, խիստ դիտողություն արեց Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությանը, ՄՏԿ-ների դիրեկտորներին, պարտիայի շրջկոմներին և շրջանային Սովետների գործկոմներին, որոնք թույլ են վերահսկում կոլտնտեսության վարչություններին՝ Գյուղատնտեսական արտելի Կանոնադրությունը կենսագործելու ուղղությամբ։

Պարտիայի և կառավարության կողմից մտցված գյուղատնտեսական պլանավորման նոր կարգը, ինչպես նաև ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1956 թվականի մարտի 6-ի «Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության ու արտելի գործերի կառավարման մեջ կոլտնտեսականների նախաձեռնության հետագա զարգացման մասին» և «Կոլտնտեսություններում կոլտնտեսականների ավանսավորման և աշխատանքի լրացուցիչ վարձատրության մասին» որոշումները նպատակ ունեն վերացնել գյուղատնտեսության ղեկավարման գործում եղած շաբլոնը, խթանել գյուղատնտեսության արտադրության արագ վերելքը և կոլտնտեսությունների աշխատանքի հետագա բարելավումը, բարձրացնել կոլտնտեսականների և գյուղատնտեսության բոլոր աշխատողների ստեղծագործական ակտիվությունը։

Ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ, կենսագործելով պարտիայի և կառավարության այդ դիրեկտիվները, անցյալ տարի հասան բարձր ցուցանիշների։ Միայն 1956 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների դրամական եկամուտները, 1955 թվականի համեմատությամբ, աճեցին 118 միլիոն 150 հազար ռուբլով։

Կոլտնտեսային արտադրության եկամուտների աճի հիման վրա իրագործվում է հանրային տնտեսության ընդարձակումը և կոլտնտեսականների նյութական բարեկեցության բարձրացումը։ Մոտակա տարիներին յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի, մսի ու յուղի արտադրանքով մենք պետք է հասնենք ԱՄՆ-ին։ Այս մեծ խնդրի լուծումը պահանջում է սրբությամբ պահպանել գյուղատնտեսական արտելի Կանոնադրության բոլոր կետերը և պայքարել հանրային գույքի հափշտակումների դեմ։

Այժմ, երբ մեծ չափով ուժեղացել է ՄՏ կայանների կողմից կոլտնտեսություններին ցույց տրվող կազմակերպական-տեխնիկական օգնությունը, բոլոր պայմանները կան եղած ռեզերվները լիակատար օգտագործելու և հանրային տնտեսությունը արագորեն զարգացնելու համար։

Շրջանային պարտիական ու սովետական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն կոլտնտեսային կադրերի դաստիարակությունը, բարձրացնեն կոլտնտեսականների ստեղծագործական ակտիվությունը, խորապես ուսումնասիրեն կոլտնտեսային արտադրության հարցերը և ապահովեն գյուղատնտեսական արտելի Կանոնադրության անշեղ կենսագործումը։

---

# ՈՒՍԱՆՈՂՈՒԹՅԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐ Է

Լ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Երևանի Կարլ Մարքսի անվան Պոլիտեխնիկական ինստիտուտը բոլորում է իր գոյության երրորդ տասնամյակը։ Անցած տարիների ընթացքում ինստիտուտը ավարտել են ավելի քան 4.200 ինժեներ, որոնք աշխատում են մեր անծայրածիր երկրի տարբեր շրջաններում։

Պոլիտեխնիկական ինստիտուտը զարգացավ հատկապես Հայրենական Մեծ պատերազմից հետո. բացվեցին նոր ֆակուլտետներ, զգալիորեն հարըստացավ ինստիտուտի նյութա-տեխնիկական բազան։ Այժմ միայն ստացիոնար բաժնում սովորում են 2437 ուսանող, իսկ հեռակա և երեկոյան բաժնում, առանց արտադրությունից կտրվելու, սովորում են մոտ 800 ուսանող։ 1957 թ. ինստիտուտն ավարտեցին 411 հոգի։ Ինստիտուտում աշխատում են 252 դասախոս։

Բարձրագույն տեխնիկական ուսումնական հաստատությունները հսկայական գործ ունեն կատարելու այժմ, երբ դրվում է երկրի ամբողջ ժողովրդական տնտեսությունը գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումների հիման վրա կատարելագործելու մեծ խնդիրը։

ՍՄԿՊ XX համագումարը բարձրագույն կրթության բնագավառում հիմնական խնդիր դրեց՝ «Ամեն կերպ բարելավել մասնագետների պատրաստման որակը արտադրության հետ ուսման սերտ կապի հիման վրա, ճիշտ տեղաբաշխել բարձրագույն ուսումնական հաստատությունները երկրում, դրանք մոտեցնել արտադրությանը, ուսումնական աշխատանքը կազմակերպել տեխնիկական արդի մակարդակին համապատասխան»։

Այժմ բարձրագույն ուսուցումը լուրջ վերափոխումների է ենթարկվում։ Վերջին երկու տարիներում վերամշակվել են ուսումնական ծրագրերն ու պլանները, բարելավվել է արտադրական պրակտիկայի դրվածքը, խոշոր գումարներ են ծախսվում լաբորատորիաներն ու կաբինետները նոր սարքավորումներով հարստացնելու համար։ Բարձրագույն դպրոցի կյանքում հսկայական նշանակություն ունի ընդունելության նոր կանոնադրությունը, որի համաձայն զգալի արտոնություններ են տրվում արտադրությունից և Սովետական Բանակից եկած ընկերներին։ Ուսանողության նկատմամբ Սովետական պետության հոգատարության արտահայտությունն է ուսման վարձի վերացումը, թոշակների նոր սիստեմին անցնելը և այլն։ Այս բոլորը լրջորեն խթանում են նոր կադրերի պատրաստման գործը։

Երևանի Պոլիտեխնիկական ինստիտուտի պարտիական կազմակերպության աշխատանքն ընթացել է արդյունաբերության համար լավագույն մաս-

digitised by A.R.A.R.@

նագետներ պատրաստելու, ուսանող-երիտասարդությանը կոմունիստական ոգով դաստիարակելու ուղղությամբ։ Այդ բնագավառում մեր նվաճումներն ակներև են։

Սակայն պետք է ասել, որ ուսանող երիտասարդության դաստիարակության և ուսման ասպարեզում գոյություն ունեն լուրջ թերություններ. գաղափարական-դաստիարակչական աշխատանքը սերտորեն չի կապվում ուսումնական պրոցեսի հետ, բարձր չէ ուսանողության ընդհանուր առաջադիմությունը։ 1956—1957 ուսումնական տարվա ընթացքում ինստիտուտի յուրաքանչյուր չորս ուսանողից մեկը ուներ մեկ և ավելի անբավարար գնահատական։ Մեծ չափերի են հասնում բացակայությունները։ Մի շարք ուսանողներ թույլ են տալիս հակահասարակական արարքներ, խանգարում են սոցիալիստական համակեցության կանոնները, չեն սիրում աշխատանքը, խուսափում են իրենց պարտականությունները կատարելուց։

Այս ամենը վճռական պահանջ դրին ինստիտուտի պարտիական կազմակերպության առջև՝ ուսանողության դաստիարակության գործը արմատապես բարելավելու համար։

Ուսանողության մեջ տարվող դաստիարակչական աշխատանքը բարդ է և շնորհակալ։ Դեռևս ՀամԼԿԵՄ VII համագումարում արտասանած իր ճառում Մ. Ի. Կալինինը նշել է, որ երիտասարդությունը մարդու այն հասակն է, երբ նա աչքի է ընկնում իր բացառիկ զգայունակությամբ, իդեալների հանդեպ ծագած ձգտումով. նա արտասովոր չափով անկեղծ է և ուղղամիտ։ Այս պատճառով էլ երիտասարդության մեջ դաստիարակչական աշխատանքը պետք է տարվի մտածված, ընդգրկի ուսանողության կյանքի ու գործունեության բոլոր բնագավառները, շաղկապվի մեր սոցիալիստական առօրյայի հետ։ Չպետք է մոռանալ այն կարևոր իրողությունը, որ երիտասարդության այժմյան սերունդը չի անցել ռևոլյուցիոն պայքարի բովից, չի տեսել այն զրկանքներն ու դժվարությունները, որոնք կրել են նրանց ծնողները, ավագ եղբայրներն ու քույրերը։ Երիտասարդներից շատերը չեն պատկերացնում այն զոհողություններն ու ջանքերը, որոնց գնով ձեռք են բերված մեր արդի նվաճումները։ Եթե դրան ավելացնենք և այն, որ որոշ երիտասարդներ ակամա տուրք են տալիս բուրժուական մտայնության մնացուկներին, ապա հասկանալի կլինեն այն տհաճ երևույթները, որոնց հատ ու կենտ նմուշները տեսնում ենք ուսանողների շրջանում։

Դաստիարակչական աշխատանքներում դեռևս անբավարար են հաշվի առնվում ուսանողների ցանկություններն ու պահանջները, ագիտացիան ու պրոպագանդան սերտորեն չեն շաղկապվում սոցիալիստական շինարարության պրակտիկ խնդիրների, ինստիտուտի ամենօրյա կյանքի հետ։ Թույլ է պայքարը հակահասարակական երևույթների դեմ։ Ահա թե ինչու դասախոսների և կոմունիստների այն ստվար կոլեկտիվը, որ մենք ունենք Պոլիտեխնիկական ինստիտուտում, պետք է օգնի երիտասարդության դաստիարակությանը։ Այս ուղղությամբ լավ նախաձեռնություն ցուցաբերեց ինստիտուտի մարքսիզմ-լենինիզմի հիմունքների ամբիոնը, որը ԼԿԵՄ կոմիտեի անդամների և ֆակուլտետային ԼԿԵՄ կոմիտեների քարտուղարների մասնակցությամբ հրավիրեց ամբիոնի նիստ, որտեղ մշակվեցին ուսանողության մեջ տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքների միջոցառումներ։ Ըստ ֆակուլտետների ու կուրսերի կազմակերպվեցին դասախոսություններ և անցկացվե-



ցին թեմական կոնֆերանսներ՝ «Սովետական երիտասարդության կերպարը», «Սեր և բարեկամություն», «Խոսենք կուլտուրական մարդու մասին» և այլ թեմաներով։ Կազմակերպվեցին հանդիպումներ հին բոլշևիկների, արտադրության առաջավորների, գրողների ու կուլտուրայի գործիչների հետ։

Ուսանողների մոտ մեծ ընդունելություն են գտնում հատկապես հարց ու պատասխանի երեկոները, որտեղ նրանք ստանում են իրենց հետաքրքրող հարցերի կոնկրետ պատասխանը։ Այդ երեկոները կազմակերպվում են երկու ձևով. մի դեպքում տրվում է նախօրոք ստացված գրավոր հարցերի պատասխանը, մյուս դեպքում՝ հարցերը տրվում են բանավոր։ Պրակտիկան ցույց է տալիս, որ երկու ձևն էլ ընդունելի են։ Նամանավանդ, երբ հարց ու պատասխանի երեկոն վարում է պատրաստված և բանիմաց ընկեր, որը սպառիչ պատասխան է տալիս բոլոր հարցերին։

Ինստիտուտի պարտիական կազմակերպությունը հատուկ ուշադրություն է դարձնում երիտասարդությանը ինտերնացիոնալիզմի, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակելու գործին։ Դա, հատկապես, կարևոր է այժմ, երբ վերջին տարիներս հարևան ռեսպուբլիկաներից ինստիտուտում սովորելու են գալիս ավելի շատ ուսանողներ։ Երկար տարիների լավագույն տրադիցիա է դարձել Անդրկովկասի երեք ռեսպուբլիկաների բարձրագույն տեխնիկական ուսումնական հաստատությունների ուսանողների եղբայրական կապը։ 1956 թվականի նոյեմբերին ինստիտուտի ուսանողական առաջին ֆեստիվալին ներկա էին Թբիլիսիի Երկաթուղային տրանսպորտի ինստիտուտի մոտ 40 ուսանող, որոնք մասնակցեցին ֆեստիվալին և ֆիզկուլտ մրցումներին։ 1957 թ. մեզ մոտ տեղի ունեցավ Անդրկովկասի պոլիտեխնիկական ինստիտուտների ուսանողական գիտական սեսիա։ Մեկ շաբաթ Երևանի ինստիտուտում հյուր էին Թբիլիսիից և Բաքվից եկած մոտ 90 ուսանող։ Սեսիան անցավ բարեկամական ջերմ մթնոլորտում և մեծ հետաքրքրություն առաջ բերեց ինստիտուտի ողջ ուսանողության մեջ։ Սերտ բարեկամություն է հաստատվել Երևանի և Կիևի պոլիտեխնիկական ինստիտուտների ուսանողների միջև։ 1957 թվականի հունվարյան արձակուրդների ժամանակ Կիևում եղած ինստիտուտի ուսանողական դելեգացիան իր հետ բերեց Ուկրաինայի ընկերների անկեղծ սերն ու զգացմունքները։ Մեր ինստիտուտի ուսանողները ջերմորեն հյուրընկալեցին ժողովրդական դեմոկրատիայի երկրներից Մոսկվայի ճարտարապետական ինստիտուտում սովորող ուսանողներին։

Երևանի Պոլիտեխնիկական ինստիտուտի ուսանողները նամակագրական կապեր են հաստատել Հնդկաստանի, Չեխոսլովակիայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի և Ալբանիայի ուսանողների հետ։ Եղբայրական ժողովուրդների կուլտուրային և արվեստին ծանոթանալու համար ինստիտուտի ԼԿԵՄ կոմիտեի նախաձեռնությամբ մի քանի անգամ կազմակերպվել են գրական-երաժշտական երեկոներ։ Այդպիսի միջոցառումները լրջորեն նպաստում են ուսանողությանը ժողովուրդների եղբայրական բարեկամության ոգով դաստիարակելու գործին։

Երիտասարդության դաստիարակության գործում կարևոր նշանակություն ունի կուլտ-մասսայական աշխատանքների ճիշտ կազմակերպումը։ Պետք է հասնել նրան, որ երիտասարդության հանգիստը կազմակերպվի սիստեմատիկ և բովանդակալից։

Վերջին մեկ տարվա ընթացքում ուսանողների և երիտասարդության հա-



digitised by A.R.A.R.@

մամիութենական և համաշխարհային VI ֆեստիվալի նախապատրաստման և
անցկացման ամբողջ պրոցեսը երևան հանեց ինստիտուտի երիտասարդության
բազմակողմանի ընդունակությունները, ցույց տվեց, որ կան շատ շնորհալի
ուսանողներ, որոնք մինչև այդ հայտնի չէին: Էստրադային, լարային և ժողո-
վրրդական գործիքների նվագախմբերը, մեծ թվով անհատ կատարողներ ռես-
պուբլիկական ֆեստիվալում առաջնակարգ տեղեր գրավեցին: Հաջողությամբ
գործում են ֆիզկուլտուրայի և սպորտի խմբակները. 1957 թ. Երևան քաղաքի
միջբուհային մրցություններում, շրջանի երիտասարդության սպարտակիա-
դայում ինստիտուտի ֆիզկուլտ կոլեկտիվները գրավեցին առաջին տեղերը:

Սակայն կուլտ-մասսայական և ֆիզկուլտ աշխատանքները լայնորեն չեն
ծավալվում ինստիտուտում, ուսանողության զգալի մասը չի ընդգրկված այդ
ասպարեզում: Իհարկե, այդ լուրջ թերություն է. բայց այդ թերության վերա-
ցումը միայն պարտիական և կոմերիտական կազմակերպություններից չի
կախված: Բանն այն է, որ ինստիտուտն ուսանողների ժամանցի, կուլտուրա-
կան հանգստի համար չունի դեռևս անհրաժեշտ հարմարություններ: 2400
ուսանողի համար ինստիտուտն ունի միայն մեկ լսարան-դահլիճ, որը կարող
է տեղավորել ընդամենը 250 հոգի: Ուսանողական ինքնագործ խմբակների
պարապմունքները կազմակերպելու համար չկան պայմաններ, իսկ ուսանո-
ղական I և II հանրակացարանների կարմիր անկյունները տեղավոր-
ված են փոքրիկ սենյակներում: Անհրաժեշտ է արագացնել ինստիտուտի նոր
շենքի շինարարությունը:

Երիտասարդության, այդ թվում նաև ուսանող երիտասարդության համար
ամենագլխավորն ու կարևորը աշխատանքային դաստիարակությունն է, յու-
րաքանչյուր պատանու և աղջկա պրակտիկ մասնակցությունը կոմունիստական
հասարակության կառուցման գործին: Վ. Ի. Լենինը երիտասարդությանը կոչ
էր անում սիրել աշխատանքը, իր կարողությունները լավագույն ձևով օգտագոր-
ծել մեր ընդհանուր գործի համար, խիզախել կյանքում և ընթանալ առաջա-
վոր գիտության հետ: Նա սովորեցնում էր, որ միայն աշխատանքի մեջ է, որ
երիտասարդ մարդը վերափոխվում է, հասկանում է կյանքն իր բոլոր կողմե-
րով և դառնում հասարակության համար օգտակար անձնավորություն, իսկա-
կան կոմունիստ: ՀամԼԿԵՄ III համագումարի ամբիոնից դիմելով սովետական
երիտասարդությանը՝ նա կոչ էր անում կոմունիզմի համար մղվող պայքա-
րին ենթարկել իր ուսման, կրթության ու դաստիարակության յուրաքանչյուր
քայլը:

Մեր պետության անցած 40 տարիների ընթացքում սովետական երիտա-
սարդությունը հերոսական պայքարի ու աշխատանքի բազմաթիվ փայլուն
էջեր գրեց: Դրա ցայտուն օրինակն է երիտասարդության ակտիվ մասնակցու-
թյունը խամ ու խոպան հողերի յուրացման աշխատանքներին, ինդուստրիայի
նոր գիգանտների, խոշոր հիդրոէլեկտրակայանների կառուցմանը և այլն:
Պոլիտեխնիկական ինստիտուտի ուսանողական կոլեկտիվն էլ իր լուման
բերեց այդ մեծ գործում: 1957 թ. խամ ու խոպան հողերի շրջաններում բեր-
քահավաքին մասնակցեցին ինստիտուտի 250 ուսանող, որոնք պատվով կա-
տարեցին իրենց հանձնարարված աշխատանքները:

Ինստիտուտի ուսանողները մեծ խանդավառությամբ ընդունեցին նաև սե-
փական աշխատանքից կուտակված միջոցներով Երևանում Երիտասարդի պա-
լատ կառուցելու մասին Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինա-



կան գործարանի երիտասարդների կոչը: Այդ նպատակի համար մեծ թվով ու-
սանողներ աշխատեցին Երգեսի շինարարական օբյեկտներում, մասնակցեցին
շաբաթօրյակներին և այլն: Ինստիտուտի ուսանողներն զգալի գործ են կա-
տարում նաև ինստիտուտի և հանրակացարանների շրջակայքը բարեկարգե-
լու նպատակով: Իհարկե, այս ամենն աշխատանքային դաստիարակության
ուղղությամբ կատարված առաջին քայլերն են:

Ուսանող երիտասարդության կոմունիստական դաստիարակության հիմնա-
կան պայմաններից մեկը դասախոսական ամբողջ կազմի ներգրավումն է
այդ աշխատանքում: Դեռևս 1939 թվականին բարձրագույն ուսումնական
հաստատություններում աշխատողների խորհրդակցությունում Մ. Ի. Կալինինը
նշում էր, որ դասատուն, դասախոսը չպետք է միշտ հանդես գա սոսկ գիտե-
լիքներ ուսուցանողի դերում, այլ նա ամենից առաջ պետք է լինի դաստիարա-
կող, նա պետք է ուսանողին դաստիարակի առօրյա երևույթների նկատմամբ
իր ցուցաբերած վերաբերմունքով, իր ամբողջ էությամբ: Եթե ուսանողության
կոմունիստական դաստիարակության ասպարեզում մեզ մոտ դեռևս թերու-
թյուններ կան, ապա դա բացատրվում է նաև դաստիարակչական աշխատանք-
ներում դասախոսական կազմի զգալի մասի պասսիվությամբ և անտարբե-
րությամբ: Դասախոսներից շատերը դասերից դուրս չեն լինում ուսանողների
հետ, չեն լինում հանրակացարաններում, չեն մասնակցում ուսանողական ժո-
ղովներին, չեն հետաքրքրվում ուսանողի առօրյայով: Այս թերությունը վերաց-
նելու նպատակով ինստիտուտի պարտիական կազմակերպությունը դասախոս-
ներին կցում է ակադեմիական խմբերին, որոնք ուսանողների շրջանում քաղա-
քական ագիտացիայի հետ միասին կոնկրետ դաստիարակչական աշխատանք
են տանում:

Իրեն կցված խմբում լավ աշխատանք է տանում, օրինակ, երիտասարդ
դասախոս ընկ. Տ. Ճավարշյանը: Նա սիստեմատիկաբար լինում է խմբի
ուսանողների մոտ, մասնակցում նրանց ժողովներին, երեկոներին, կազմա-
կերպում է կոլեկտիվ հաճախումներ՝ կինո, թատրոն, ցուցահանդեսներ, ար-
դյունաբերական ձեռնարկություններ և այլն: Իրեն կցված խմբում ուշագրավ
աշխատանք է տանում ինստիտուտի լեզուների ամբիոնի դասախոս ընկ. Իս-
ամինը: Նա սիստեմատիկաբար զրույցներ է անցկացնում ՍՍՌՄ ներքին և
արտաքին դրության հարցերի շուրջը, մի քանի անգամ ուսանողների հետ
եղել է Երևանի Ստանիսլավսկու անվան ռուսական թատրոնում, որից հետո
խմբում քննարկվել է դիտված ներկայացումը. քննարկվել են նաև դիտված
կինոնկարները և այլն: Իր խմբում առանձնապես գովելի աշխատանք է տա-
նում երիտասարդ դասախոս Ռ. Մովսիսյանը. հետաքրքրական է նրա մեթոդա-
կան աշխատանքը, որը ցայտուն կերպով արտահայտվում է հատկապես
քննությունների նախապատրաստման և անցկացման ժամանակ: Նա ուսանող-
ների հետ զրույցներ է կազմակերպում այն մասին, թե ինչպես օգտագործել
ժամանակը, ինչպես կրկնել անցած նյութը, մեծ հոգատարություն է ցուցա-
բերում այն ուսանողների նկատմամբ, որոնք ետ են մնում ուսման մեջ, քա-
ջալերում է նրանց, օգնում հաջող հանձնելու քննությունները: Նա հաճախ է
լինում ուսանողական հանրակացարաններում, ինստիտուտի ԼԿԵՄ կոմիտեի և
արհկոմի առաջ բարձրացնում է ուսանողների կենցաղի վերաբերյալ առանձին
հարցեր և օգնում նրանց լուծմանը: Ուսանողների և Մովսիսյանի միջև հաս-
տատվել են հարգանքի և սիրո փոխհարաբերություններ: Պատահական չէ, որ

digitised by A.R.A.R.@

երբ ուսանողները ցանկություն հայտնեցին մեկնելու Ղազախստան՝ բերքահավաքին մասնակցելու, իր խմբի հետ գնաց նաև Մովսիսյանը։

Որպես դրական փաստ պետք է նշել նաև, որ ինստիտուտի ուսանողական կոլեկտիվի հետ միասին բերքահավաքի աշխատանքներին մասնակցելու համար Ղազախստան մեկնեցին նաև ինստիտուտի երիտասարդ դասախոսներ՝ Հրանտ Օզանեսովը, Բենիկ Միրզոյանը, Վարդան Միքայելյանը, կոմունիստ լաբորանտներ Գրիգոր Սուքիասյանը և ժորա Խաչատրյանը։

Ուսանողության կոմունիստական աշխարհայացքը ձևավորվում է գլխավորապես հասարակագիտական առարկաների՝ ՍՄԿՊ պատմության, դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի և քաղաքատնտեսության ավանդման միջոցով։ Ինստիտուտում զգալի գործ է կատարված այդ առարկաների ուսումնական պլանների ու ծրագրերի բարելավման, դրանց ուսումնասիրությունը ավելի խոր ձևով վարելու համար։

Միաժամանակ պետք է նշել, որ առանձին ուսանողներ, իսկ երբեմն էլ առանձին դասախոսներ այն սխալ կարծիքին են, թե հասարակագիտական առարկաների խոր ուսումնասիրությունը, օրինակ, համալսարանի ուսանողի գործն է, իսկ ինժեներ դառնալու համար դրանք այնքան էլ անհրաժեշտ չեն։ Բայց սովետական ինժեները ո՛չ միայն տեխնիկական մասնագետ է, այլ նաև սոցիալիստական արտադրության հրամանատար։ Միայն այն դեպքում նա կարող է հաջողությամբ ղեկավարել արտադրության իր տեղամասը, եթե նա խորապես ըմբռնում է մարքսիստական-լենինյան թեորիան, հատկապես նրա տնտեսագիտական կողմը, սոցիալիստական արդյունաբերության զարգացման օրինաչափությունները, պարտիայի ներքին և արտաքին քաղաքականության հարցերը։ Հասարակագիտական առարկաների նկատմամբ վերը նշված ոչ ճիշտ տրամադրությունների առաջացմանը որոշ չափով նպաստում է այն, որ այդ առարկաների դասավանդումը բոլոր դեպքերում չէ, որ իր բարձրության վրա է գտնվում։

Ուսման պրոցեսի ճիշտ կազմակերպումն ուսանողության դաստիարակության ամենակարևոր պայմաններից մեկն է։ Վերցնենք, օրինակ, քննությունների անցկացման և ուսանողների գիտելիքների գնահատման հարցը։ Որոշ դասախոսներ, չհասկանալով այդ հարցի դաստիարակչական մեծ նշանակությունը, ուսանողների գիտելիքների գնահատմանը մոտենում են միակողմանիորեն, ընկնում են երկու տեսակի ծայրահեղության մեջ։ Մի դեպքում ուսանողի գիտելիքներն ստուգվում է հապճեպ և, սովորաբար, դրվում է նրա գիտելիքներից ավելի բարձր գնահատական, որը վնասում է ուսանողին, նրա մեջ արմատավորում մեծամտություն և բացասաբար է անդրադառնում ուսանողի փաստական առաջադիմության ու գիտակցական կարգապահության վրա։ Մյուս դեպքում, ուսանողի նկատմամբ քննությունների ժամանակ ցուցաբերվում է անտեղի խստություն, ավելորդ բծախնդրություն։ Մինչդեռ քննությունների ճիշտ անցկացումը, ուսանողի գիտելիքների ճիշտ գնահատումը, անհրաժեշտ պահանջկոտության հետ միասին հոգատարության ու տակտի պահպանումը հսկայական նշանակություն ունեն ուսանողության դաստիարակության համար։

Ուսանողության դաստիարակության կարևոր խնդիրներից մեկը կոմունիստական վերաբերմունքի մշակումն է հանրային գույքի նկատմամբ։ Սակայն առանձին ուսանողներ ջարդում և փչացնում են լսարանների ու լաբո-



րատորիաների գույքը, գրադարանի ու կաբինետների գրքերը և այլն։ Միայն 1956 թվականի ընթացքում ինստիտուտի և հանրակացարանների գույքի վերանորոգման համար ծախսվել է ավելի քան 117 հազար ռուբլի, իսկ լսարանների և լաբորատորիաների ընթացիկ վերանորոգման համար՝ 86 հազար ռուբլի։ Եթե ինստիտուտի կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունները լայն պայքար ծավալեն պետական գույքի պահպանման համար, եթե յուրաքանչյուր ուսանող աչքի լույսի պես պահպանի այն, ապա կարելի է զգալի միջոցներ խնայել և այն օգտագործել հենց իրենց՝ ուսանողների բազմաթիվ այլ կարիքների համար։

Ինստիտուտի պարտիական կազմակերպության խնդիրն է՝ հասնել այն բանին, որ ուսանողների դաստիարակչական աշխատանքով ավելի կոնկրետ զբաղվեն դիրեկտորն ու նրա տեղակալները, դեկաններն ու ամբիոնի վարիչները, ինչպես նաև բոլոր դասախոսները։ Ուսանողության դաստիարակության հարցերը պետք է քննարկման ենթարկվեն և լուծվեն նաև գիտական խորհուրդների և ամբիոնների նիստերում։

Ուսանող երիտասարդության դաստիարակության կարևոր պայմանը պետական կարգապահության, տվյալ ուսումնական հաստատության ներքին կարգ ու կանոնի խստիվ պահպանումն է։ Ինստիտուտի պարտիական կազմակերպությունը զգալի անելիքներ ունի այդ ուղղությամբ եղած թերությունները վերացնելու համար։ Իսկ թերությունները քիչ չեն։ Դաստիարակչական աշխատանքներում համոզման մեթոդը վատ է զուգակցվում ադմինիստրատիվ միջոցների հետ։

ԼԿԵՄ և արհմիութենական կազմակերպությունները մեր ինստիտուտի ամենամասսայական կազմակերպություններն են, որոնց միջոցով էլ պարտիական կազմակերպությունը իր շուրջն է համախմբում երիտասարդներին, նրանց դաստիարակելով օգնում է դառնալ կոմունիզմ կառուցող մարտիկներ։ Այս առումով երիտասարդության դաստիարակության հաջողությունը խոշոր չափով պայմանավորված է այդ կազմակերպությունների լավ աշխատանքով։

Վերջին մեկ տարվա ընթացքում զգալիորեն բարելավվել են այդ կազմակերպությունների աշխատանքները։ Ինստիտուտի ԼԿԵՄ կոմիտեն ավելի մոտիկից է զբաղվում ուսանողության ուսումնա-դաստիարակչական աշխատանքներով, վճռական պայքար է ծավալում ուսման որակի և գիտակցական կարգապահության բարձրացման համար։ ԼԿԵՄ կազմակերպության աշխատանքները դարձել են ավելի բովանդակալի։ ԼԿԵՄ կոմիտեի նախաձեռնությամբ կազմակերպվում են շաբաթօրյակներ և բազմաթիվ այլ մասսայական միջոցառումներ։ Նա կոնկրետ միջոցառումներ է ձեռնարկում ուսանողության գեղարվեստական ինքնագործունեությունը ծավալելու, ուսանողական ինքնագործունեության խմբակներում ավելի մեծ թվով երիտասարդներ ընդգրկելու ուղղությամբ։

Սակայն այդ կազմակերպությունների աշխատանքը դեռևս չի գտնվում պատշաճ բարձրության վրա։ Անբավարար են աշխատում հատկապես ԼԿԵՄ և և արհմիութենական կազմակերպությունների ստորին օղակները։ Կուրսային կազմակերպությունները շատ հաճախ չեն նկատում և արժանի գնահատական չեն տալիս ուսանողության մեջ նկատվող թափթփվածության, ուսումնական կարգապահության կոպիտ խախտումներին, գողության երևույթներին։ ԼԿԵՄ կուրսային կազմակերպություններն անբավարար են զբաղվում ուսանո-

digitised by A.R.A.R.@

ղության բարոյական, էսթետիկական դաստիարակությամբ, թույլ են պայքարում այն երիտասարդների դեմ, որոնք դատարկապորտ կյանք են վարում, զբաղվում են հարբեցողությամբ, խուլիգանությամբ. ավելին, որոշ դեպքերում նրանց վերցնում են իրենց հովանավորության տակ (էլեկտրատեխնիկական ֆակուլտետի III կուրս և շինարարական ֆակուլտետի III կուրս)։

ԼԿԵՄ և արհմիութենական կազմակերպությունները պետք է վճռական պայքար ծավալեն կեղծ ընկերասիրության դեմ, անհանդուրժելի մթնոլորտ ստեղծեն խուլիգանների, հակահասարակական արարքներ թույլ տվողների, նրանց հովանավորողների և խրախուսողների նկատմամբ։ Այս ուղղությամբ պետք է լայնորեն օգտագործել պատի և բազմատիրաժ թերթերը, ժողովները և այլն։

ԼԿԵՄ և արհմիութենական կազմակերպությունները անբավարար աշխատանք են տանում հատկապես բարձր կուրսերի ուսանողների հետ, որի հետևանքով որոշ շրջանավարտներ ղլանում են աշխատանքի մեկնել այնտեղ, ուր պետք է։

Ուսանողության մեջ դաստիարակչական աշխատանքը պետք է տարվի խելացի, դիֆերենցված. չէ՞ որ այլ պահանջներ ու կարիքներ ունեն, ասենք, ինստիտուտ նոր ընդունված ուսանողը և հինգերորդ կուրսեցին։ Այս հաշվի առնելով էլ պետք է կազմակերպել կոմերիտական ամբողջ աշխատանքը։

Բանն այն է, որ ուսանողական կազմակերպությունները լավ չգիտեն ուսանողներին, անբավարար են հետաքրքրվում նրանց կենցաղով, լավ չեն կազմակերպում նրանց կուլտուրական հանգիստը։ Ուսանողի աշխարհայացքը ձևավորվում է ուսման ամբողջ պրոցեսի ընթացքում՝ դասախոսությունների և սեմինարների ժամանակ, դասախոսների հետ շփման միջոցով, հասարակական աշխատանքներում, ընդհանրապես բարձրագույն դպրոցի ամբողջ կյանքում։ Այդ գործում մեծ է բուհական կոմերիտական կազմակերպության դերը։

Կոմերիտական կազմակերպությունների աշխատանքների մակարդակի բարձրացման հիմնական պայմանը պարտիական կազմակերպության ղեկավարությունն է։ Եթե ուսանողության շրջանում տարվող աշխատանքների ուղղությամբ ինստիտուտի ԼԿԵՄ կազմակերպությունը հարկ եղած չափով իր նպատակին չի հասնում, ապա դա պետք է բացատրել պարտիական կազմակերպության անբավարար ղեկավարությամբ։ ԼԿԵՄ կազմակերպության աշխատանքները լավ չէին ընթանում, օրինակ, ինստիտուտի մեխանիկական ֆակուլտետում և, հատկապես, նրա V կուրսում։ Դա բացատրվում էր նրանով, որ ֆակուլտետի պարտիական կազմակերպության բյուրոն աչքաթող էր արել իր աշխատանքի այդ կարևոր բնագավառը։ Նույնը կարելի է ասել նաև էլեկտրատեխնիկական ֆակուլտետի պարտիական կազմակերպության մասին։

Սովետական երիտասարդության հզոր բանակում սովորող երիտասարդությունը մեծ ուժ է կազմում։ Նրա կոմունիստական դաստիարակության գործը բարձրագույն ուսումնական հաստատությունների պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է։ Այն պետք է դրվի պատշաճ բարձրության վրա։

# ԲԱՐԵԼԱՎԵԼ ԿՈՈՊԵՐԱՏԻՎ ԱՌԵՎՏՈՒՐԸ

Վ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Կապիտալիստական սիստեմում արտադրության և սպառման կապը իրականացվում է տարերայնորեն գործող շուկայի, կատաղի մրցության միջոցով։ Իսկ սոցիալիզմի ժամանակ ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման օրենքի շնորհիվ արտադրության և սպառման կապը իրականացվում է պլանային կարգով, առևտրական սիստեմի պլանային գործունեության միջոցով։

Սոցիալիզմի ժամանակ ինչպես առևտրի, այնպես էլ փողի գոյությունը պայմանավորված է ապրանքների արտադրությամբ. իրենց բնույթով ու դերով դրանք արմատապես տարբերվում են կապիտալիզմի պայմաններում եղած փողից և առևտրից։ Սոցիալիզմի ժամանակ վերացված է մասնավոր առևտուրը։ Սովետական առևտրի արտադրական բազան արտադրամիջոցների հանրային սեփականությունն է, որի թողարկած ապրանքներով է հագենում սովետական առևտուրը, և որի գլխավոր խնդիրն է հասարակության նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարումը։

Սովետական առևտուրն իրականացվում է երեք հիմնական ձևերով՝ պետական, կոոպերատիվ և կոլտնտեսային։ Պետական առևտրի նյութական և դրամական միջոցները կազմում են պետական համաժողովրդական սեփականությունը։ Կոոպերատիվ առևտրի միջոցները կազմում են նրա կոոպերացված փայատերերի սեփականությունը, իսկ կոլտնտեսային առևտուրը հիմնված է կոլտնտեսային սեփականության վրա։ Սովետական առևտրի մեջ պետական առևտուրը ներկայացնում է ապրանքաշրջանառության համայնացման բարձրագույն աստիճանը և առաջատար դեր է խաղում երկրի ապրանքաշրջանառության մեջ։ Ինչպես մեծածախ, այնպես էլ մանրածախ առևտրի մեջ վճռական դերը պատկանում է պետական առևտրին։

Պետական և կոոպերատիվ առևտուրը միասին վերցրած՝ կազմում են ՍՍՌՄ-ի կազմակերպված շուկան։ Մանրածախ ապրանքաշրջանառության ճնշող մասը իրականացվում է կազմակերպված շուկայի միջոցով։

Պետական և կոոպերատիվ մանրածախ ապրանքաշրջանառության մեջ գնալով աճում է սպառողական կոոպերացիայի տեսակարար կշիռը։ Եթե 1940 թվականին այն կազմում էր 24,2 տոկոս, իսկ 1950 թվականին՝ 25,3 տոկոս, ապա 1955 թվականին հասավ մինչև 28,8 տոկոսի։

Գյուղական բնակչությունը իրեն անհրաժեշտ արդյունաբերական և արտադրական-տնտեսական նշանակություն ունեցող ապրանքները հիմնականում ձեռք է բերում սպառողական կոոպերացիայի միջոցով։ Սպառողական կոոպերացիան միաժամանակ կարևոր դեր է խաղում գյուղատնտեսական մթերքների

digitised by A.R.A.R.@

մթերման և գնման գործում։ Սպառման առարկաների նկատմամբ գյուղական բնակչության պահանջները գնալով ավելի են մոտենում քաղաքի բնակչության պահանջներին։ Միաժամանակ գյուղական առևտրի մեջ մեծանում է այնպիսի առարկաների տեսակարար կշիռը, ինչպիսիք են՝ շինանյութերը, մետաղյա գործիքները, ավտոմեքենաները, վառելանյութը և այլն։

Այսպիսով, սովետական առևտրի սիստեմի մեջ սպառողական կոոպերացիան հանդիսանում է քաղաքի ու գյուղի միջև ապրանքաշրջանառության իրականացման հիմնական ձևը։

Ռեսպուբլիկայում արդյունաբերական և գյուղատնտեսական ապրանքային արտադրության աճման հետ միասին, աճել է նաև գյուղական կոոպերատիվ առևտուրը։ Հայաստանի սպառողական կոոպերացիայի տեսակարար կշիռը պետական և կոոպերատիվ ապրանքաշրջանառության մեջ զգալի տեղ է գրավում։ Եթե 1955 թվականին այն կազմում էր 26,8 տոկոս, ապա 1956 թվականին հասավ 27,5 տոկոսի։ Ներկայումս սպառողական կոոպերացիան մեր ռեսպուբլիկայում ընդգրկում է 56 սպառողական ընկերություն, 5 սովետական տնտեսության բանկոոպ, 14 շրջկոոպ և 20 շրջանային սպառմիություն, որոնք ունեն 208 հազար փայատեր և 1897 մանրածախ առևտրական ձեռնարկություն։ Տարեցտարի մեծանում է ապրանքաշրջանառության ծավալը։ Եթե 1955 թվականի ապրանքաշրջանառության պլանը կազմում էր 884 միլիոն ռուբլի, ապա 1956 թվականին այն հասավ 899,6 միլիոն ռուբլու, իսկ 1957 թվականի ապրանքաշրջանառության պլանը լրացուցիչ առաջադրանքի հետ կազմում է մեկ միլիարդ 40 միլիոն ռուբլի։ Ռեսպուբլիկայի սպառողական կոոպերացիան 1957 թ. զգալի բեկում է մտցրել իր աշխատանքներում, որի հետևանքով անցած 10 ամիսների առաջադրանքը կատարել է 103,8 տոկոսով, կամ անցած տարում գյուղական բնակչությանը վաճառել է մոտ 192 միլիոն ռուբլով ավելի ապրանք, քան 1956 թվականի նույն ժամանակաշրջանում։ Հայկոոպի ստացած օգուտները 1957 թ. հասել են մոտ 30 միլիոն ռուբլու։ Զգալի չափով ավելացել է սպառողների համար կարևոր նշանակություն ունեցող շատ ապրանքների վաճառքը։ 1957 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, մետաքսյա գործվածքեղենի վաճառքը ավելացել է 9,3 տոկոսով, ժամացույցներինը՝ 41,5 տոկոսով, ռադիոապրանքներինը՝ 16 տոկոսով, էլեկտրական ապրանքներինը՝ 34,6 տոկոսով և այլն։ Գյուղական ազգաբնակչությանը 1956 և 1957 թվականների ընթացքում անհամեմատ ավելի շատ են վաճառվել այնպիսի ապրանքներ, ինչպիսիք են՝ լվացքի մեքենաներ, հեծանիվներ, էլեկտրասառնարաններ, տելեվիզորներ, մոտոցիկլետներ, երաժշտական գործիքներ և այլն։ Այս բոլորը վկայում են ռեսպուբլիկայի աշխատավորության եկամուտների աճի, նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման մասին։

Մեր ռեսպուբլիկայի մի շարք շրջանների սպառողական կոոպերացիաներ կարողացել են գյուղում լավ կազմակերպել առևտուրը. առևտրի շատ աշխատողներ տիրապետել են կուլտուրական առևտրի կազմակերպման տեխնիկային, որի հետևանքով հասել են բարձր ցուցանիշների։ Այդպիսիներից է Նոյեմբերյանի շրջսպառկոոպմիությունը, որը սիստեմատիկաբար կատարում է առաջադրված պլանները։ 1956 թվականին նա ապրանքաշրջանառության պլանը կատարեց 100 տոկոսով, իսկ 1957 թվականի 10 ամսվա պլանը՝ 104,9



տոկոսով։ Նոյեմբերյանի շրջսպառկոոպմիությունից ետ չեն մնում Ալավերդու, Արթիկի, Վեդիի և Սևանի շրջանների սպառողական կոոպերացիաները։

Սակայն որոշ շրջանների սպառկոոպմիություններ դեռևս չեն վերակառուցել իրենց աշխատանքը, վատ են պայքարում առևտուրը օրինակելիորեն կազմակերպելու և պլանները սիստեմատիկաբար կատարելու համար։ Աղինի, Բասարգեչարի, Հոկտեմբերյանի շրջանների սպառկոոպմիությունները չկատարեցին ո՛չ միայն 1956 թվականի, այլև 1957 թվականի անցած 10 ամիսների ապրանքաշրջանառության պլանները։

Չնայած առևտրի կազմակերպման և ընդլայնման բնագավառում ձեռք
բերած որոշ հաջողություններին, այնուամենայնիվ Հայաստանի սպառկոոպե-
րացիան 1956 թվականի ապրանքաշրջանառության պլանը կատարեց 98,3
տոկոսով։ Հայկոոպի և նրա վարչության թույլ ղեկավարության հետևանքով
1956 թվականին 2,4 միլիոն ռուբլով թերակատարվեց նաև օգուտների պլանը,
մեծ չափերի հասան դեբիտորական պարտքերը (10,2 միլիոն ռուբլի)։ Միայն
1956 թվականի ընթացքում դեբիտորական պարտքերի գումարը աճել է 2,1 մի-
լիոն ռուբլով։ Հայկոոպի կենտրոնական հաշվապահության թույլ ղեկավարու-
թյան և հսկողության հետևանքով 1957 թվականի անցած 10 ամիսների ըն-
թացքում դեբիտորական պարտքերը ո՛չ միայն չնվազեցին, այլև աճեցին՝ հաս-
նելով 16 միլիոն ռուբլու։

Ապրանքաշրջանառության մեխանիկական պլանավորման, ոչ ճիշտ ապ-
րանքավորման, ինչպես նաև առևտրի վատ կազմակերպման հետևանքով Հոկ-
տեմբերյանի, Էջմիածնի, Ախուրյանի և մի շարք այլ շրջանների սպառողա-
կան կոոպերացիաները և Երևան քաղաքի կոոպերատիվ առևտուրը չկարո-
ղացան կատարել իրենց առաջադրանքները։ Այդ գործում մեղավոր են Հայ-
կոոպի պլանային բաժինը և առևտրի կառավարչությունը։ Նրանց կողմից
առևտրի ոչ ճիշտ պլանավորումը արգելակում է ազգաբնակչության լրիվ և
անխափան մատակարարումը, առաջ է բերում աշխատավարձի և շրջանառու-
թյան այլ ծախսերի խոշոր գերածախսեր, որով թուլանում է կազմակերպու-
թյան ֆինանսական դրությունը։

Ապրանքները առևտրական կազմակերպությունների ու ձեռնարկություն-
ների միջև մեխանիկորեն բաշխելը՝ առանց հաշվի առնելու առանձին շրջան-
ների առանձնահատկությունները, առանց ուսումնասիրելու նրանց պահանջ-
մունքները, հասցնում է անցանկալի հետևանքների։ Հայաստանի սպառողա-
կան կոոպերացիայի ցանցում միայն 1956 թվականի ընթացքում գերնորմա-
տիվ ապրանքների մնացորդը աճեց 39 միլիոն ռուբլով և նախատեսված չա-
փից գերազանցեց 61 միլիոն 700 հազ. ռուբլով։ Չնայած 1957 թվականին
գերնորմատիվ ապրանքների մնացորդը նվազեց, բայց Հայկոոպի կողմից
ապրանքների բաշխումը ոչ ճիշտ պլանավորելու և առանձին շրջանների պա-
հանջմունքները անբավարար հաշվի առնելու պատճառով այդ մնացորդը նա-
խատեսված չափից գերազանցեց 49 միլիոն ռուբլով։

Ապրանքների՝ պլանից ավելի խոշոր մնացորդներ կան Ախուրյանի շրջ-
սպառկոոպում՝ 3,7 միլիոն ռուբլու, Նոր Բայազետում՝ 3,3 միլիոն ռուբլու,
Ստեփանավանի սպառկոոպմիությունում՝ 3,2 միլիոն ռուբլու, Ամասիայի
շրջկոոպում՝ 2,7 միլիոն ռուբլու և այլն։ Ապրանքների խոշոր կուտակումներ
(շուրջ 21 միլիոն ռ.) կան նաև Երևանի առևտրական բազայում և Հայկոոպ-
տնտշինառում։

digitised by A.R.A.R.@

Ապրանքների նման կուտակումները ամենից առաջ հետևանք են այն բանի, որ մեր ռեսպուբլիկայի շատ շրջանների սպառողական կոոպերացիաները ապրանքների ներմուծումը կատարում են առանց պատշաճ վերահսկողության, առանց ասորտիմենտի և որակի ստուգման և որ կարևորն է՝ առանց հաշվի առնելու շրջանի աշխատավորության պահանջները:

Ապրանքների գերնորմատիվային մնացորդի այս վիճակը բացատրվում է նաև մեր տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի կողմից ապրանքների առանձին տեսակների վատորակ թողարկումով, որոնք երկար ժամանակ մնալով առևտրական ցանցում, կորցնում են իրենց նախնական տեսքը և անպետք են դառնում վաճառքի համար: Հատկապես ցածր որակով են արտադրվում պատրաստի հագուստեղենը, գոշկեղենը, ինչպես նաև տրիկոտաժային ապրանքները:

Ապրանքների դանդաղ շրջապտույտի պատճառներից մեկն էլ Հայկոոպի առևտրական կառավարչության անբավարար աշխատանքն է: Դրա հետևանքով որոշ շրջաններում կուտակվել են ապրանքների խոշոր պաշարներ, այն դեպքում, երբ այդ ապրանքների խիստ կարիքն են զգում մյուս շրջանների առևտրական կազմակերպությունները: Օրինակ, բամբակյա գործվածքեղենի մնացորդը Իջևանի շրջսպառկոոպմիությունում 1957 թ. սկզբին 422 հազար ռուբլով պլանից ավելի էր, իսկ Արտաշատի շրջսպառկոոպմիությունում այդ ապրանքները պլանով նախատեսվածից պակաս էին 492 հազար ռուբլով: Մարտունու շրջկոոպում 1957 թվականի հունվարի 1-ի դրությամբ նախատեսված պլանից 223 հազար ռուբլուց ավելի պատրաստի հագուստեղեն կար, իսկ նրա հարևան Բասարգեչարի շրջսպառկոոպմիությունը այդ ապրանքների պակաս ուներ 547 հազար ռուբլու չափով:

Նման վիճակը Հայկոոպի սիստեմի կազմակերպություններում խիստ բացասաբար է անդրադառնում առևտրի ծավալման և վճարունակության բարձրացման վրա:

Ապրանքաշրջանառության պլանների կատարումը ամենից առաջ պայմանավորված է ապրանքային ֆոնդի լրիվ իրացումով և առևտրական ցանցում ապրանքների ռիթմիկ ներմուծումով: Չնայած այն բանին, որ Հայաստանի սպառողական կոոպերացիայում որոշ չափով բարելավվել է ապրանքային ֆոնդերի իրացումը, և 1956 թվականի ֆոնդերը ամբողջությամբ վերցրած իրացվել են 102,1 տոկոսով, սակայն այս գործում դեռևս լուրջ թերություններ կան: Մի շարք կարևոր ապրանքների ֆոնդերը իրացված են անբավարար. օրինակ՝ վուշի գործվածքեղենի ֆոնդը իրացված է 86,7 տոկոսով, մոտոցիկլետների ֆոնդը՝ 96 տոկոսով: Խիստ անբավարար է շինանյութեր մատակարարող կազմակերպությունների աշխատանքը, որի հետևանքով 1956 թվականին խոշոր չափով ետ մնաց կարևոր շինանյութերի ֆոնդերի իրացումը: Օրինակ՝ սղոցած անտառանյութի տարեկան ֆոնդի միայն 33,5 տոկոսն իրացվեց, գերանինը՝ 39,4 տոկոսը, ֆաներաներինը՝ 84,5 տոկոսը: Զգալի չափով թերակատարվեցին նաև լուսամուտի ապակու, ածխի, շինարարական մեխի և այլ ապրանքների տարեկան ֆոնդերի իրացումը: Այս ուղղությամբ վիճակը անբավարար էր նաև 1957 թվականի անցած 10 ամիսների ընթացքում, հատկապես անբավարար են իրացվել անտառանյութերի ֆոնդերը (մոտ 43 տոկոսով), որի հետևանքով մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում մեծ չափով տուժեցին շինարարական աշխատանքները, որն այնքան



անհրաժեշտ է գյուղատնտեսության առանձին ճյուղերի զարգացման համար:
Դեռևս անբավարար են իրացվում նաև կարի մեքենաների, պատրաստի հա-
գուստեղենի և մի շարք այլ ապրանքների ֆոնդերը: Հայկոոպի վարչությունը
պետք է լուրջ կերպով մտահոգվի Հայկոոպտնտշինառի և Հայկոոպի շինանյու-
թերի բաժնի աշխատանքը բարելավելու հարցով:

Գյուղական բնակչության պահանջմունքները բարելավելու և առևտրական
ձեռնարկություններում ապրանքների լայն ասորտիմենտ ապահովելու գործում
կարևոր նշանակություն ունի ապրանքների համաչափ առաքումը մատակարա-
րող կազմակերպություններին: Բայց մի շարք մատակարարող կազմակերպու-
թյուններ ժամանակին և լավորակ ապրանքներով չեն ապահովում սպառողա-
կան կոոպերացիան: Գլավտեքստիլտորգը հաճախակի խախտում է պայմանա-
գրով նախատեսված ասորտիմենտը և հրամցնում բնակչության պահանջներին
չհամապատասխանող ապրանքներ: Ապրանքները, հատկապես գործվածքե-
ղենը, հաճախակի բաց են թողնվում առանց պատշաճ փաթեթավորման, որի
հետևանքով փոխադրումների ժամանակ ապրանքները կորցնում են իրենց
նախնական տեսքն ու որակը:

Մատակարարման կարգը հաճախակի խախտվում է նաև Գլավգալանտե-
րեայի կողմից (դիրեկտոր ընկ. Քալաշյան): Մի շարք շրջաններում բնակչու-
թյունը արդարացի բողոքներ է ներկայացրել պարֆյումերային ապրանքների
բացակայության համար: Մինչդեռ Արտաշատի շրջանում նախատեսված 20
հազար ռուբլի ֆոնդի դիմաց 1957 թվականի առաջին եռամսյակում մատա-
կարարվել են 240 հազար ռուբլու պարֆյումերային ապրանքներ: Իսկ Հայ-
կոոպը թույլ պահանջկոտություն է ցուցաբերում մատակարարող կազմակեր-
պությունների նկատմամբ, առանձին դեպքերում հաշտվում է նման երևույթ-
ների հետ:

Հասարակական սննդի լավ կազմակերպումն սպառողական կոոպերա-
ցիայի կարևոր խնդիրներից մեկն է: Այն մեծ նշանակություն ունի գյուղա-
կան բնակչության նյութական դրության և կենցաղի բարելավման գործում,
տնային տնտեսության մեջ գործադրվող նվազ արտադրողական աշխատանքը
փոխարինում է ավելի արտադրողական հանրայնացված աշխատանքով, կա-
նանց ազատում է տնային տնտեսության շատ աշխատանքներից և հնարա-
վորություն տալիս մասնակցելու սոցիալիստական արտադրությանը, գյուղա-
տնտեսական աշխատանքներին և հասարակական կյանքին: Հասարակական
սնունդը հնարավորություն է տալիս ավելի ռացիոնալ ու խնայողաբար օգ-
տագործել սննդամթերքները և սննդի կազմակերպման գործը դնել գիտա-
կան հիմունքների վրա:

Սակայն շատ շրջաններում սպառողական կոոպերացիայի կազմակերպու-
թյուններն անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում հասարակական սննդի
կազմակերպմանը, որի հետևանքով 1956 թվականին հասարակական սննդի
ձեռնարկություններում ապրանքաշրջանառության պլանը կատարվեց 94,8 տոկոսով, իսկ խո-
հանոցային արտադրանքի պլանը (ճաշաբաժինների քանակով)՝ 82,9 տոկո-
սով: Սպառկոոպերացիայի հասարակական սննդի ցանցում աշխատողները ոչ
մի եզրակացություն չարեցին նախորդ տարվա ցուցանիշներից և այս տարի
շարունակում են աշխատել նույն տեմպերով. 1957 թվականի անցած 10
ամիսների պլանը կատարվեց 93 տոկոսով:

Հասարակական սննդի շրջանառության պլանների կատարման գործում

digitised by A.R.A.R.@

խիստ ետ են մնում՝ Ղափանի, Էջմիածնի, Թալինի, Սպիտակի, Սիսիանի և
այլ շրջանների սպառկոոպմիությունները։ Նման վիճակը բացատրվում է նրա-
նով, որ հասարակական սննդի ձեռնարկությունները դեռևս լրիվ չեն բավարա-
րում աշխատավորության պահանջները, պատրաստվող ճաշերը մեծ մասամբ
լինում են միատեսակ և ցածրորակ. դեռևս ճաշարաններում իրենց բարձրության
վրա չեն գտնվում սանիտարական վիճակը և սպասարկման կուլտուրան։ Այդ
է պատճառը, որ բնակչությունը վատ է կապված հասարակական սննդի ձեռ-
նարկությունների հետ։

1957 թվականի հունվարին հասարակական սննդի գծով Մոսկվայում
հրավիրված խորհրդակցությունը կոչ արեց հասարակական սննդի բնագավա-
ռի բոլոր աշխատողներին՝ արագորեն վերացնելու հասարակական սննդի
ցանցում գոյություն ունեցող թերությունները, բարձրացնելու աշխատավոր-
ների սպասարկման կուլտուրան, ամբողջապես օգտագործելու եղած սարքա-
վորումը, բարելավելու սպառողների պահանջմունքները, աշխատանքի կազ-
մակերպումը, կրճատելու վերադիր ծախսերը և կորուստները։

Հասարակական սննդի բնագավառի աշխատողների խնդիրը պետք է լինի
հաճախողներին մատուցել համեղ պատրաստված, գեղեցիկ ու ճաշակով ձևա-
վորված բազմապիսի և էժան ճաշեր ու խորտիկներ։

Սպառողական կոոպերացիայի կազմակերպությունների ամենակարևոր
խնդիրներից մեկը գյուղատնտեսական մթերքների մթերումներն ու գնում-
ներն են։

Գյուղատնտեսական մթերքների մթերման ու պետական գնման գների
բարձրացման և կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների շահագրգռվա-
ծությունը բարձրացնելու ուղղությամբ ՍՄԿՊ Կենտկոմի և Սովետական կառա-
վարության վերջին տարիների ձեռնարկած միջոցառումները խթանեցին գյու-
ղատնտեսության շեշտակի վերելքը և գյուղատնտեսական մթերքների արտա-
դրության ավելացումը։

1957 թվականի նոյեմբերի 1-ի տվյալներով, 1953 թվականի նույն ժա-
մանակաշրջանի համեմատությամբ, պետության կողմից հացահատիկի մթե-
րումներն ու գնումները կազմեցին 120 տոկոս, կարտոֆիլինը՝ 148 տոկոս,
բանջարեղենինը՝ 179 տոկոս, շաքարի ճակնդեղինը՝ 175 տոկոս, կաթինը՝ 190
տոկոս, անասունների մթերումներն ու գնումները՝ 148 տոկոս։

Գյուղատնտեսական մթերքների պարտադիր հանձնումները պակասեցնե-
լու կապակցությամբ կոլտնտեսություններն ու կոլտնտեսականները հնարա-
վորություն ստացան իրենց ապրանքային արտադրանքի զգալի մասը վաճա-
ռել պետությանը՝ բարձր գներով։ Այդ զգալի չափով բարձրացրեց կոլտնտե-
սականների կենսամակարդակը և բարենպաստ պայմաններ ստեղծեց գյուղա-
տնտեսական մթերքների մթերումների և ազատ գնումների գործը լավ կազմա-
կերպելու համար։

Գյուղատնտեսական մթերքների պետական գնումների գործում դեռ լուրջ
թերություններ կան։ Հիմնականում ետ են մնում ձվի, կարտոֆիլի, բանջարե-
ղենի, բոստանային կուլտուրաների, չոր մրգերի գնման պլանների կատարու-
մը։ Մեր ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում անհրաժեշտ ուշադրություն
չեն դարձնում մթերումների և գյուղատնտեսական մթերքների պետական գնում-
ների գործին. դա է պատճառը, որ Ստեփանավանի, Սիսիանի, Բասարգեչա-
րի, Աղիզբեկովի, Նոր Բայազետի և այլ շրջանների մթերման գրասենյակները



ո՛չ միայն չեն կատարում պետական առաջադրանքները, այլ խիստ ետ են
մնում։ Հայկոոպի մթերող կազմակերպությունները պետք է ավելի լրջորեն
զբաղվեն այդ գործով, ժամանակին պայմանագրեր կնքեն կոլտնտեսական-
ների հետ՝ պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու համար և
հետևեն պայմանագրերի կատարմանը, օրինակելիորեն կազմակերպեն հան-
դիպական վաճառքը։

Կոոպերատիվ առևտրի կարևորագույն օղակներից մեկը կոմիսիոն առև-
տրի կազմակերպումն է։ Առևտրի այս ձևը մեծ չափով բարելավում է քաղա-
քի բնակչությանը գյուղատնտեսական մթերքներ մատակարարելու գործը,
միաժամանակ մեծ չափով օգնում է կոլտնտեսություններին և կոլտնտեսա-
կաններին։ Կոմիսիոն առևտրի էությունն այն է, որ սպառողական կոոպերա-
ցիան կոմիսիոն հիմունքներով կոլտնտեսություններից և կոլտնտեսականներից
համաձայնեցված գներով ընդունի գյուղատնտեսական մթերքներ՝ կոլտնտեսա-
յին շուկայում վաճառելու համար, այն պայմանով, որ կոոպերացիային վճար-
վի կոմիսիոն վարձատրություն։ Կոմիսիոն առևտրի ծավալումը կարևոր նշա-
նակություն ունի սպեկուլյացիայի դեմ պայքարելու, կոլտնտեսությունների
արտադրական պրոցեսի նորմալ ընթացքի համար։

Վերջերս կոմիսիոն առևտրի ծավալը մեր ռեսպուբլիկայում ընդգրկում է
համարյա բոլոր քաղաքները, բանվորական ավանները և շրջանային կենտ-
րոնները։ Ներկայումս այդ առևտրով զբաղվում են Հայկոոպի բոլոր կազմա-
կերպությունները։ Վերջին երկու տարիների ընթացքում սոխի, կարտոֆիլի և
այլ մթերքների տևական վաճառքի կազմակերպումը հնարավորություն տվեց
կոլտնտեսային շուկաներում պահպանելու այդ մթերքների համեմատաբար
ցածր գներ։ Կոլտնտեսային շուկաների շրջանառության մեջ կոմիսիոն առև-
տրի ազդեցության ուժեղացումը մեծ չափով կնպաստի գների իջեցմանը և
կայունացմանը։ Սակայն սպառողական կոոպերացիայի շատ կազմակերպու-
թյուններ անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում առևտրի այս ձևի վրա,
որի հետևանքով 1956 թվականի կոմիսիոն առևտրի պլանը թերակատարվեց
5,6 տոկոսով, իսկ 1957 թվականի անցած 10 ամիսների պլանը կատարվել է
99,5 տոկոսով։ Սպառողական կոոպերացիայի մի շարք կազմակերպություն-
ներ և, հատկապես, Երևան քաղաքի կոոպերատիվ առևտուրը հաճախակի շեղ-
վում են իրենց խնդիրներից։ Նրանք գյուղատնտեսական մթերքների
գնումները շատ դեպքերում կատարում են ոչ թե տեղերում, այլ կոլտնտեսա-
յին շուկաներում։ Մինչդեռ անհրաժեշտ է այդ գործը վերակառուցել այնպես,
որ կոլտնտեսություններն ու կոլտնտեսականները ազատվեն գյուղատնտեսա-
կան մթերքների ավելցուկի իրացման հոգսից և կոոպերատիվ առևտրի միջոցով
քաղաքային բնակչությանը թարմ մթերքներ մատակարարեն։

Սպառողական կոոպերացիայի ցանցի գործունեության կարևորագույն
օղակներից մեկը կադրերի հետ տարվող աշխատանքն է, նրանց ճիշտ ընտ-
րությունն ու տեղաբաշխումը։ Ինչպես նյութական պատասխանատու անձանց,
այնպես էլ կոոպերացիայի ղեկավար աշխատանքներում գտնվող կադրերի
աճիվ և բարեխիղճ վերաբերմունքն իրենց հանձնարարված գործի նկատմամբ
կոոպերատիվ կազմակերպությունների աշխատանքների բարձրացման կարևո-
րագույն երաշխիքն է։

Ամեն տարի Երևանի կոոպերատիվ տեխնիկումը բազմաթիվ մասնագետ
կադրեր է տալիս Հայաստանի սպառողական կոոպերացիային, բացի այդ

digitised by A.R.A.R.@

Հայկոոպը կարճատև դասընթացների միջոցով պատրաստում և սպառկոոպերացիայի ցանցը համալրում է երիտասարդ կադրերով՝ վաճառողներով, խոհարարներով, հացթուխներով, հաշվապահներով, մթերողներով և այլն։

Սակայն ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում թույլ են տրվել կադրերի ընտրության և տեղաբաշխման պարտիական սկզբունքների խախտման բազմաթիվ դեպքեր, որի հետևանքով սպառողական կոոպերացիայի ցանցն են սողոսկել անցյալում չարաշահումների համար մեղադրված և վստահություն չվայելող անազնիվ մարդիկ։ Նյութական պատասխանատու կադրերի նման ընտրության և նրանց նկատմամբ թույլ հսկողություն սահմանելու հետևանքով թույլ են տրվել չարաշահման բազմաթիվ դեպքեր. միայն 1956 թվականի ընթացքում նյութական պատասխանատու աշխատանքներից հեռացվել են 317 հոգի, որից 211 հոգին պակասորդի և յուրացման համար, իսկ 1957 թվականի առաջին կիսամյակի ընթացքում նյութական պատասխանատու աշխատանքներից հեռացվել են 186 հոգի։

Շրջանային կոոպերատիվ կազմակերպությունների աշխատանքների բարելավման գործը պետք է գտնվի տեղական սովետական և պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Փաստերը ցույց են տալիս, որ այնտեղ, որտեղ պարտիայի շրջանային կոմիտեները և շրջանային Սովետի գործադիր կոմիտեները ամենօրյա օգնություն են ցույց տալիս և հսկողություն են սահմանում սպառողական կոոպերացիայի աշխատանքների վրա, շրջանային կոոպերացիայի աշխատանքները բարվոք վիճակում են։ Սակայն մեր մի շարք շրջաններում սպառողական կոոպերատիվ կազմակերպությունները խիստ ետ են մնում։ 1957 թվականի անցած 10 ամիսների ընթացքում Հոկտեմբերյանի, Ախուրյանի, Ամասիայի, Աղինի, Բասարգեչարի, Կալինինոյի և Թալինի շրջանային սպառկոոպերացիայի կազմակերպությունները 6 միլիոն 500 հազար ռուբլով թերակատարեցին ապրանքաշրջանառության պլանը. անհրաժեշտ է, որ ինչպես Հայկոոպը, այնպես էլ պարտիայի շրջանային կոմիտեներն ու շրջսովետների գործադիր կոմիտեները վճռական միջոցներ ձեռնարկեն վերոհիշյալ սպառողական կոոպերացիաների ապրանքաշրջանառության պլանները կատարելու և նրանց աշխատանքը արմատապես բարելավելու համար։

Պարտիայի շրջանային կոմիտեները չպետք է թույլ տան, որ սպառողական կոոպերացիայի ցանցը սողոսկեն այնպիսի մարդիկ, որոնք վստահություն չեն ներշնչում և նախկինում դատապարտվել են հանրային միջոցների հափշտակման և զանազան կեղծիքներ, գործարքներ ու չարաշահումներ կատարելու համար։ Կոոպերացիայի սիստեմում պետք է ընդունել ազնիվ և գործունյա աշխատողների։ Անհրաժեշտ է լայն քաղաքական-մասսայական աշխատանք ծավալել կադրերին թերությունների և չարաշահումների նկատմամբ անհաշտելիության ոգով դաստիարակելու համար։

Սպառողական կոոպերացիայի պատվավոր խնդիրը պետք է լինի բազմակողմանիորեն ուսումնասիրել և ժամանակին բավարարել գյուղական բնակչության աճող պահանջները, լայն թափ հաղորդել սովետական կուլտուրական առևտրի ծավալմանը գյուղում, որով և նպաստել սոցիալիստական գյուղատնտեսության զարգացմանը և գյուղական բնակչության բարեկեցության բարելավմանը։

---



# ԻՆՉ Է ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. ԴԱՆԻԵԼՅԱՆ**

Լենինյան մտքերի հարուստ գանձարանում ներկայումս հատուկ հետաքրքրություն են ներկայացնում կոմունիստական բարոյականության, կոմունիստական էթիկայի հարցերը։ Եվ դա, իհարկե, պատահական չէ։ Կոմունիստական բարոյականության մասին լենինյան ուսմունքը մեծ չափով նպաստեց պարտիական կյանքի լենինյան նորմերի վերականգնմանը, կոլեկտիվ ղեկավարության սկզբունքի կիրառմանը և սովետական դեմոկրատիայի հետագա զարգացմանը, այն բոլոր կարևորագույն պահանջներին, որ առաջ է քաշել ՍՄԿՊ XX համագումարը։

Բարոյականության մասին լենինյան ուսմունքի նկատմամբ հետաքրքրությունը, ինչպես նաև կոմունիստական մորալի սկզբունքների ակտիվ պրոպագանդայի անհրաժեշտությունը թելադրվում են և այլ պատճառներով։ Դրանցից կարևորագույնը պայքարն է կապիտալիզմի մնացուկների դեմ։ Սոցիալիզմի և դեմոկրատիայի երկրների դեմ իմպերիալիստական էքսպանսիայի ակտիվացումը, միջազգային լարվածությունը, ինչպես նաև մի շարք դեպքերում անհատի պաշտամունքի և նրա հաղթահարման հարցերի ոչ ճիշտ ըմբռնումը հանգեցրին իդեոլոգիայի բնագավառում անցյալի մնացուկների աշխուժացման, լենինիզմին խորթ հայացքների դրսևորման։ Այս պայմաններում բուրժուական իդեոլոգիայի դեմ պայքարելը, աշխատավորական լայն մասսաներին և, առաջին հերթին, աճող սերնդին կոմունիստական բարոյականության ոգով դաստիարակելը կարևորագույն քաղաքական խնդիր է։ Կոմունիստական բարոյականության մասին լենինյան ուսմունքը հուսալի և անփոխարինելի զենք է այդ խնդրի իրականացման գործում։

* * *

Դեռևս անցյալ դարի վերջերին բուրժուական շատ սոցիոլոգներ, մասնավորապես նարոդնիկները, փորձում էին մարքսիզմը պատկերել որպես մի ուսմունք, որը կտրականապես ժխտում է էթիկական տեսակետը։ Այս անմտությունը փաստարկվում էր այն պնդմամբ, թե մարքսիզմին իբր բնորոշ է «տնտեսական դետերմինիզմը», որը բացառում է բարոյական գնահատման ամեն մի հնարավորություն։ Մարքսիզմը, ասում էին «սուբյեկտիվ փիլիսոփաները», ժխտում է սուբյեկտի ազատ կամքը, նրան ենթարկում տնտեսական անհրաժեշտությանը, հետևապես մարքսիստները ժխտում են բարոյականությունը։

Ավելի քան կես դար անց մարքսիզմի վերաբերյալ նույն հերյուրանքները կրկնում են իմպերիալիզմի իդեոլոգները։ Ժամանակակից բուրժուական բա-

digitised by A.R.A.R.@

րոյախոսները շարունակում են մարքսիզմը մեղադրել էթիկայի ժխտման, «բարոյական արժեքների» ոչնչացման մեջ, օբյեկտիվ բարոյական արժեքները «դասակարգայինով» փոխարինելու մեջ։ Այսպես, օրինակ, անգլիական բարոյախոս Քերյու Հենթը պնդում է, թե մարքսիստները ոչնչացրել են ընդհանուր, համապարփակ սկզբունքները, վերջիններս ներկայացնելով սոսկ որպես դասակարգային շահերի արտահայտություն։ Հենթի կարծիքով մարքսիզմը դրանով իսկ ժխտում է բարոյականության բնագավառում «օբյեկտիվ ստանդարտի» գոյությունը։ Մի ուրիշ բարոյախոս սոցիոլոգ՝ ոչ անհայտ Կրոչեն, չարանենգորեն զրպարտելով մարքսիզմը, փորձում է հավատացնել, թե իբր ըստ Մարքսի բարոյականությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ դիմակ, ֆիկցիա և որ միակ ռեալությունը տնտեսական պայքարն է։ Մարքսիզմի հասցեին նման զրպարտությունները տարբեր եղանակներով կրկնում են բուրժուական շատ բարոյախոսներ, և դրանց մասին երկար խոսելը ոչ մի հետաքրքրություն չի ներկայացնում։ Այդ «քննադատության» «գիտական» քրեդոն այն պնդումն է, թե իբր դետերմինիզմը և կամքի ազատությունը, դասակարգայնությունն ու օբյեկտիվ բարոյական գնահատականը անհամատեղելի են։

Բուրժուական սոցիոլոգների այդ բոլոր անհիմն ենթադրությունները, իհարկե, ընդհանուր ոչինչ չունեն ճշմարտության հետ։ Բավական է դիմել լենինյան այն աշխատություններին, որոնց մեջ լուսաբանվում են պատմական մատերիալիզմի, հասարակական գիտակցության ձևերի և, մասնավորապես, բարոյականության հարցերը, որպեսզի դրանք լիովին հերքվեն։

Քննադատելով բուրժուական բարոյականությունը, ժխտելով բուրժուական հասարակության բարոյական արժեքները և հավիտենական ու համապարփակ լինելու նրանց հավակնությունը, մարքսիստները երբեք չեն ժխտել ո՛չ բարոյականությունը, ո՛չ նրա օբյեկտիվ բովանդակությունը և ո՛չ էլ բարոյականության որոշակի սկզբունքների ու նորմերի համընդհանուր նշանակությունը։ Հանդես գալով հասարակական կյանքի տարբեր երևույթների նկատմամբ աբստրակտ-էթիկական մոտեցման դեմ, հերքելով հավիտենական, գերմարդկային և գերդասակարգային բարոյական ուսմունքները, մարքս-լենինյան գիտությունը առաջինը ճիշտ կերպով սահմանեց նրա ծագումը, էությունն ու նշանակությունը։

Բարոյականությունը հասարակական գիտակցության հատուկ, սպեցիֆիկ ձև է, որը վերջին հաշվով արտացոլում է արտադրության պրոցեսում մարդկանց հարաբերությունները և նրանց տնտեսական շահերը։ Բարոյականության բնույթն ու էությունը պայմանավորված են տնտեսական բազիսի բնույթով, և, հետևապես, արտադրական նոր հարաբերությունների հաստատումն իր հետ բերում է բարոյական նոր հայացքներ։ Վ. Ի. Լենինը, քննադատելով մանր տնտեսության «բարոյականության» և կապիտալիզմի «անբարոյականության» վերաբերյալ նարոդնիկական թեզը, համոզիչ կերպով ցույց տվեց, որ աշխատանքի կազմակերպման յուրաքանչյուր ձևին և յուրացման սիստեմին համապատասխանում է բարոյականության որոշակի տիպ. «...Հողին ամրացված ճորտ գյուղացիների հավելյալ աշխատանքի յուրացման սիստեմն ստեղծել է ճորտատիրական բարոյականություն. նրա փոխարեն «ազատ աշխատանքի» սիստեմը, որ աշխատում է «ուրիշի օգտին», փողատիրոջ համար, ստեղծել է բուրժուական բարոյականություն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 1, էջ 492—493)։ Այն բանի հետևանքով, որ բարոյական նորմերը և սկզբունքները պատմականորեն պայմանավորված են տնտեսական կարգով, շահագործողական հասարակության մեջ չի կարող լինել համընդհանուր միասնական բարոյականություն։ Յուրաքանչյուր դասակարգ՝ իր դասակարգային շահերին համապատասխան, ունի իր բարոյական սկզբունքներն ու նորմերը (Երկեր, հ. 19, էջ 9)։



Այսպիսով, ըստ մարքսիստական դետերմինիզմի դասակարգային հասարակության մեջ գոյություն ունեն միմյանց դեմ մարտնչող տարբեր տենդենցներ, շահեր, ուղղություններ։ Դրան համապատասխան, հասարակության յուրաքանչյուր անդամ հարում է այս կամ այն տեսակետին, պաշտպանում է այս կամ այն տենդենցը, գործում է այս կամ այն դասակարգի օգտին։

Բուրժուական իդեոլոգները կամքի ազատության մասին դատողություններով ըստ էության քողարկում են օբյեկտիվորեն գոյություն ունեցող օրինաչափությունների ժխտումը, փակում մարդկային անհատի ազատագրման ռեալ ուղիները։ Մարդու կամքի իսկական ազատությունը, բանականությունը, խիղճը երևան են գալիս հենց վարքագծի ճիշտ ընտրության մեջ, իսկ այդպիսի ընտրություն հնարավոր է միայն պատմական դետերմինիզմի հողի վրա, այս կամ այն հասարակության տնտեսական հիմնական օրինաչափությունների, հասարակական զարգացման տենդենցների ու դասակարգային ուժերի փոխհարաբերությունների ուսումնասիրության դեպքում։ «Դետերմինիզմի իդեան՝ մարդկային արարքների անհրաժեշտությունը սահմանելով, ժխտելով կամքի ազատության անմիտ հեքիաթը՝ ամենևին չի ոչնչացնում մարդու ո՛չ բանականությունը, ո՛չ խիղճը, ո՛չ էլ նրա գործողությունների գնահատությունը։ Բոլորովին հակառակը, միայն դետերմինիստական հայացքի ժամանակ է հնարավոր խիստ ու ճիշտ գնահատությունը և ոչ թե ամեն ինչի բարդումն ազատ կամքի վրա» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 1, էջ 187)։ Մի կողմից բարոյական նորմերի ու սկզբունքների նկատմամբ դասակարգային մոտեցումը և, մյուս կողմից՝ օբյեկտիվ (բացարձակ և հարաբերական) ճշմարտության մասին մարքս-լենինյան ուսմունքը հնարավորություն են տալիս սահմանելու բարոյականության այս կամ այն տիպի օբյեկտիվ ճշմարտացիությունը։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ խոսքը վերաբերում է բարոյական նորմերի բովանդակությանը և ոչ թե նրանց լեզվական արտահայտությանը։ «Մի՛ գողացիր» միևնույն (ըստ ձևի) բարոյական սկզբունքը կարող է արտահայտել և՛ մասնավոր սեփականության անձեռնմխելիությունը (կապիտալիզմ), և՛ սոցիալիստական սեփականության անձեռնմխելիությունը։

Ինչպես չկան բարոյականության հավերժական նորմեր, այնպես էլ չկան հավիտենական ճշմարտություններ։ Սակայն բարոյականության դասակարգային տիպերում, որոնք իրենց բնույթով հարաբերական են, այնուամենայնիվ, կա օբյեկտիվ բովանդակություն, որի հիման վրա կարելի է պարզաբանել բարոյական նորմերի ու սկզբունքների իսկությունն ու կեղծությունը։

Իր դարն ապրած դասակարգի բարոյական նորմերը կեղծ են, որովհետև դրանք արտացոլում են հասարակության զարգացման երեկվա օրը և հակասում նրա հետագա առաջադիմության օբյեկտիվ պահանջներին։ Այսպես, օրինակ, քրիստոնեական մորալի «մի՛ սպանիր» պատվիրանը, որը կեղծ կերպով քարոզում է բուրժուազիան, չի կարող լինել ճշմարիտ, երբ հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների թելադրմամբ բուրժուազիայի իշխանության բռնի տապալումը դառնում է պատմական անհրաժեշտություն։



digitised by A.R.A.R.@

Մինչդեռ, այն դասակարգի բարոյականությունը, որն արտահայտում է հա-
սարակության զարգացման կենսական ձգտումները, հանդիսանում է բարո-
յականության գոյություն ունեցող բոլոր տիպերից ամենից ճշմարիտը: Պրո-
լետարական բարոյականությունը օբյեկտիվորեն ճշմարիտ է հենց այն պատ-
ճառով, որ նա պատմության տրամաբանությամբ արտահայտում է այն դա-
սակարգի շահերը, որը կոչված է լուծելու հասարակության զարգացման հա-
սունացած խնդիրները: Այսպիսով, պրոլետարական բարոյականության դասա-
կարգայնությունը ո՛չ միայն չի հակասում նրա օբյեկտիվ ճշմարտացիությա-
նը, այլ, ընդհակառակը, այդ բարոյականության օբյեկտիվ ճշմարտացիու-
թյունը բխում է նրա դասակարգայնությունից:

Այդ պատճառով էլ Լենինը դեռևս իր վաղ աշխատություններից մեկում
գրել է, որ «մարքսիզմը թեորիական տեսակետից՝ «էթիկական տեսակետը»
ենթարկում է «պատճառականության սկզբունքին», գործնական տեսակետից՝
նա էթիկան հանգեցնում է դասակարգային պայքարին» (Երկեր, հ. 1, էջ
545): Լենինը կոմունիստական բարոյականության հասկացությունը պարզ ու
որոշակի կապում է պրոլետարիատի դասակարգային պայքարի շահերի, սո-
ցիալիզմի ու կոմունիզմի կառուցման խնդիրների հետ: «Մեզ համար բարո-
յականությունը,— ասել է նա կոմերիտմիության III համագումարում ունեցած
հռչակավոր ելույթում,— ենթարկված է պրոլետարիատի դասակարգային պայ-
քարի շահերին: Մեր բարոյականությունը բխում է պրոլետարիատի դասակար-
գային պայքարի շահերից» (Երկեր, հ. 31, էջ 355):

Վկայակոչելով բարոյական գնահատման մարքսիստական այս չափանիշը,
բուրժուական իդեոլոգները, շարունակելով իրենց զրպարտությունը, փորձում
են կոմունիստական բարոյականությանը վերագրել «նպատակը արդարացնում
է միջոցը» սկզբունքը, սկզբունք, որն իր էությամբ խորապես թշնամական է
մարքսիզմ-լենինիզմին:

Մարքսիզմ-լենինիզմը իրոք գտնում է, որ նպատակի որոշումը հանդիսա-
նում է բարոյական գնահատման ամենագլխավոր պայմանը: Եթե վարմունքի
նպատակը կեղծ է և անազնիվ, ապա այդ նպատակին հասնելու ամեն մի
միջոց էլ անպայման անբարոյական է: Այսպես, օրինակ, կապիտալիստական
շահագործումը բարոյական առումով չարիք է և, հետևապես, նրա իրականաց-
ման ամեն մի միջոց անպայման անբարոյական է: Համաձայն Վլադիմիր
Իլյիչի, ազնիվ, ճշմարիտ նպատակը բարոյական գործունեության հիմնական
պայմանն է:

Ինչպես հայտնի է, կոմունիստական բարոյականության նպատակը կո-
մունիզմի հաղթանակն է, իսկ այդ նպատակն անպայման ունի դրական և
համընդհանուր բնույթ: Կոմունիստական հասարակությունը, որի կառուցման
համար մղվող պայքարում բանվոր դասակարգն իր շուրջն է համախմբում
աշխատավորներին, բարձրագույն տիպի հասարակություն է: Նրանում լիովին
իրականանում են ողջ աշխատավոր մարդկության դարավոր ձգտումներն ու իղ-
ձերը, սոցիալական արդարություն հաստատելու նրա երազանքները:

Միանգամայն ակնհայտ է, որ կոմունիստական իդեալի դրական և հա-
մընդհանուր բնույթը թույլ չի տալիս արդարացնելու այդ իդեալին հասնելու
ամեն մի միջոց: Մաքուր գործը չի կարելի կատարել կեղտոտ ձեռքերով: Վսեմ,
իրոք հումանիստական նպատակի հասնելու համար անհրաժեշտ է հետևել
բարոյական բարձր սկզբունքների և ունենալ մարդկային լավագույն հատկա-



նիշներ: Կոմունիստական բարոյականության բուն էությունը բացառում է
ստոր և անազնիվ միջոցները, ուստի և «նպատակը արդարացնում է միջոցը»
սկզբունքը մարքսիստական էթիկային վերագրելը հերյուրանք է:

Միաժամանակ, նպատակի և միջոցների փոխհարաբերության մասին
մարքս-լենինյան հարցադրումը խորապես դիալեկտիկական է: Բնավ չարդա-
րացնելով ամեն մի միջոցի կիրառումը կոմունիստական նպատակին հասնելու
համար, այդպիսի հարցադրումը կոմունիստական բարոյականությունը զերծ
է պահում վերացականությունից և դոգմատիզմից: Դասակարգային թշնամուն
ասել «ճշմարտությունը», դրանով իսկ մատնելով աշխատավորների ազատա-
գրման մեծ գործը, մարքսիստական էթիկան համարում է անբարոյական
արարք, որովհետև կոմունիստի համար գոյություն ունի բարձրագույն ճշմար-
տություն, կոմունիզմի ճշմարտությունը, հանուն որի բարոյական է միայն
դասակարգային թշնամու դեմ մղվող պայքարը:

***

Կոմունիստական բարոյականությունը իր բնույթով խորապես գործուն է:
Պրոլետարական ռևոլյուցիայի մեծ առաջնորդ և աշխարհում առաջին սոցիա-
լիստական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինին մեծապես հետաքրքրել
է կոմունիստական բարոյականության հասարակական-քաղաքական նշանա-
կությունը: Բարոյական պրակտիկան, կոմունիստական բարոյականության
նորմերը, կոմունիստի բարոյական հատկությունները հանդիսացել են Վլադի-
միր Իլյիչի սևեռուն ուշադրության առարկան և խորապես լուսաբանվել են
նրա երկերում:

Պրակտիկան մեզ ակնբախորեն համոզում է, որ մարդկանց բարոյական
հատկությունները նույնպիսի կարևոր նշանակություն ունեն, ինչպես և քաղա-
քական հատկությունները: Չէ որ բարոյականությունը ի հայտ է գալիս մար-
դու ամենօրյա կյանքում և նրա կենցաղում, նրա աշխատանքային, հասարա-
կական-քաղաքական և կուլտուրական գործունեության մեջ:

Հայտնի է, որ բուրժուական էթիկան հատուկ կրքոտությամբ զարգացնում
է այն թեզը, թե մարդու հասարակական պրակտիկան չի ենթարկվում բարո-
յական գնահատման, թե ավելորդ և վտանգավոր է հաշվի առնել բարոյական
որևէ նորմ, երբ խոսքը վերաբերում է քաղաքականությանը կամ բիզնեսին.
«քաղաքականությունը քաղաքականություն է» և «բիզնեսը՝ բիզնես», ուստի
կեղտոտ քաղաքականության կամ անազնիվ բիզնեսի առթիվ ամեն մի բարո-
յական մրդովմունք անտեղի է և որևէ իմաստից զուրկ:

Բարոյական ճշմարտության երկիմաստությունը հատուկ է բուրժուական
բարոյականությանը, որը կեղծիքի և երկերեսանիության դրսևորումներից մեկն
է: Բուրժուական բարոյականության համար նման խորամանկությունն ան-
հրաժեշտ է, որովհետև կապիտալիզմի հասարակական պրակտիկան իր
էությամբ անբարոյական է:

Մարքսիստական էթիկան կատեգորիկ կերպով ժխտում է բարոյական
ճշմարտության «երկիմաստության» մասին բուրժուական թեզը: Կոմունիստա-
կան բարոյականության մեջ անձնական և հասարակական կյանքի բարոյա-
կան նորմերը միմյանց չեն հակասում, նրանք ենթակա են միևնույն չափա-
նիշին, հասարակական շահերին, մարդկային գործունեության հասարակական
օգտակարության և նշանակության չափանիշին:

digitised by A.R.A.R.@

Բարոյական կատեգորիաները՝ խիղճը, պարտքը, ազնվությունը, սպեցիֆիկ են. դրանք չի կարելի ձուլել հասարակական գիտակցության մյուս ձևերի կատեգորիաների մեջ: Ուստի, հանգամանորեն կանգ չառնելով այդ հարցի վրա, պետք է ընդգծել, որ բարոյական կատեգորիաները, իրենց ամբողջ սպեցիֆիկությամբ հանդերձ, ունեն հասարակական-քաղաքական խոր նշանակություն, որը դրսևորվում է թե՛ հասարակական, թե՛ անձնական կյանքում: Կոմունիստական բարոյականության հենց այդ կողմը բազմիցս ընդգծել է Վ. Ի. Լենինը: Այսպես, օրինակ, բանավիճելով «Рабочая Мысль»-ի խմբագիրների հետ, որոնք գանգատվում էին, թե ռուս սոցիալ-դեմոկրատները ոչ-ընկերական վերաբերմունք են ցույց տվել, Վլադիմիր Իլյիչը գրել է. «Մենք ընդունում ենք ընկերական պարտքը, բոլոր ընկերներին աջակցելու պարտքը, ընկերների կարծիքների նկատմամբ համբերատարության պարտքը, բայց մեզ համար ընկերական պարտքը բխում է ռուսական և միջազգային սոցիալ-դեմոկրատիայի հանդեպ ունեցած պարտքից, և ոչ թե ընդհակառակը: Մենք ընդունում ենք ընկերական պարտականություններ «Раб. Мысль»-ի հանդեպ ոչ թե այն պատճառով, որ նրա խմբագիրները մեր ընկերներն են, այլ «Раб. Мысль»-ի խմբագիրներին մեր ընկերներն ենք համարում միայն այն պատճառով և այն չափով, ինչ չափով որ նրանք աշխատում են ռուսական (հետևաբար և՛ միջազգային) սոցիալ-դեմոկրատիայի շարքերում» (Երկեր, հ. 4, էջ 335—336):

Բարոյական բոլոր կատեգորիաները, ինչպիսիք են՝ խիղճը, ազնվությունը և պարտքը, ունեն հասարակական-քաղաքական մեծ նշանակություն և միատեսակ չափով երևան են գալիս ինչպես հասարակական, այնպես էլ անձնական կյանքում: Բայց պետք է հաշվի առնել, որ մարդու գործունեության այդ երկու ոլորտների տարբերության պատճառով այդ կատեգորիաների դրսևորումներն էլ տարբեր են: Այնպիսի բարոյական կատեգորիա, ինչպիսին է, օրինակ, խիղճը, անձնական կյանքում՝ ընկերոջ, կնոջ, ընտանիքի նկատմամբ հանդես է գալիս մի ձևով, իսկ հասարակական կյանքում՝ Հայրենիքի, սեփականության, դասակարգի, պարտիայի նկատմամբ՝ մի այլ ձևով:

Բայց մարդու խիղճն իր էությամբ չի կարող և չպետք է լինի հակասական, երկիմաստ: Ինչպես հասարակական, այնպես էլ անձնական կյանքում (այս վերջին դեպքում, իհարկե, ավելի միջնորդավորված ձևով) մարդու խղճի գնահատման վերաբերմամբ կիրառելի է միևնույն չափանիշը՝ պայքարը կոմունիզմի հաղթանակի համար:

Այսպիսով, մարդու բարոյական սկզբունքների մասին կարելի է դատել միայն նրա հասարակական-քաղաքական գործունեության հիման վրա: Բայց միևնույն ժամանակ այս կամ այն անձնավորության հասարակական-քաղաքական գործունեության ուղղությունը մեծ չափով կախված է տվյալ անձի բարոյական կերպարից, բնավորության անձնական հատկություններից: Այն մարդը, որը ինտերնացիոնալիստ է, հայրենասեր, կոլեկտիվը սիրող, համեստ, ազնիվ, աշխատասեր ու հետևողական է, միշտ ձգտում է գործել հօգուտ հասարակության և աշխատավոր ժողովրդի շահերի: Ի հակադրություն դրա, այն մարդը, որը չի ազատվել ինդիվիդուալիզմի և նացիոնալիզմի մնացուկներից, ինքնագոհ մեծամտությունից, հաճախ օբյեկտիվորեն վնաս է բերում աշխատավորության շահերին ու կոմունիզմի գործին:

Վ. Ի. Լենինը միշտ լուրջ նշանակություն է տվել մարդկանց անձնական հատկանիշներին, նրանց բարոյական կերպարին: Այսպես, օրինակ, պարտիական և կառավարական ղեկավար պաշտոնում այս կամ այն թեկնածուի առաջադրման հարցը քննության առնելով, Վլադիմիր Իլյիչը սովորեցնում էր ուշադրությամբ խորամուխ լինել թեկնածուի անձնական հատկանիշներին: Նա արդարացիորեն գտնում էր, որ ղեկավարի անձնական հատկությունները որոշակի պայմաններում կարող են հասցնել այնպիսի սխալների, որոնք այնքան ավելի մեծ արձագանք կտան, որքան պատասխանատու է այս կամ այն ղեկավարի գրաված պոստը:

digitised by A.R.A.R.@



Վ. Ի. Լենինը գտնում էր, որ կոմունիստի, ղեկավարի, առաջնորդի իսկական բարոյական հեղինակությունը բացառիկ կարևոր է աշխատավորների պայքարում, երկրի ղեկավարման գործում: Բնութագրելով ղեկավար — առաջնորդի բարոյական հեղինակությունն ու նրա նշանակությունը, Վլադիմիր Իլյիչը գրել է. «Այն եռուն պայքարում, ինչպիսին հանդիսանում է ռևոլյուցիան, այն հատուկ պոստում, որի վրա կանգնած է ամեն մի ռևոլյուցիոներ... հսկայական նշանակություն ունի խոշոր, պայքարի ընթացքում նվաճված, անվիճելիորեն անառարկելի բարոյական հեղինակությունը, հեղինակություն, որ, իհարկե, իր ուժը քաղում է ոչ թե վերացական բարոյականությունից, այլ ռևոլյուցիոն մարտիկի բարոյականությունից, ռևոլյուցիոն մասսաների շարքերի և տողանների բարոյականությունից» (Երկեր, հ. 29, էջ 95):

Այդպիսի բարոյական հեղինակություն ունեցող ռևոլյուցիոն առաջնորդ Վ. Ի. Լենինը համարում էր Յա. Մ. Սվերդլովին:

Վ. Ի. Լենինն ինքը իրոք այն մեծագույն մարդկանցից մեկն էր, որի մեջ զուգակցված էին հանճարեղ միտքը, մասսաների ռևոլյուցիոն ղեկավարի ու կազմակերպչի տաղանդը և բարոյական անբասիր մաքրությունն ու ուժը, որոնք նրան հնարավորություն տվեցին առաջին սոցիալիստական ռևոլյուցիայի դժվարին իրադրության պայմաններում բացառիկ հեղինակություն վայելելու ամբողջ աշխատավոր մարդկության շրջանում, բոլոր նրանց շրջանում, ովքեր նվիրված են սոցիալիստական ռևոլյուցիայի և կոմունիզմի գործին:

Կոլեկտիվիզմի, ինտերնացիոնալիզմի, ինչպես նաև աշխատանքի, սեփականության, պրոլետարական հումանիզմի, ընտանիքի, ամուսնության նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքի հարցերը բազմակողմանի ու լիովին պարզաբանված են Լենինի աշխատություններում: Մշակելով և շարադրելով այդ հարցերը, ռեալ իրականության մեջ ուսումնասիրելով կոմունիստական բարոյականության առանձնահատկությունները, ձգտելով ներգործել սոցիալիզմ կառուցող սերնդի վրա, օժանդակելով նրա դաստիարակությանը կոմունիզմի ոգով, Վ. Ի. Լենինը անխնա պայքար էր մղում անցյալի տրադիցիաների, սովորույթների դեմ: Մարդկանց գիտակցության և բարքերի մեջ գոյություն ունեցող անցյալի մնացուկների դեմ Լենինի մղած պայքարը մինչև օրս էլ չի կորցրել իր այժմեականությունը, ուստի և այդ հարցին անհրաժեշտ է հատկապես անդրադառնալ:

Հասարակության զարգացման մեջ անցյալի մնացուկների, այսինքն՝ կործանվողի այս կամ այն կողմերի, մնացորդների, ռեցիդիվների հաղթահարումը վեր ելնող դասակարգի կողմից՝ օրինաչափ և անխուսափելի երևույթ է: Վ. Ի. Լենինը մատնանշել է, որ պատմության մեջ երբեք չի պատահել, որ արտադրության նոր եղանակը կենսագործվի առանց արգելքների և սխալների:

Սոցիալիստական ռևոլյուցիան և սոցիալիստական արտադրական հարաբերությունների հաղթանակը բացառություն չեն կազմում այս ընդհանուր օրի-

նաչափությունից։ Անցյալի մնացուկները, կապիտալիզմի մնացուկները պահպանվում են նաև սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից հետո։ Դա բնական է, որովհետև բանվոր դասակարգը, ինչպես գրել է Վ. Ի. Լենինը, կապիտալիստական հասարակությունից չինական պարսպով անջատված չէ։ «Երբ վրա է հասնում ռևոլյուցիան, գործն այնպես չի կատարվում, ինչպես պատահում է առանձին անձի մահվան հետ, երբ մեռածը դուրս է տարվում։ Երբ մահանում է հին հասարակությունը, նրա դիակը չի կարելի ամփոփել դագաղի մեջ և դնել գերեզման։ Նա քայքայվում է մեր միջավայրում, այդ դիակը նեխում և վարակում է հենց մեզ» (Երկեր, հ. 27, էջ 540)։

Անցյալի մնացուկներից առավել կայուն են գաղափարական մնացուկները։ Ինչպես հայտնի է, գիտակցությունը հարաբերական ինքնուրույնություն ունի նյութական բազիսի նկատմամբ, որ օրինաչափ երևույթ է հասարակության զարգացման պատմության մեջ։ Այդ օրինաչափության շնորհիվ գիտակցությունը, նրա որոշակի ձևերն ու դրսևորումները գոյությունը պահպանում են իրենց ծնունդ տված բազիսից ավելի երկար, պահպանվում են այս կամ այն հայացքների, նորմերի, սովորույթների ու տրադիցիաների ձևով։

Մեր երկրում սոցիալիստական արտադրահարաբերությունների հաղթանակը հիմք հանդիսացավ կոմունիստական բարոյականության հաստատման համար։ Բայց դա չի նշանակում, թե մեր երկրում կապիտալիստական բարոյականության մնացուկները հաղթահարված են։ Դրանք, դժբախտաբար, տարբեր ձևերով դեռևս դրսևորվում են արտադրական և հասարակական, անձնական և ընտանեկան կյանքում։

Սոցիալիզմը՝ որպես տնտեսական և հասարակական կյանքի որոշակի սիստեմ, անցյալի մնացուկներ չի ծնում և չի կարող ծնել։ Գիտակցության բնագավառում եղած մնացուկները հենց այն պատճառով են մնացուկներ համարվում, որ նրանք սոցիալիստական կարգի ծնունդ չեն, այլ նրա օրոք պահպանվել են իբրև կապիտալիզմի ծանր ժառանգություն։ Նրանք չեն կարող չլինել, որովհետև սոցիալիզմը աճում է «անմիջականորեն կապիտալիզմից», հանդիսանում է կոմունիստական հասարակության զարգացման ցածր աստիճանը և որպես այդպիսին ենթադրում է մնացուկային երևույթների գոյությունը կապիտալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում։

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ անցյալի տրադիցիաների և մնացուկների հաղթահարումը կոմունիստական հասարակության ստորին փուլի կարևորագույն խնդիրներից մեկն է։ Պետք է ասել նաև, որ մեր իրականության մեջ տեղ գտած առանձին սխալները, թերությունները նպաստում են այս կամ այն մնացուկի աշխուժացմանը մարդկանց գիտակցության մեջ։ Բայց չէ՞ որ այդ սխալներն ու թերությունները հակասում են սոցիալիստական սիստեմին, կապված են սոցիալիզմի սկզբունքների խախտման հետ, այսինքն՝ այդ մնացուկներն աշխուժանում են ոչ թե սոցիալիզմի սկզբունքների հիման վրա, այլ հակառակ դրանց։ Ուստի այն տեսակետը, թե իբր սոցիալիստական սիստեմը ծնում է բացասական, մնացուկային երևույթներ, խորապես սխալ է և չի դիմանում որևէ քննադատության։

Անցյալի մնացուկների աշխուժացման գլխավոր պատճառներից մեկը կապիտալիստական երկրների գոյությունն է։ Միջազգային կյանքի վերջին իրադարձությունները, սոցիալիզմի դեմ իմպերիալիստական պետությունների քայքայիչ և լրտեսական գործունեության ակտիվացումը ժողովուրդներին կրկին



ու կրկին հիշեցնում են, որ կապիտալիստները երբեք չեն դադարեցնի իրենց պայքարը սոցիալիզմի ու դեմոկրատիայի երկրների լագերի դեմ։ Փորձը հաստատում է լենինյան այն դրույթը, որ սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների խաղաղ գոյակցության սկզբունքը երբևիցե չի հանդուրժում զգոնության բթացում։ Կոմունիստական իդեոլոգիայի մեջ խորթ հայացքների ու սկզբունքների ներթափանցման դեմ մղվող պայքարը շարունակում է մնալ բոլոր երկրների կոմունիստների հիմնական խնդիրներից մեկը։

Ինչպես հայտնի է, ներկայումս անցյալի մնացուկներից առանձնապես մեծ վտանգ են ներկայացնում բուրժուական նացիոնալիզմի մնացուկները։ Այդ բացատրվում է նրանով, որ իմպերիալիստական ռեակցիան, օգտագործելով այդ հարցում անցյալում թույլ տրված սխալները, ձգտում է մարդկանց ազգային զգացմունքներն օգտագործել կենդանացնելու համար ազգային նախապաշարմունքները, փորձում է ազգային երկպառակություն սերմանել։ Այդ իրադրության մեջ կոմունիստական շարժման համար միատեսակ վտանգ են ներկայացնում ինչպես ազգային զգացմունքները ոտնահարող և փոքր ազգերի ազգային արժանիքները նվաստացնող մեծապետական շովինիզմը, այնպես էլ տեղական նացիոնալիզմը։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը, որն արտահայտում է բոլոր ազգերի աշխատավորների շահերի ընդհանրությունը ընդդեմ գլխավոր թշնամու՝ բուրժուազիայի, և որը հիմնված է մեծ ու փոքր բոլոր ազգերի փոխադարձ հարգանքի և իրավահավասարության վրա, եղել է և մնում է կոմունիստական բարոյականության հիմնական սկզբունքը։

Խորապես գիտակցելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի նշանակությունը, բոլոր երկրների կոմունիստներն անդուլ կերպով պայքարում են ազգային հարցում անցյալի մնացուկների վերացման համար։ Մոսկվայի խորհրդակցությունում ընդունած իրենց Դեկլարացիայում կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչները հատկապես շեշտել են այդ պայքարի նշանակությունը։ «Սոցիալիզմի երկրների եղբայրական հարաբերությունների և բարեկամության ամրապնդման համար,— ասված է Դեկլարացիայում,— անհրաժեշտ է կոմունիստական ու բանվորական պարտիաների մարքս-լենինյան ինտերնացիոնալիստական քաղաքականություն, անհրաժեշտ է բոլոր աշխատավորներին դաստիարակել ինտերնացիոնալիզմը հայրենասիրության հետ զուգորդելու ոգով, վճռաբար պայքարել բուրժուական նացիոնալիզմի և շովինիզմի մնացուկների հաղթահարման համար»։

Պարտիան և կառավարությունը վերջին ժամանակներս մի շարք միջոցառումներ անցկացրին, որոնք ուղղված են մեր կյանքում եղած թերությունների վերացման նպատակին։ Դա ուժեղացնում է այն օբյեկտիվ պայմանները, որոնք անհրաժեշտ են բարոյականության բնագավառում անցյալի մնացուկների դեմ ավելի հաջող պայքարելու համար։

Սոցիալիստական հումանիզմի սկզբունքների զարգացման նպատակին է ծառայում սոցիալիստական օրինականության խախտումների դեմ մղվող պայքարը, խախտումներ, որոնք տեղ էին գտել անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում։ Աշխատանքի նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքի հետագա ամրապնդմանը նպաստում է նյութական շահագրգռվածության, աշխատավարձի կարգավորման և այլ հարցերում լենինյան սկզբունքների անշեղ կիրառումը։

Բանն այն է, որ նոր հասարակարգի հաղթանակի հետևանքով կամ նրա

digitised by A.R.A.R.@

ամրապնդման պրոցեսում անցյալի մնացուկներն ինքնին, ավտոմատիկ կերպով չեն լիկվիդացվում։ Իհարկե, սոցիալիզմի հաղթանակը առաջին և վճռական պայմանն է կապիտալիզմի մնացուկների դեմ պայքարելու համար։ Բայց նույնիսկ պրոլետարները, գրել է Վ. Ի. Լենինը, մանր-բուրժուական նախապաշարմունքներից ազատագրվում են ո՛չ թե միանգամից, ո՛չ թե հրաշքով, ո՛չ թե աստվածամոր հրամանով, ո՛չ թե լոզունգի, ռեզոլյուցիայի օրենքի հրամանով, այլ մանր-բուրժուական ազդեցությունների դեմ տարվող երկարատև ու համառ պայքարի միջոցով։

Փորձը ցույց է տալիս, որ քաղաքական-դաստիարակչական աշխատանքի թուլացումը, կոմունիստական դաստիարակության հարցերում ինքնահոսը հանգեցնում են խորթ հայացքների ու ազդեցությունների ներթափանցման, կոմունիստական բարոյականության նորմերի խախտման։ Դաստիարակությունը խոսքով և գործով, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հումանիզմի, հայրենասիրության և կոլեկտիվիզմի, աշխատանքի նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքի ու հասարակական պարտքի բարձր զգացմունքի սկզբունքների սերմանումը լուրջ նշանակություն ունի մեր հասարակության զարգացման համար։

Աշխատանքի նոր կարգապահություն ստեղծել, մարդկանց միջև հասարակական կապի նոր ձևեր ստեղծել, մարդկանց աշխատանքի ներգրավելու նոր ձևեր ու պրիոմներ ստեղծել — դա շատ տարիների և տասնամյակների աշխատանք է, գրել է Վ. Ի. Լենինը 1920 թվականին։

«Դա շատ շնորհակալ և շատ ազնիվ աշխատանք է։

Մենք երջանիկ ենք, որ տապալելով բուրժուազիային և ճնշելով նրա դիմադրությունը, մենք կարողացանք մեզ համար նվաճել հող, որի վրա այդպիսի աշխատանքը **հնարավոր դարձավ**» (Երկեր, հ. 30, էջ 662)։

Անցյալի մնացուկների դեմ մղվող պայքարում անհրաժեշտ է մեր հասարակայնության բոլոր ուժերի լուրջ մոբիլիզացում։

Կոմունիստական իդեալը, որին ձգտում ենք մենք, իրականացվում է վեհ զգացմունքներով ու մաքուր խղճով տոգորված միլիոնավոր մարդկանց միջոցով։



## ՄԻ ԴՐՎԱԳ ԿԱՄՈՅԻ ԿՅԱՆՔԻՑ

ԹԱՄԱՐԱ ՄԱՅՍՈՒՐԱՁԵ

1907 թվականին Թբիլիսիի Երևանյան հրապարակում ընկ. Կամոն հարձակում գործեց փոստի վրա և բռնագրավեց երկու հարյուր հիսուն հազար ռուբլի և հենց ինքն էլ ամբողջ գումարը տարավ Ֆինլանդիա ու լրիվ հանձնեց պարտիական կենտրոնին։

Այս «հանցագործության» համար Կամոն դատապարտվեց մահապատժի։ Նա եղավ արտասահմանում, խելագար ձևացավ, բայց հետո նրան հանձնեցին ռուսական կառավարությանը և այստեղ ստուգման համար տեղավորեցին Թբիլիսիի հոգեբուժական հիվանդանոցում։

1911 թվականին կազմակերպվեց Կամոյի փախուստը հիվանդանոցից, և գիշեր ժամանակ նրան բերին մեր տուն։ Իմ ծնողները նրան ընդունեցին ու երկու շաբաթից ավելի թաքցրին մեզ մոտ։ Այդ ժամանակամիջոցում նախապատրաստվում էր նրա փախուստն արտասահման։ Նկատի ունենալով, որ ոստիկանության գործակալները Թբիլիսի կայարանից մեկնող բոլոր մարդկանց ստուգում էին՝ համեմատելով Կամոյի լուսանկարի հետ, որոշվել էր նրան ուղարկել Մցխեթ կայարանից, իսկ դրա համար նա պետք է խճուղով գնար մինչև Մցխեթ։

Իմ ծնողները գնեցին մի հեծանիվ, մի նոր կոստյում, որի կոճակների տեղ մայրս մի-մի ոսկի տասը ռուբլիանոց կարեց, հետո կեղծամ ճարեցին, և Կամոն, կերպարանափոխվելով, այդ հեծանիվով հասավ Մցխեթ։ Այնտեղ արդեն նրա համար գնացքի տոմս էր գնված, և, այսպիսով, նա հաջողությամբ անցավ արտասահման։

Մոտավորապես մեկ տարի անց նա վերադարձավ Թբիլիսի և եկավ ուղիղ մեզ մոտ։ Ծնողներս նրան ընդունեցին, և նա սկսեց մեզ մոտ ապրել խիստ գաղտնի։

Շուտով Կամոն մեզ մոտ բերեց նաև իր մոտիկ ընկերներին՝ Գիգո Մատիաշվիլուն, որ ձեռքի նռնակներ պատրաստելու մասնագետ էր, Իվան Մայսուրաձեին, որ մեզ ամենևին ազգական չէր և Սամուիլ Կուպրաշվիլուն։ Այդ չորսն էլ սկսեցին գաղտնի ապրել մեզ մոտ երկու տարի շարունակ, իմ ծնողների ծախսով. Նրանց տրվում էր սնունդ, հագուստ, կոշիկ և փող՝ ձեռքի ծախսի համար, ինչպես և կազմակերպության կարիքների համար։

Մեզ մոտ գալուն պես ընկ. Կամոն կազմակերպեց նռնակներ պատրաստելու գործը, պատրաստում էին նաև կեղծ անձնագրեր, գումարում էին գաղտնի ժողովներ և այլն։

Վախենալով, թե ամբողջ գաղտնիքը կբացվի, մեր տանը ծառայող կինն արձակվեց, և ամբողջ աշխատանքը՝ ճաշ ու ընթրիք պատրաստելը, լվացքը, տանը մաքրելը ամեն ինչ ընկավ մորս վրա, և ես նրա միակ օգնականն էի,

digitised by A.R.A.R.@

որովհետև նա վախենում էր ուրիշ որևէ մեկին օգնության կանչել։ Աշխատան-
քը բավական շատ էր, որովհետև այժմ հարկավոր էր սպասարկել արդեն ինը
հոգուց բաղկացած ընտանիքին։ Այն ժամանակ ես տասնմեկ տարեկան էի և
կատարում էի ընկ. Կամոյի բոլոր հանձնարարությունները։

Որպեսզի չճանաչվի, ընկ. Կամոն ամեն օր անպայմանորեն ներկում էր
իր մազերը, բեղերն ու մորուքը, համարյա ամեն օր հարթուկում էր իր կոստյու-
մը, և ես երկու տարի շարունակ ամեն օր նրա համար ջուր էի տաքացնում և
հարթուկը կրակ գցում։

Երբ սկսում էին նռնակ պատրաստել, ինձ ուղարկում էին պատշգամբ,
որպես թե խաղալու, այնինչ ինձ վրա պարտականություն էր դրվում հետևել,
թե ով է մտնում մեր բակը և ով է ուղղվում դեպի մեր բնակարանը, որպեսզի
անմիջապես իմաց տամ մերոնց։ Այսպիսով, շոգ լիներ թե ցուրտ, ես ժա-
մերով մնում էի պատշգամբում և կատարում իմ այդ խիստ պատասխա-
նատու պարտականությունը։ Մի անգամ նրանց բիկֆորդյան յուղը բռնկել էր,
որից ընկ. Կամոյի երեսն էր այրվել, մյուսների՝ ձեռքերը։ Ես վազեցի դե-
ղատուն և այրվածքի դեմ դեղ բերի, որպես թե հարևանի երեխայի համար։

Ընկ. Կամոն ինձ ավելի պատասխանատու և վտանգավոր հանձնարարու-
թյուններ էլ էր անում. խաղաքարտի փոքրիկ տուփի մեջ նա նռնակներ էր
դարսում, տուփը փաթաթում էր գունավոր թղթով, կապում գունավոր ժա-
պավենով և տալիս ինձ, և այդտեղ ինձ մոտենում էր ընկ. Կամոյի
տաքսյա ժապավենով և տալիս ինձ, և այդտեղ ինձ մոտենում էր ընկ. Կամոյի
նկարագրած նշաններով մի մարդ, և տուփը տալիս էի նրան ու ինքս վերա-
դառնում տուն։

Ճիշտ նույն ձևով ընկ. Կամոն ինձ հանձնարարում էր տանել անլեգալ
գրականություն և տարճանակներ։ Շատ հաճախ ընկ. Կամոն ինձ իր հետ
կառք էր նստեցնում, որպեսզի կասկած չլինի, և այդպես մենք զենք էինք
տեղափոխում։ Թբիլիսիի մոտ, Ավճալայում, մենք ունեինք մի այգի, որտեղ
գտնվում էր նաև մեր ջրաղացը։ Այդ ջրաղացում կար մի սենյակ, որտեղ ընկ.
Կամոն զենքի պահեստ էր սարքել։

1912 թվականին ընկ. Կամոն հարձակում կազմակերպեց այն փոստի
վրա, որը Թբիլիսիից մեծ գումար էր տանում Կոջորի։ Ընկ. Կամոյի հանձ-
նարարությամբ մայրս դեղատնից դեղորայք և արյունահոսությունը կանգնեց-
նող բամբակ էր գնել։ Ընկ. Կամոն կարգադրել էր բամբակի փաթեթների վրա-
յի պիտակները պոկել և ոչնչացնել, բայց էքսպրոպրիացիայի մասնակից Գի-
գո Մանժաշվիլին մոռացել էր դրանք ոչնչացնել և երբ վիրավորվել էր, հենց
այնտեղ էլ վայր էր գցել։ Հենց այդ պիտակներով էլ ոստիկանության գործա-
կալներին հաջողվել էր պարզել, թե որ դեղատանն է գնվել բամբակը։

Մի քանի ամիս անց դեղատան աշխատողներից մեկը ցույց էր տվել փո-
ղոցով անցնող իմ մորը, ասելով, որ բամբակը նա է գնել, և մի քանի ամիս
շարունակ գործակալները հետևել էին իմ մորը, որպեսզի մեր բնակարանը
գտնեն և, վերջապես, նրանց հաջողվել էր պարզել, որ այդ բնակարանը գըտ-
նըվում է Սապյորնայա փողոցի № 14 տանը։

Մոտ չորս ամիս պահնորդական բաժինը հսկել էր մեր բնակարանը և
հետևել ամեն մի կասկածելի քայլի։ Վերջապես ոստիկանությանը հաջողվեց
ձերբակալել իր հսկողության տակ առած ամբողջ խումբը։ Ձերբակալվեց ըն-
դամենը 18 մարդ, այդ թվում նաև իմ մայրը՝ Մարիա Դավիդովնա Մայսու-
րաձեն, որը բանտում նստեց երկու տարի, այնտեղ նա ենթարկվեց անասելի



տանջանքների. ծեծել էին ուշաթափության աստիճան, գլխից փունջ-փունջ մա-
զեր էին պոկոտել, քաղցած էին թողել և այլն։ Նրանից պահանջում էին, որ
խոստովանի ու մատնի, թե ովքեր են եղել մեր բնակարանում թաքնված։
Բայց մայրս արիաբար դիմացել էր բոլոր տանջանքներին և ոչ ոքի չէր մատ-
նել, ոչինչ չէր խոստովանել։

Իմ մորն առաջարկեցին մի մեղադրանք, որով նրան քսանամյա տա-
ժանակրություն էր սպառնում։ Բայց մեղադրանքն ապացուցված չլինելու
պատճառով օկրուգային զինվորական դատարանը մորս ազատ արձակեց, և
այդ շնորհիվ այն բանի, որ մայրս դիմացել էր բոլոր տանջանքներին և ոչինչ
չէր խոստովանել։

Ես նույնպես ձերբակալվեցի, բայց անչափահաս լինելու պատճառով
տնային կալանքի ենթարկվեցի քառասուն օրով։ Այդ ժամանակամիջոցում ոչ
ոքի մեզ մոտ չէին թողնում և ինձ էլ ոչ մի տեղ գնալ չէին թույլ տալիս։ 40
օր ոստիկանները հսկում էին մեր տունը։

Ինձ հարցաքննության տարան ոստիկանապետ Գագիևի մոտ, որն ինձ
տարավ առանձին սենյակ, ատրճանակը հանեց, դրեց սեղանի վրա և Կամո-
յի լուսանկարը ցույց տալով ինձ հարց տվեց. «Ճանաչո՞ւմ ես սրան»։ Ես պա-
տասխանեցի. «Չեմ ճանաչում»։ Հետո նա առանձին-առանձին ինձ ցույց տվեց
նախ՝ Գիգո Մատիաշվիլու լուսանկարը, հետո Վանո Մայսուրաձեի, ապա
Սամուիլ Կուպրաշվիլու և ամեն անգամ հարցնում էր. «Ճանաչո՞ւմ ես սրան»։
Ես ամեն անգամ պատասխանում էի՝ «Չեմ ճանաչում»։ Նա կատաղեց ու սկը-
սեց գոռալ. «Ինչպե՞ս չես ճանաչում, ձեզ մոտ են թաքնված եղել»։ Բայց ես
էլի պատասխանում էի. «Չեմ ճանաչում»։ Հետո նա ինձ ցույց տվեց իմ տա-
տի լուսանկարը և հարցրեց, թե ճանաչո՞ւմ եմ նրան։ Ես իսկույն պատաս-
խանեցի, որ դա իմ տատն է։ Հետո էլ ցույց տվեց քեռուս լուսանկարը և
հարցրեց՝ ճանաչո՞ւմ ես, և ես պատասխանեցի, որ դա իմ քեռին է։

Դրանից հետո ինձ տուն տարան։ Մի քանի օր անց նորից ինձ տարան
նույն մարդու մոտ՝ հարցաքննության, և նա սկսեց ինձ ճիշտ նույնպիսի հար-
ցեր տալ, ցույց տալով ամեն մեկի լուսանկարն առանձին, բայց ես էլի առաջ-
վա պես պատասխանում էի, որ չեմ ճանաչում։

Երկու տարի շարունակ ընկ. Կամոն ամեն օր սովորեցրել էր, թե ձերբա-
կալվելու դեպքում ինչպես պետք է վարվել և ինչ պատասխան պետք է տալ,
դրա համար էլ ես ձերբակալությունը դիմավորեցի լիովին նախապատրաստ-
ված և գիտեի, թե ինչ պիտի ասեմ, և ինձանից բացարձակապես ոչինչ չիմա-
ցան, ես ոչ ոքի չմատնեցի։

Թեպետ ես ջահել էի, բայց գործում էի միանգամայն գիտակցաբար.
զգում էի իմ պատասխանատվությունը, բայց միաժամանակ վախենում էի։
Երբ նռնակներ էի տանում, ես միշտ դողում էի վախից, մտածելով, թե
հանկարծ նռնակները կպայթեն, կամ ոստիկանը ինձ կբռնի։ Գիշերներն ան-
կողնում ես վախից դողում էի և ինձ թվում էր, թե հիմա կգան ու բոլորիս
կձերբակալեն։

Այն ժամանակ, ինչպես հայտնի է, ռազմադաշտային դատարանները
գնդակահարության էին դատապարտում նույնիսկ նրանց, ում կասկածում
էին, կամ ում մասին մատնություն էր լինում, թե նա մասնակցում է ռևոլյու-
ցիոն շարժմանը։

Այն ժամանակներում լույս տեսնող «Կավկազ» թերթում, որը մենք ստա-

digitised by A.R.A.R.@

նում էինք, տպագրված էր նահանգապետի հայտարարությունը, որով նա մեծ գումար էր խոստանում նրան, ով կբռնի ընկ. Կամոյին կամ կասի, թե որտեղ է ապրում նա։

Մեծ հարգանքով էինք վերաբերվում ընկ. Կամոյին, քանի որ նա միշտ զրույցներ էր ունենում սոցիալիզմի ու կոմունիզմի մասին և մեզ ներշնչել էր այն միտքը, թե ինչպիսի պայծառ, երջանիկ կյանք է սպասում բոլորին ռևոլյուցիայի հաղթանակի դեպքում։

Դրա համար էլ ոչ գնդակահարությունն էր վախեցնում ինձ, ոչ էլ խոստացված պարգևն էր հրապուրում, որի մասին ես ինքս կարդացել էի «Կավկազ»-ում։ Մենք շարունակում էինք նրանց չորսին էլ թաքցնել մեր բնտանիքում և թե՛ նյութական, թե՛ բարոյական լիակատար աջակցություն էինք ցույց տալիս նրանց։

Ընկ. Կամոն համարվում էր պետական հանցագործ և, եթե նրան բռնեին մեր բնտանիքում, ցարական օպրիչնիկներն անողոք դատաստան կտեսնեին մեզ հետ։

Ընկ. Կամոն շատ լավ էր իմանում ոստիկանների հոգեբանությունը և ինձ, անչափահասիս էր օգնական ընտրել իր մարտական պլանները կատարելու համար։ Երկու տարի շարունակ ես շատ պատասխանատու հանձնարարություններ էի կատարում, ինչպես, օրինակ՝ ձեռքի ռումբեր կամ անլեգալ գրականություն էի տանում ու հանձնում ընկ. Կամոյի նշած մարդկանց, բնակարանն էի հսկում, երբ ընկ. Կամոն ու իր ընկերները ռումբեր էին պատրաստում և այլն։

Կարող է պատահել, որ եթե իմ տեղը մի չափահաս մարդ լիներ, ոստիկանության ուշադրությունը շուտ կգրավեր և այդքան երկար ժամանակ չէր կարող այդ պատասխանատու հանձնարարությունները կատարել։

Ես հպարտանում և ինձ երջանիկ եմ զգում, որ երկու տարի շարունակ ռևոլյուցիոն աշխատանքի մեջ անձամբ օժանդակել եմ ռևոլյուցիայի անվեհեր ասպետին, որը լայնորեն ճանաչված էր ո՛չ միայն Կովկասում ու Ռուսաստանում, այլև Արևմտյան Եվրոպայում, որտեղից նա զենք էր բերում։

Ընկ. Կամոն վայելում էր Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության հանճարեղ հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինի լիակատար վստահությունը։

Սկսած 1917 թվականից ընկ. Կամոն երբ Թբիլիսի էր գալիս, անպայման հանդիպում էր մեր բնտանիքին և ինձ ցույց է տվել անձամբ Վ. Ի. Լենինի ստորագրությամբ տրված վկայականը, որի մեջ Լենինը գրել էր. Ընկ. Կ. Պետրովին անձամբ ես ճանաչում եմ և բոլոր սովետական հիմնարկություններին, զինվորական ու այլ իշխանություններին խնդրում եմ ամեն տեսակ աջակցություն ցույց տալ ընկ. Պետրովին։

---



# ՄԵԾ ԳՈՐԾԻ ՀԱՋՈՂ ՍԿԻԶԲԸ

Կոմունիստական պարտիան մեր երկրի գյուղատնտեսության աշխատողների առջև խնդիր է դրել՝ բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ մոտակա տարիներին հասնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Այդ մեծ ու պատվավոր խնդրի կատարումը պահանջում է ուժերի մաքսիմալ լարում, համառ ու քրտնաջան աշխատանք։

Ռեսպուբլիկայի անասնաբույծները ջերմորեն արձագանքելով պարտիայի կոչին, հաշվելով իրենց ներքին ռեզերվներն ու հնարավորությունները, ստանձնեցին բարձր պարտավորություններ։ Գործի վերածելով այդ պարտավորությունները, նրանք անցած տնտեսական տարում հասան լուրջ հաջողությունների. մեկ տարում նշանակալից կերպով ավելացավ անասնաբուծական մթերքների արտադրությունը, յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց ստացվեց ավելի շատ կաթ, միս, բուրդ և ձու, քան արտադրվել էր 1956 թվականին։

Անասնաբուծության զարգացման բնագավառում ձեռք բերված նախնական արդյունքներն ամենից առաջ խոսում են այն մասին, որ պարտիայի կողմից առաջադրած այդ խնդիրը իրոք կլուծվի։ Այդ արդյունքները ոգեշնչում են գյուղատնտեսության աշխատողներին ու նոր սխրանքների մղում՝ հանրային տնտեսության ընդերքում եղած անսպառ հնարավորությունները լավագույն ձևով օգտագործելու համար։

Սակայն այն, ինչ արված ու ձեռք է բերված, մեծ գործի հաջող սկիզբն է։

Անասնաբուծության մթերքների արտադրության շեշտակի ավելացման հարցը անմիջականորեն վճռվում է կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում։ Հասկանալի է, որ շրջանային թերթերը, որոնք ավելի մոտ են կանգնած արտադրությանը և նյութական բարիքներ ստեղծող մարդկանց, ավելի մեծ հնարավորություններ ունեն լուսաբանելու համաժողովրդական մրցության հարցերը, գործոն օգնություն ցույց տալու անասնաբույծներին՝ պատվով կատարելու ստանձնած պարտավորությունները։

Այս տեսակետից ուսանելի է ռեսպուբլիկայի անասնապահական մի քանի շրջանների թերթերի գործունեությունը, որոնք ժամանակին ու ճիշտ ընկալելով պարտիայի կոչը, կազմակերպական և պրոպագանդիստական զգալի աշխատանք ծավալեցին այդ ուղղությամբ։ Տեղական կյանքից վերցրած կոնկրետ օրինակների ու փաստերի հիման վրա ցույց տալով առաջադրված խնդրի միանգամայն ռեալ լինելը, թերթերն ամեն կերպ քաջալերում են անասնաբույծների առաջին հաջողությունները։

Անցյալ տարվա մայիս-հունիս ամիսներին շրջանային թերթերի էջերում հրապարակվեցին կոլտնտեսությունների ստանձնած պարտավորությունները, հանդես եկան շատ անասնապահներ, որոնք արտահայտելով իրենց մտքերը ու խոհերը, պատրաստակամություն հայտնեցին գործով պատասխանել պարտիայի կոչին։

Մեր երկրի բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, յուղի, մսի արտադրությամբ մոտակա տարիներին ԱՄՆ-ին հասնելու լոզունգը դարձավ կոլտնտեսային գյուղի մարդկանց ամենօրյա գործունեության ծրագիրը, թևավորեց ու մրցության մեջ ներքաշեց նորանոր անասնապահների։ Ստանձնած պարտավորությունների իրականացման համար կատարվող առաջին քայլերը զուգադիպեցին հանրային անասնաբուծության համար կերի բազայի ստեղծման գործնական աշխատանքին։ Գյուղատնտեսության աշխատողները քաջ գիտենալով, որ անասնաբուծությունը զարգացնել և մթերատվությունը ավելացնել կարելի է, առաջին հերթին, անասուններին անհրաժեշտ քանակությամբ կերով ապահովելու ճանապարհով, անցյալ տարի քիչ գործ չկատարեցին հանրային հոտի համար առատ ու բազմազան կերի պաշարներ ստեղծելու ուղղությամբ։ Այդ գործում կոլտնտեսություններին լուրջ օգնություն ցույց տվեցին շրջանային շատ թերթեր։

Գորիսի, Սիսիանի և Կալինինոյի շրջանային թերթերի աշխատանքում դրականն այն է, որ նրանք հետևողականորեն լուսաբանում էին կերի պատրաստման ու կուտակման ընթացքը, դրա վրա բևեռելով գյուղատնտեսության աշխատողների ուշադրությունը։ Պրակտիկ աշխատանքի լուսաբանումը թերթի էջերում կատարվել է կոնկրետ կերպով, գործիմացությամբ, առանց

digitised by A.R.A.R.@

ընդհանուր դատողությունների ու կոչերի։ Այսպես. Գորիսի շրջանային «Որոտան» թերթի նշանաբանն էր դարձել՝ «Յուրաքանչյուր կովի համար պատրաստել 6 տոննա սիլոս», իսկ «Կոլտնտեսականի ձայն» թերթը (Կալինինոյի շրջան) պայքարում էր ամեն մի կովին 9—10 տոննա սիլոս պատրաստելու համար։ Կարևոր գործի նկատմամբ նման գործնական մոտեցումը, անկասկած, պետք է տար իր ցանկալի արդյունքը։

Գորիսի թերթն ամեն կերպ խրախուսելով կերհայթայթման բնագավառի լավագույն աշխատողներին, միաժամանակ խարազանում էր ետ մնացողներին, որոնք չէին կատարում իրենց խոստումը և վատ էին օգտագործում եղած հնարավորությունները։ Սիսիանի թերթը, պաշտպանելով կերի կուտակման գործում շրջանի կոմերիտական կազմակերպությունների նախաձեռնությունը, իր էջերում խրախուսեց կոլտնտեսային երիտասարդների ազնիվ ու շնորհակալ գործերը։

Սակայն նույն բանը չի կարելի ասել մի շարք շրջանային թերթերի, ասենք, «Ղուկասյանի կոլտնտեսական»-ի մասին, որի հատ ու կենտ, հաճախ ընդհանուր բնույթ կրող նյութերը չնպաստեցին կատարելու կերի կուտակման ու պատրաստման առաջադրանքը շրջանում։

Ելնելով անցյալ տարվա փորձից, թերթերը պետք է այժմվանից ավելի եռանդուն, ավելի կոնկրետ օգնություն ցույց տան տեղական պարտիական կազմակերպություններին ու կոլտնտեսությունների վարչություններին՝ 1958 թվականին կուտակելու ավելի շատ ու բազմազան կերային պաշարներ, կերի ընդհանուր բալանսում զգալիորեն ավելացնելով եգիպտացորենը, հատիկային այլ կերեր, արմատապտուղները, բարելավելով բնական խոտհարքները։

Անասնաբուծական մթերքների շեշտակի ավելացման ուղղությամբ ստանձնած պարտավորությունների կատարման խնդիրը գտնվում է շրջանային շատ թերթերի ուշադրության կենտրոնում։ «Ստուգում ենք պարտավորությունների կատարումը», «Խոսք ես տվել, կատարիր», «Խոստումը գործի են վերածում» և այլ խորագրերի տակ թերթերն իրենց ընթերցողներին իրազեկ են դարձնում մրցության ընթացքի, առաջավոր անասնաբույծների աշխատանքային հաջողությունների մասին, բացահայտում ու քննադատում այն մարդկանց, որոնք իրենց խոսքը չեն ամրապնդում գործով։

Թե ինչպես են այդ հարցերը լուսաբանում թերթերը, կարելի է ցույց տալ թեկուզ Կալինինոյի շրջանային թերթի օրինակով։ Արձագանքելով պարտիայի կոչին, Կալինինոյի անասնապահները խոստացան յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց 1957 թվականին արտադրել 245 ցենտներ կաթ, ֆուրաժային կովի կաթնատվությունը հասցնել 2200 կիլոգրամի։ Ծավալված գործարար մրցությունը տվեց իր փայլուն արդյունքը՝ արտադրվեց պլանից ավելի 15,7 հազար ց. կաթ, կովի կաթնատվությունը հասցվեց 2350 կգ. կամ 100 հեկտարի հաշվով արտադրվեց 250 ց. կաթ։ Այդ լուրջ նվաճման մեջ իր լուման ունի «Կոլտնտեսականի ձայն» թերթը։

Այդ կարելի է ցույց տալ միայն մի քանի օրինակներով։ Շրջանի Պրիվոլնոյե գյուղի անասնապահները հանդես եկան կոնկրետ առաջարկով՝ յուրաքանչյուր կովից ստանալ 1000 կգ. կաթ արոտային շրջանի երեք ամիսների (մայիս-հուլիս) ընթացքում։ Թերթը խրախուսեց այդ նախաձեռնությունը, մրցության կոչ անելով մյուսներին։ Հանդես բերելով հետևողականություն, ուշի-ուշով նա հետևում էր, թե ամեն օր, ամեն ամիս ով ինչպես է աշխատում, ինչ արդյունքի է հասել, քաջալերում էր մրցության առաջավորներին։

Թերթում տպագրվել են մի քանի նյութեր, որոնք ուսանելի են, օգնող։ Շրջանում կաթնատվության գծով առանձնապես լուրջ հաջողությունների հասան Ղզըլշաֆակի անասնապահները. եթե 1956 թվականին ֆուրաժային կովի կաթնատվությունը այստեղ չէր անցնում 1200 կիլոգրամից, ապա անցյալ տարի այն հասավ 3200 կիլոգրամի։ Պատմելով իրենց աշխատանքային հաջողությունների մասին, կաթնապրանքային ֆերմայի զոոտեխնիկ Ս. Վարդանյանը հանգամանորեն վերլուծության է ենթարկում աշխատանքի արդյունքները և պատմում, թե ինչպես են հասել դրանց։ Հոդվածում ասվում է, որ ամեն մի կովի համար նրանք պատրաստել էին 9 տոննա սիլոս, 3 տոննա խոտ և 1,5 տոննա խտացրած կեր. մսուրային շրջանում օրինակելիորեն կազմակերպվեց անասունների կերակրումն ու խնամքը, արոտային շրջանում լրացուցիչ կերպով նրանց տրվեց խտացրած կեր, կազմակերպվեց արոտների հերթափոխ արածեցումը, կովերի ժամանակին կիթը և այլն։ Քիչ նշանակություն չունեցան անասնապահների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով ձեռնարկված միջոցառումները։

Լավ են կարդացվում Նովոսելցովոյի կոլտնտեսության նախագահ Գ. Փափազյանի, կթվորուհիներ՝ Ա. Բակոևայի, Ա. Ժարինայի ելույթները թերթի էջերում, ուր ցույց են տրված, թե ինչ միջոցների ու մեթոդների կիրառումով են նրանք հասել կովերի բարձր կաթնատվության։

Թերթը անդրադարձել է Սարչապետի կոլտնտեսությանը և ցույց տվել, որ այստեղ լավ չեն օգտագործվում եղած հնարավորությունները։



«Սարչապետի կոլտնտեսության կաթնապրանքային ֆերման,— կարդում ենք հոդվածում,— կաթի ստացման առաջին եռամսյակի պլանը կատարեց 127,2 տոկոսով։ Առաջին հայացքից կարող է թվալ, որ այստեղ ամեն ինչ բարեհաջող է։ Սակայն փաստերն այլ բան են ասում։ Բանն այն է, որ կաթի արտադրության ավելացման համար կոլտնտեսությունն ունի չօգտագործված շատ ռեզերվներ»։

Ապա հոդվածագիրը կոնկրետ նշում է այդ ռեզերվները և նրանց օգտագործման միջոցները։ Ֆերմայում կան կթվորուհիներ, որոնք վեց ամսում կատարել են տարեկան առաջադրանքը, իսկ դրանց կողքին կան և ետ մնացողներ։ Իրավացի կերպով թերթը գտնում է, որ «եթե բոլոր կթվորուհիները աշխատեին առաջավորների նման, ապա կստացվեր երկու անգամ ավելի շատ կաթ»։

Մի այլ հոդվածում խոսվում է այն մասին, թե ինչու է առաջավոր կոլտնտեսություններից ետ մնում Բլագոդարնոյեն, ինչո՞ւ է նա կորցրել իր վաղեմի փառքը, երբ անասնապահները ֆուրաժային կովից տարեկան ստանում էին 2400—2500 կգ. կաթ։

Գովելի է, երբ շրջանային թերթը ո՛չ միայն ապրում է առօրյա կոնկրետ հարցերով, այլ նրան հուզում ու մտահոգում է նաև վաղվա օրը։ Տարվա ընթացքում լուսաբանելով մրցության կոնկրետ հարցերը, թերթը անասնապահներին կոչ էր անում, պայքարի հանում, որպեսզի նախադրյալներ ստեղծվեն 1958 թվականին յուրաքանչյուր կովի կաթնատվությունը 3000 կիլոգրամի հասցնելու համար։

Կալինինոյի թերթը, սակայն, ունի նաև իր մինուսները, թերացումները։ «Կոլտնտեսականի ձայն»-ը, տարվելով առանձին կոլտնտեսությունների աշխատանքի ու ձեռք բերած հաջողությունների լուսաբանությամբ, իր տեսադաշտից դուրս է թողել մի շարք կոլտնտեսություններ, քիչ տեղ է տվել Լոռվա տոհմաբուծական սովետական տնտեսությանը։ Թերթի էջերում նշված լավ հոդվածների կողքին կարելի է հանդիպել մակերեսային, ընդհանուր բնույթ կրող նյութերի, ուր անասնապահների աշխատանքի, ձեռնարկված կոնկրետ միջոցառումների լուսաբանությունը փոխարինվում է թվերով ու տոկոսներով, փաստերի ու մարդկանց անունների սոսկ թվարկումով։ Հասարակական դատին ներկայացնելով ստանձնած պարտավորությունների կատարման արդյունքները, թերթը աշխատանքի արդյունքի չափանիշը հաճախ վերցնում է ո՛չ թե յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվող մթերքները, այլ համախառն արտադրանքը, յուրաքանչյուր կովից, ոչխարից ստացվող մթերքների քանակը։ Նման հաշվարկումը լրիվ պատկերացում չի տալիս, նախ՝ պարտավորությունների կատարման և երկրորդ՝ հողատարածության ռացիոնալ օգտագործման մասին։ Շրջանային թերթը պետք է ձգտի ավելի սիստեմատիկ ու բովանդակալից լուսաբանել առաջավոր անասնապահների աշխատանքի դրական փորձը։

Կաթի արտադրության ավելացման ուղղությամբ քիչ աշխատանք չեն կատարում նաև մյուս թերթերը։ «Որոտան» թերթում տպագրվում են հաջողված նյութեր, որոնք պատմում են պարտավորությունների կատարման ընթացքի, առաջավոր անասնապահների աշխատանքի փորձի մասին և այլն։ Լավ են գրված, օրինակ, Խընձորեսկի, Խանածախի, Վերիշենի անասնապահների աշխատանքին նվիրված նյութերը. թերթում մեծ տեղ է հատկացվում շրջանի կոլտնտեսությունների, ՄՏ կայանների միջև մրցությամբ վերցված պարտավորությունների կատարման ստուգման, Գորիս—Կուբաթլի շրջանների մրցության ծավալման հարցերին։ Երկու ամիս առաջ շրջանային թերթը կազմակերպեց ու տպագրեց «Ավանգարդ» կոլտնտեսության անասնապահների կոչը՝ ուղղված շրջանի բոլոր անասնապահներին։ Ավանգարդցիները կոնկրետ պարտավորություններ են ստանձնել անասունների մսուրային շրջանը հաջող անցկացնելու, ձմռան ամիսներին կաթնատվության տարեկան առաջադրանքը 50 տոկոսով կատարելու, կաթի արտադրանքի ինքնարժեքը 10 տոկոսով իջեցնելու մասին և այլն։ Հետագա համարներում թերթը անդրադարձավ այդ հարցին, տպագրելով մի շարք արձագանքներ։

Սակայն հարկ է նշել, որ Գորիսի թերթի ծավալը լայն հնարավորություններ է տալիս ավելի հանգամանորեն ու խոր լուսաբանելու անասնաբուծության արմատական, հանգուցային հարցերը, նրա զարգացման հեռանկարները, էկոնոմիկան, բայց խմբագրությունը, ինչպես հարկն է, չի կատարում այդ։

Թերթերը առանձին ուշադրություն պետք է դարձնեն ետ մնացող ֆերմաների, անասնապահների աշխատանքին. կոնկրետ ու համոզիչ բացահայտելով նրանց ետ մնալու պատճառները, անհրաժեշտ է ցույց տալ, թե ինչ պետք է անեն նրանք՝ առաջավորներին հասնելու համար։ Հարկավոր է խնամքով ընտրել ու պրոպագանդել տեղական փորձի լավագույնը, կոնկրետ վերլուծությամբ ցույց տալ, թե սոցիալիստական մրցության առաջավորներն ինչպես են հայտաբերում ու գործի դնում իրենց ներքին ռեզերվներն ու հնարավորությունները։ Այս բնագավառում դեռևս շատ են գործին չօգնող ընդհանուր դատողությունները, շաբլոնն ու տրաֆարետը։

Մսի արտադրության շեշտակի ավելացումը

digitised by A.R.A.R.@

թերթերի կարևորագույն խնդիրներից մեկն է։ Առանձին շրջաններ ու կոլտնտեսություններ անցյալ տարի չկատարեցին իրենց պարտավորությունները, քիչ միս արտադրեցին յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց։ Ավելի թույլ է զարգանում խոզաբուծությունը, որը հանրային տնտեսության եկամտաբեր ճյուղերից մեկն է և մսի արտադրությունն արագորեն ավելացնելու կարևոր ռեզերվը։ Գորիսի թերթը իր համարներից մեկում մանրամասն վերլուծության էր ենթարկել, թե ինչու Վերիշենի կոլտնտեսությունում թերակատարվել է մսի և բրդի արտադրության առաջադրանքը. պարզվում է, որ այստեղ կուտակվել է քիչ կեր, թույլ է տրվում անասունների անկում և չի կազմակերպվում նրանց բտումն ու գիրացումը։ Թերթի հաշվարկումներով միայն անասունների անկման պատճառով շրջանում անցյալ տարի 530 տոննայով պակաս միս է արտադրվել։ Մի այլ հոդվածում խմբագրությունը առաջ է քաշել անասունների գիրացումն ու բտումը կազմակերպելու հարցը։

Համոզիչ է Միխայլովկա կոլտնտեսությունում խոզաբուծության եկամտաբերության բարձրացման հարցին նվիրված հոդվածը Կալինինոյի շրջանային թերթում։ Հոդվածագիրը ցույց է տալիս, որ մայր խոզերի տեսակարար կշիռը ընդհանուր գլխաքանակի մեջ աննշան է, բարձր է խոզի մսի արտադրանքի ինքնարժեքը, վատ է կազմակերպվում բտման գործը։ Այս քննադատության մեջ օգտակար և ուսանելի շատ բան կա։

Նման նյութեր քիչ են տպագրվում թերթերում, գործիմացությամբ քննության չեն առնըվում մսի արտադրությունն ավելացնելու կոնկրետ հարցերը, հաճախ բավարարվում են ընդհանուր կարգի դիտողություններով ու ձեռք բերված հաջողության փաստագրումով։ Ղուկասյանի շրջանի Բաշգյուղի կոլտնտեսությունը 100 հեկտարի դիմաց արտադրել է 72 ց. միս։ Դա, անշուշտ, լուրջ նվաճում է, բայց շրջանային թերթում կարդալով այդ մասին, ընթերցողը որոշակի պատկերացում չի կազմում, թե տվյալ կոլտնտեսությունն ինչ ճանապարհով է հասել դրան։

Մսի արտադրության ավելացման գործում կարևոր նշանակություն ունի գիրացման համար առանձնացված նախիրների ու հոտերի խնամքը։ Այս հարցի վրա անհրաժեշտ է լուրջ ուշադրություն դարձնել։

Վերջին շրջանում թերթերը ավելի հաճախ են անդրադառնում ոչխարաբուծության զարգացման, բրդի արտադրության ավելացման հարցերին։ Այսպես, Գորիսի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի զոոտեխնիկ Դ. Վանեսյանը հանդես գալով շրջանային թերթում՝ պատմում է, թե ինչպես գործի վերածելով իրենց պարտավորությունները, լավ կազմակերպելով անասունների խնամքն ու կերակրումը, բարելավելով ցեղը, նրանք գերակատարել են ոչխարների գլխաքանակի աճեցման պլանը և յուրաքանչյուր ոչխարից ստացել են 3,6 կգ. բուրդ։

Սիսիանի թերթը Բռնակոթի կոլտնտեսության օրինակով ցույց է տվել, թե ինչպես վատ են օգտագործվում ոչխարաբուծության զարգացման համար եղած հնարավորությունները, որի հետևանքով անցյալ տարի կոլտնտեսությունը տվել է 380 գլուխ ոչխարի կորուստ, 100 մայր ոչխարից ստացել է միայն 77 գառ և չի կատարել բրդի ստացման առաջադրանքները։ Այստեղ տեղին է նշել, որ թերթերը քիչ են անդրադառնում ոչխարների ցեղի բարելավման՝ հատկապես նրբագեղմ ու կիսանրբագեղմ ոչխարների գլխաքանակի ավելացման հարցին։

Այդ նույն բանը միաժամանակ պետք է ասել թռչնաբուծության մասին։ Թերթերը դեռևս շատ քիչ ուշադրություն են դարձնում անասնապահության այդ ճյուղին, քիչ են օգնում տեղական կազմակերպություններին կոլտնտեսություններում թռչնաբուծությունը զարգացնելու համար։

Ինչպես հայտնի է, մսի և կաթի արտադրության ավելացման վճռական գործոնը անասունների գլխաքանակի աճն է՝ հանրային հոտի արագ և պլանային վերարտադրության միջոցով, մայրական կազմի ավելացումը հոտում, անասունների ցեղայնության բարելավումը, ստերջության վերացումը և այլն։ Սակայն այս հարցերը քիչ են լուսաբանվում թերթերի էջերում։

Սիսիանի շրջանային թերթը չի հետաքրքրվել, օրինակ, այն հարցով, թե ինչու 1957 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, պակասել է կովերի գլխաքանակը, 100 մայրից ստացվել են ավելի քիչ հորթեր, ինչու կովերի գլխաքանակը հանրային հոտում այժմ կազմում է 25,5 տոկոս։ Սրանք հարցեր են, որոնց վրա արժեր հրավիրել պարտիական կազմակերպությունների և գյուղատնտեսության աշխատողների ուշադրությունը, բացահայտել այդ գործում հետ մնալու պատճառները և ցույց տալ դրանց հաղթահարման կոնկրետ միջոցները։ Խոզաբուծության զարգացման լայն հնարավորություններ կան Ստեփանավանում, սակայն այդ հնարավորությունները վատ են օգտագործվում. անցյալ տարի 100 մայր խոզից ստացվել է ավելի քիչ խոճկոր, քան 1956 թվականին։ «Ղուկասյանի կոլտնտեսական»-ի էջերում չենք կարդում այն մասին, թե ինչու շրջանի առանձին կոլտնտեսություններ 100 հեկտար հողատարածության դիմաց շատ քիչ կովեր են պահում և այլն։



Մի շարք շրջանային թերթեր իրենց տեսադաշտից դուրս են թողնում անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման, մասնագետների ճիշտ օգտագործման, զոոանասնաբուժական կանոնների կիրառման, անասունների անկման դեմ պայքարի կազմակերպման հարցերը։

Պետք է մտածված, խելացի օգտագործել շրջանային թերթի առանց այն էլ սուղ էջերը, ճիշտ պլանավորել հարցերի լուսաբանման հերթականությունը։ Կարևորը այստեղ ոչ թե անասնաբուծության առանձին հարցերի մասին թերթում զետեղված նյութերի քանակն է, այլ նրանց բովանդակությունը, նպատակասլացությունը և կոնկրետ լինելը։

Խոսելով թերթերի աշխատանքի մասին, չի կարելի անցնել մի երևույթի կողքով։ Ստեփանավանի շրջանի առանձին կոլտնտեսություններ (Հոբարձի, Մ. Գորկի, Ագարակ) անցյալ տարի մսի արտադրության գծով ստանձնել էին ավելի ցածր պարտավորություններ, քան փաստորեն նրանք ստացել էին 1956 թվականին։ Շրջանի ստանձնած միջին պարտավորություններից ցածր էին Գյուլագարակի կոլտնտեսության պարտավորությունները։ Ցավոք սրտի, այս փաստերի կողքով լռությամբ է անցել «Սոցիալիստական անասնապահություն» թերթը, ժամանակին չի նկատել ու խիստ քննադատության ենթարկել այն ղեկավարներին, որոնք ձևական մոտեցում էին հանդես բերում մրցության գործի նկատմամբ։ Իրավացի կերպով գովաբանելով վերը հիշված կոլտնտեսությունների լավ աշխատանքը կաթի արտադրանքի ավելացման բնագավառում, թերթը հարկ չի համարել անդրադառնալ այն հարցին, թե նրանք ինչ են անում մսի արտադրության ավելացման ուղղությամբ։

Նկատվում են նաև այլ բնույթի սխալներ։

Թափթփվածության և անուշադրության հետևանքով թերթերի էջերում երբեմն սպրդում են փաստերի ու թվերի կոպիտ աղավաղումներ, աղճատումներ, իրարամերժ մտքեր։ Ահա դրանցից մի քանիսը. «Ղուկասյանի կոլտնտեսական»-ի մայիսի 16-ի համարում ասված է, որ Կարմրավանի կոլտնտեսությունը պարտավորվել է 100 հեկտար հողատարածության դիմաց 1957 թվականին արտադրել 180 ց. կաթ, 25 ց. միս և 300 կգ. բուրդ։ Ուղիղ մեկ ամսից հետո՝ հունիսի 16-ին, նույն կոլտնտեսության մասին թերթը գրել է, որ պարտավորվել են ստանալ 180 ց. կաթ, 21,5 ց. միս և 228 կգ. բուրդ։ Նույնը կարելի է ասել Փ. Սեպասար գյուղի մասին (տե՛ս թերթի հունիսի 27-ի և հոկտեմբերի 17-ի համարները)։ Ընթերցողը տարակուսում է, թե ինչու են այդ կոլտնտեսությունները հետագայում ընդունել ցածր պարտավորություններ, ի՞նչն է դրա պատճառը։

Հակասող թվեր է երբեմն հաղորդում «Որոտան»-ը։ Մայիսի 26-ին թերթը գրել էր, որ Գորիսի անասնապահները պարտավորվել են 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել 150 ց. կաթ, 45 ց. միս և 325 կգ. բուրդ. օգոստոսի 11-ի համարում այն դարձել է 200,3 ց. կաթ, 58,8 ց. միս և 325 կգ. բուրդ, իսկ դեկտեմբերի 8-ին՝ 103,8 ց. կաթ, 42,1 ց. միս և 265 կգ. բուրդ։ Շարունակենք։ Ըստ այդ թերթի, Բուռունի կոլտնտեսությունը հոկտեմբերի 15-ի տվյալներով յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել է 1730 կգ. կաթ, իսկ մի այլ համարից երևում է, որ առ 1-ը դեկտեմբերի այստեղ ստացվել է 1633 կգ. կաթ։ Այդ թվերից ո՞րն է ճիշտ, որի՞ն հավատալ։ Սիսիանի թերթի դեկտեմբերի 1-ի առաջնորդողում ասված է, որ շրջանում ֆուրաժային կովից նոյեմբերի մեկի դրությամբ (այսինքն՝ 11 ամսում) ստացվել է 891 կգ. կաթ, իսկ մի այլ համարում գրված է, որ 10 ամսում կթվել է 1051 կգ.։

Կարելի է բերել այս կարգի այլ օրինակներ։ Խմբագրության աշխատողները պետք է հասկանան, որ նրանց պատիվ չի բերում նման կամայական ու քմահաճ մոտեցումը փաստերի ու թվերի նկատմամբ, և որ չի կարելի խաղալ թվերի հետ։

Անասնաբուծության մթերքների արտադրությունն ավելացնելու վերաբերյալ պարտիայի կողմից առաջադրված խնդրի հաջող իրականացումը հիմնականում պայմանավորված է նրանով, թե գյուղական պարտիական կազմակերպություններն ինչպես են կազմակերպում ու գլխավորում աշխատավորների արտադրական ու քաղաքական խանդավառությունը, ինչպես է կազմակերպված քաղաքական-մասսայական աշխատանքը անասնապահների շրջանում։ Գորիսի շրջանային թերթում անցյալ տարի հոդվածներ են տպագրվել Խնձորեսկի, Կորնիձորի, Բայանդուրի պարտկազմակերպությունների ու կոմունիստների աշխատանքի մասին, Կալինինոյի թերթում քննադատության է ենթարկվել նույն շրջանի Ղարաքիլիսա գյուղի կոլտնտեսության ֆերմայի պարտխմբակի գործունեությունը, ելույթ է ունեցել Ղզըլշաֆակի անասնապահական ֆերմայի պարտխմբակի կազմակերպիչը և այլն։

Դժբախտաբար նման կարգի նյութեր հազվադեպ են երևում թերթերի էջերում։ Դա լուրջ վրիպում է շրջանային թերթերի գործունեության մեջ։ Շրջանային թերթերը պարտավոր են սիստեմատիկ կերպով լուսաբանել պարտիական-կազմակերպական և պարտիական-քաղաքական



digitised by A.R.A.R.@

աշխատանքի դրվածքը անասնապահական ֆերմաներում, ցույց տալ, թե ինչպես է կազմակերպված ագիտացիոն-մասսայական, կուլտուրլուսավորական աշխատանքը անասնապահների շրջանում, ինչպես են դասավորված կոմունիստների ուժերը անասնաբուծության բնագավառում, ինչ են անում պարտիական կազմակերպությունները անասնաբուծության զարգացման արմատական, հանգուցային հարցերը լուծելու համար։

Հանրային հոտը ձմեռում է։ Անասնաբուծության մթերքների արտադրության նոր վերելքը 1958 թվականին մեծ չափով պայմանավորված է նրանով, թե ինչպիսի կազմակերպվածությամբ կանցկացվի անասունների ձմռային շրջանը։ Շրջանային թերթերի խնդիրն է՝ իրենց էջերում լայնորեն լուսաբանել հանրային հոտի ձմեռման, անասունների ծնի կամպանիայի ընթացքը, ցույց տալ, թե տեղերում ինչպես է կազմակերպված անասունների կերակրումն ու խնամքը, մատղաշների պահպանումը, ինչպես է օգտագործվում կուտակված կերը, ինչ է արվում անասնապահական ֆերմաների ամրապնդման, անասնաբույծների ուսուցման, վերաորակավորման ուղղությամբ և այլն։

Տնտեսական տարվա հենց առաջին օրերից թերթերը պետք է գործնական պայքար ծավալեն այն բանի համար, որպեսզի գործի վերածվեն ստանձնած պարտավորությունները և նոր ուժով ծավալվի սոցիալիստական մրցությունը անասնապահների շրջանում։ Ամեն կերպ պետք է խրախուսել այն աշխատողներին, որոնք իրենց խոսքը գործի են վերածում, պաշտպանի ամեն մի լավ նախաձեռնություն՝ ավելի քիչ միջոցների ու աշխատանքի ծախսումներով արտադրելու ավելի շատ կաթ, միս, յուղ, բուրդ և ձու։ Պրոպագանդելով լավագույն անասնաբույծների աշխատանքի հարուստ փորձը, թերթերի խմբագրությունները, միաժամանակ, պարտավոր են սուր քննադատության ենթարկել, խարազանել այն մարդկանց ու կազմակերպություններին, որոնք թերանում են իրենց խոստումների կատարման մեջ, բացահայտել այն բոլոր արգելակներն ու խոչընդոտները, որոնք կաշկանդում են արտադրության առաջխաղացումը։ Այդ ամենը կնպաստի զարգացնելու գյուղատնտեսության աշխատողների ակտիվությունն ու ձեռներեցությունը, բարձրացնելու նրանց պարտքի ու պատասխանատվության զգացումը ստանձնած պարտավորությունների կատարման նկատմամբ։

Բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու վերաբերյալ պարտիայի կոչը անցողիկ մի կամպանիա չէ, այլ մոտակա տարիներին մեր գյուղական պարտիական կազմակերպությունների, կոլտնտեսականների և սովետական տնտեսությունների աշխատողների աշխատանքի ու պայքարի մարտական ծրագիր։ Այդ համաժողովրդական պայքարի առաջին գծում պետք է միշտ լինեն մեր շրջանային թերթերի աշխատողները, որոնք իրենց հասու գրչով պետք է դառնան գյուղատնտեսության աշխատողների օգնականը՝ նրանց ազնիվ ու հերոսական գործերում։

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ



# ԱԼ. ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ ԵՐԿԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒՆ

Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ականավոր գործիչ Ալեքսանդր Ֆեոդորովիչ Մյասնիկյանը պրոլետարական այն պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներներից է, որոնք անցել են դասակարգային հերոսամարտերի, դաժան փորձությունների ու խիզախումների փառապանծ ուղի։ Երիտասարդական տարիներին ներգրավվելով ռևոլյուցիոն շարժման մեջ, Մյասնիկյանն իր ողջ կյանքը նվիրաբերեց բանվոր դասակարգի ազատագրման գործին։ Նա Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի համար Ռուսաստանի աշխատավորական մասսաների մղած պայքարի խոշոր կազմակերպիչներից մեկն է։ Մեծ է Մյասնիկյանի խաղացած դերը Բելոռուսիայում Սովետական իշխանության հաղթանակի կազմակերպման և բելոռուսական կոմունիստական կազմակերպությունների ամրապնդման գործում։ Արևմտյան մարզում և ռազմաճակատում՝ կոնտրռևոլյուցիայի դեմ մղված դաժան մարտերում դրսևորվում են Մյասնիկյանի կազմակերպական մեծ ընդունակությունները, հաղթանակի նրա անհողդողդ կամքն ու հաստատակամությունը։

Մեծ է Մյասնիկյանի երախտիքը Հայաստանում Սովետական իշխանությունն ամրապնդելու, երիտասարդ ռեսպուբլիկան թշնամիների հարձակումներից պաշտպանելու, քայքայված ժողովրդական տնտեսությունը վերականգնելու, սովետահայ կուլտուրան և արվեստը զարգացնելու բնագավառներում։

Ա. Ֆ. Մյասնիկյանը մարքսիզմ-լենինիզմի հմուտ պրոպագանդիստ ու տեսաբան էր։ Լինելով տեսականորեն պատրաստված ու զարգացած անձնավորություն, նա պետական և պարտիական բազմակողմանի գործունեության հետ միասին հրապարակախոսական, պրոպագանդիստական մեծ աշխատանք էր կատարում։

ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալը — Հայաստանի ԿՊ Կենտկոմին առընթեր Պարտիայի պատմության ինստիտուտը շնորհակալ գործ է կատարել։ Նա ի մի է հավաքել Մյասնիկյանի գրական ժառանգությունը և նրա հիմնական մասը հրատարակել մի ժողովածուում*։

Խոշոր արժեք են ներկայացնում Ընտիր երկերում զետեղված Մյասնիկյանի այն աշխատությունները, որոնք գրված են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման և իրագործման շրջանում։ Այդ ժամանակ Մյասնիկյանը ռևոլյուցիոն խոշոր աշխատանք էր կատարում Արևմտյան մարզի և ռազմաճակատի բոլշևիկյան կազմակերպություններում։ 1917 թվականի հունիսին նա ընտրվում է Մինսկի բոլշևիկյան կոմիտեի նախագահ։ Հոկտեմբերի նախօրեին՝ 1917 թվականին Մինսկում լույս էր տեսնում բոլշևիկյան «Звезда» թերթը, որը հետագայում հրատարակվում է «Молот» և «Буревестник» անուններով։ Այդ թերթի համարներում շատ հաճախ երևում էին Մյասնիկյանի մարտի կոչող բոցաշունչ հոդվածները, որոնցից միայն մի քանիսն են տեղ գտել ներկա ժողովածուում («Բոլշևիկները», «Նակազ դելեգատներին», «Սովետների ռեսպուբլիկաների մասին», «Դեն նետեք դիմակները»)։ Այդ հոդվածներում զգացվում է ռևոլյուցիայի ջերմ շունչը, բոլշևիկների ղեկավարությամբ գրոհի ելած պրոլետարիատի հաղթանակի նկատմամբ նրա մեծ հավատը։ Նրանց մեջ քննության են առնվում պրոլետարիատի և նրա ղեկավար պարտիայի առջև դրված խնդիրները, ընթացիկ մոմենտի հրատապ հարցերը։ Մյասնիկյանը վեր է հանում Սովետների՝ որպես պրոլետարիատի ռևոլյուցիոն դիկտատուրայի ձևի նշանակությունը և հիմնավորում է իշխանությունը Սովետներին անցնելու անհրաժեշտությունը։

Որպես Մինսկի բոլշևիկյան կազմակերպության դելեգատ, Մյասնիկյանը ակտիվ մասնակցություն է ունեցել պարտիայի VI պատմական համագումարին և հետագայում կազմակերպել ու ղեկավարել է համագումարի դիրեկտիվների կենսագործումը Արևմտյան մարզում և ռազմաճակատում։ Համագումարի առաջին նիստում, օրակարգի քննարկման ժամանակ, Մյասնիկյանը հանդես է գալիս բանակում տարվող աշխատանքի հարցը օրակարգի մեջ մտցնելու

---

* Ա. Ֆ. Մյասնիկյան, «Ընտիր երկեր», Հայպետհրատ, Երևան, 1957 թ., 518 էջ։

digitised by A.R.A.R.@

առաջարկով։ Օգոստոսի 10-ին Մյասնիկյանը համագումարում զեկուցում է Մինսկի կազմակերպության գործունեության մասին. նա պատմում է կոմիտեի աշխատանքի, բանվորների շրջանում Մինսկի Սովետի ունեցած մեծ հեղինակության և ազդեցության մասին, առաջ է քաշում Արևմտյան ռազմաճակատում տարվող աշխատանքը ուժեղացնելու, այնտեղ բոլշևիկյան ամուր կազմակերպություններ ստեղծելու հարցը։

Պարտիայի VI համագումարում հանդիպելով Կովկասից եկած դելեգատների հետ և նրանց միջոցով մանրամասն ծանոթանալով Կովկասում տիրող դրությանը՝ Մյասնիկյանը ողջույնի նամակ է ուղարկում Բաքվում հայերեն լեզվով հրատարակվող բոլշևիկյան «Սոցիալ-դեմոկրատ» թերթի խմբագրությանը։ Նամակում նա նշում է բոլշևիկյան մամուլի հսկայական նշանակությունը բանվոր դասակարգի ռևոլյուցիոն դաստիարակության գործում և իր անսահման ուրախությունն է արտահայտում Բաքվի «Սոցիալ-դեմոկրատ» և Թիֆլիսի «Բանվորի կռիվը» թերթերի հրատարակման առթիվ։ «Հեղափոխությունն իր երկրորդ ու վճռական շրջանն է անցնում,— գրել է նա,— պետք է, որ բանվորությունը այժմ ավելի քան զգաստ, կազմակերպ ու զգույշ լինի։ Մեր գրական օրգանների դերը այստեղ շատ մեծ է, մանավորապես «Սոցիալ-դեմոկրատ»-ի վրա խոշոր պարտք կա։ Ցանկանում եմ նրան անդուլ աշխատանք և երկար կյանք, որ ռեակցիան նրան բռնի չխեղդի, իսկ հաջողությունը ապահովված է» (էջ 143)։ Միաժամանակ Մյասնիկյանը «Սոցիալ-դեմոկրատ» թերթում հրատարակելու համար ուղարկում է իր «Պրոլետարիատն ու բուրժուազիան արդի հեղափոխության մեջ» հոդվածը, որը լույս է տեսնում «Սոցիալ-դեմոկրատ»-ի 1917 թվականի օգոստոսի 16-ի համարում։ Այդ հոդվածում Մյասնիկյանը վերլուծության է ենթարկում քաղաքական կացությունը, ռևոլյուցիայի զարգացման հրատապ հարցերը, դասակարգային ուժերի փոխհարաբերությունը Ռուսաստանում։ Նա տալիս է ռևոլյուցիայի մեջ բանվոր դասակարգի տեղի և դերի բնութագիրը, համոզիչ կերպով բացատրում է բուրժուազիայի կոնտրռևոլյուցիոն դերն ու նրա իսկական նպատակները և պատռում նրա հետ գործարք կնքած էսեռների և մենշևիկների՝ համաձայնողական այդ պարտիաների կեղծ սոցիալիստական դիմակը, ցույց է տալիս, որ միայն բոլշևիկների պարտիան է հավատարիմ մնացել ռևոլյուցիային, և որ նա բանվորների ու չքավոր գյուղացիության գլուխն անցած՝ նախապատրաստում է հաղթանակը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո բելոռուսական «Звезда», պարտիայի կենտրոնական օրգան «Правда», ինչպես նաև «Խորհրդային Հայաստան» թերթերում լույս են տեսնում Մյասնիկյանի բազմաթիվ հոդվածները պարտիական և սովետական շինարարության զանազան հարցերի շուրջ։ Նա, միաժամանակ, անդրադարձել է պրոլետարիատի դիկտատուրայի բնույթի, ձևի և խնդիրների հարցին (տե՛ս «Երկու դիկտատուրա», «Ինչ է պրոլետարիատի դիկտատուրան», «Կոմունիզմը և պրոլետարիատի դիկտատուրան» հոդվածները)։

Մեծ հետաքրքրություն են ներկայացնում ժողովածուում զետեղված Բելոռուսիայի Կոմունիստական պարտիայի I համագումարի նյութերը։ ԲՍՍՌ-ի կազմակերպման մասին ՌԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը իրականացնելու նպատակով 1918 թվականի դեկտեմբերի 30—31-ը Սմոլենսկում տեղի է ունենում ՌԿ(բ)Պ Հյուսիս-Արևմտյան մարզային VI կոնֆերանսը, որտեղ ներկայացված էին Բելոռուսիայի տերիտորիայի վրա գտնվող բոլոր կոմունիստական կազմակերպությունները։ Կոնֆերանսում ընթացիկ մոմենտի մասին տված իր զեկուցման մեջ Մյասնիկյանը վերլուծության է ենթարկում Սովետական Ռուսաստանի միջազգային և ներքին դրությունը, քննադատության է ենթարկում սովետական օրգանների աշխատանքում եղած որոշ թերությունները և նշում դրանք վերացնելու միջոցները։ Նա հիմնավորում է Բելոռուսական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա կազմակերպելու անհրաժեշտությունը։ Մյասնիկյանի առաջարկությամբ կոնֆերանսը իրեն հռչակում է Բելոռուսիայի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի I համագումար և ընթացիկ մոմենտի ու Բելոռուսական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա կազմակերպելու մասին ընդունում Մյասնիկյանի առաջարկած բանաձևերը։

Իր ռևոլյուցիոն գործունեության ընթացքում Մյասնիկյանը անհաշտ պայքար էր մղում բուրժուական իդեոլոգիայի, կեղծ սոցիալիստական ֆրազներով աշխատավորներին խաբող բուրժուական և մանր բուրժուական պարտիաների, հայ իրականության մեջ՝ դաշնակների ու հնչակյանների դեմ։ Այդ մասին են պատմում ժողովածուում տեղավորված մի շարք երկեր։

Հրապարակախոսական մարտական շնչով ու փայլուն ոճով են գրված 1918 թվականի մայիս-հոկտեմբեր ամիսներին ձախ էսեռների դեմ ուղղված նրա հոդվածները։ Մյասնիկյանը բացահայտում է ձախ էսեռների «ռևոլյուցիոն», «ձախ» ֆրազների ողջ կեղծությունը, մանրամասն վերլուծության է ենթարկում «գյուղական ունևորի և քաղաքային խանութպանի շահերի պաշտպանների» մանր բուրժուական ամբողջ վարքագիծը։

Ընտիր երկերում տեղավորված մի շարք նյութեր վկայում են այն անհաշտ պայքարի



մասին, որ մղել է Մյասնիկյանը պարտիայի ներսում հանդես եկած օպոզիցիոն խմբերի դեմ, հանուն պարտիական շարքերի լենինյան միասնության ու միաձուլության։ Այդ տեսակետից շատ արժեքավոր է 1921 թվականին հրատարակված «Հանուն պարտիայի» գրքույկը։ Պաշտպանելով պարտիայի, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի քաղաքական գիծը, Մյասնիկյանը սպանիչ քննադատության է ենթարկում «Բանվորական օպոզիցիա» և «Դեմոկրատական ցենտրալիզմ» խմբերի տեսակետները պարտիական և պետական շինարարության հարցերի մասին։ Նա կոնկրետ փաստերով ցույց է տալիս այդ տեսակետների անհիմն ու սնանկ լինելը, բացահայտում է օպոզիցիայի անարխո-սինդիկալիստական բնույթը, նրա վտանգավորությունն ու վնասակարությունը սոցիալիզմի գործի համար։ Տրոցկու «Հոկտեմբերի դասերը» հոդվածի դեմ է ուղղված 1924 թվականի նոյեմբերի 28-ին Թիֆլիսի կայազորի պարտիական կոնֆերանսում Մյասնիկյանի արտասանած ճառը, որը «Մեր պարտիան և Տրոցկին» վերնագրով զետեղված է ներկա ժողովածուում։ Մյասնիկյանն անողոք քննադատության է ենթարկում Տրոցկու նոր ելույթը, ցույց է տալիս նրա հակալենինյան, հակապարտիական էությունը և խնդիր է դնում է՛լ ավելի միասնական դարձնել բոլշևիկյան կոհորտան, լրջորեն ուսումնասիրել բոլշևիզմի թեորիան, լավ իմանալ պարտիայի և ռևոլյուցիայի պատմությունը, մեր երիտասարդ սերնդին և կոմերիտմիությանը դաստիարակել լենինիզմի ոգով։

Մեծ հետաքրքրությամբ են կարդացվում «Իմ հանդիպումները ընկեր Լենինի հետ» վերնագրով հիշողությունները։ Նրանց էջերից բարձրանում է Իլյիչի հարազատ ու սիրելի կերպարը։

1919—1920 թվականներին Մյասնիկյանը պարտիայի Մոսկվայի կոմիտեի քարտուղարն էր և շատ հաճախ էր առիթներ ունենում հանդիպելու և զրուցելու Լենինի հետ։ Սովետական ռեսպուբլիկայի համար այդ ծանր շրջանում Մոսկվայի Կոմիտեի աշխատողները ամեն մի դժվարության դեպքում դիմում էին Լենինին, ցուցումներ ու խորհուրդներ ստանում նրանից։ Լենինը հետաքրքրվում էր մայրաքաղաքի պարտիական կազմակերպության աշխատանքով, բանվորների դրությամբ, ձեռնարկությունների վիճակով և այլ հարցերով։ Վլադիմիր Իլյիչը սիրում էր պրոլետարական տոներն անցկացնել բանվորների հետ միասին և Մյասնիկյանի ու Մոսկվայի կոմիտեի մյուս աշխատողների հետ լինում էր բանվորական ռայոններում, նրանց ակումբներում, զեկուցումներ կարդում կարմիր բանակայինների, բանվորների, մայրաքաղաքի աշխատավորների համար։ «Ես անչափ երջանիկ եմ և մինչև կյանքիս վերջը կհպարտանամ, որ եղել եմ Վ. Ի. Լենինի ժամանակակիցը, անձամբ ծանոթ եմ եղել, խոսել եմ հետը, սեղմել եմ նրա ձեռքը, ման եմ եկել, շրջագայել նրա հետ, եղել եմ այդ հսկայի, մեր ժամանակի հանճարի հետևողն ու փոքր աշակերտը»,— գրում է Մյասնիկյանը իր հիշողություններում (էջ 471)։

Մի այլ՝ «Վ. Ի. Լենինը որպես թեորետիկ» աշխատության մեջ Ալ. Մյասնիկյանը գրել է. «Թեորիական տեսակետից Վ. Ի. Լենինի նշանակությունը նույնքան մեծ է, որքան և գործնական կամ քաղաքական տեսակետից։ Ընկ. Լենինի թեորիական ծառայությունները ռուսաստանյան և եվրոպական մարքսիզմի հանդեպ՝ չափազանց արժեքավոր են բոլոր տեսակետներից» (էջ 265)։ Այս գործում նա Լենինին բնութագրում է որպես հանճարեղ տնտեսագետ, փիլիսոփա, գերազանց տակտիկ և կազմակերպիչ, ցույց է տալիս առաջնորդի տեսական աշխատությունների վիթխարի նշանակությունը մարքսիստական թեորիայի զարգացման գործում։ «Որպես քաղաքական տակտիկ,— գրում է Մյասնիկյանը,— Լենինը անզուգական մեծություն է։ Այդ տեսակետից նա պրոլետարական պարտիայի իսկական առաջնորդն է, նրա ուղեղն ու ամուր ձեռքը... Համարձակ կարելի է ասել, որ կոմունիստների պարտիան ու Լենինը անբաժանելի են միմյանցից» (էջ 268)։

Ժողովածուում մեծ տեղ են գրավում այն նյութերը, որոնք բնութագրում են Մյասնիկյանին որպես ժողովուրդների բարեկամության ու եղբայրական համագործակցության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, շահագործողների դեմ բոլոր ազգությունների աշխատավորների համատեղ պայքարի անխոնջ մարտիկի։ Իր աշխատություններում Մյասնիկյանը կրքոտ կերպով պաշտպանում է ժողովուրդների իրավահավասարության, նրանց ինքնուրույն զարգացման և, միևնույն ժամանակ, նրանց կամավոր համագործակցության ու դաշինքի անհրաժեշտությունը։ Նա հիմնավորում է բոլշևիկների պարտիայի ազգային ծրագիրը, արտահայտվում է ազգությունների ինքնորոշման պահանջի օգտին՝ որպես «մի մտածված կարևոր պահանջ մարքսիստական ծրագրում»։ Մյասնիկյանը քննադատության է ենթարկում «ազգային-կուլտուրական ավտոնոմիայի» տեսությունը։ Քաղաքացիական պատերազմի տարիներին նա պնդում էր սովետական ռեսպուբլիկաների ռազմա-քաղաքական դաշինք ստեղծելու անհետաձգելիության վրա, նշելով, միաժամանակ, այդ միության կորիզի՝ ռուս պրոլետարիատի վճռա-

digitised by A.R.A.R.@

*կան դերը, որի շուրջը պետք է համախմբվեին Ռուսաստանի բոլոր ազգությունների աշխատավորները։ Հայաստանում և Անդրկովկասում աշխատելու շրջանում Մյասնիկյանը չափազանց կարևոր դեր է խաղացել Անդրկովկասում ազգային խաղաղություն հաստատելու գործում։*

*1922 թվականի հունվարի 30-ին Հայաստանի բանվորների, գյուղացիների ու կարմիրբանակայինների դեպուտատների առաջին համագումարում տված ՀՍՍՌ Ժողկոմսովետի հաշվետու զեկուցման մեջ Մյասնիկյանը նորից ընդգծում է Հայաստանի և Անդրկովկասյան մյուս ռեսպուբլիկաների տնտեսությունը վերականգնելու համար Անդրֆեդերացիայի կազմակերպման անհրաժեշտությունը, ինչպես նաև այն հսկայական օգնությունը, որ ցույց է տալիս նրանց ՌՍՖՍՌ-ն։*

*Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների առաջին համագումարում, հանդես գալով «Պարտիական շինարարության մասին» զեկուցումով, Մյասնիկյանն անդրադառնում է Անդրկովկասյան պարտիական կազմակերպությունների միավորման կապակցությամբ առաջացած կազմակերպական հարցերին, այդ կազմակերպությունների առջև դրված խնդիրներին, նրանց ղեկավար օրգանների կառուցվածքի, պարտիական, սովետական ու պրոֆմիութենական կազմակերպությունների փոխհարաբերությունների, երիտասարդական կազմակերպությունների ղեկավարման հարցերին։ Նա խստորեն ընդգծում է պարտիայի շարքերի միասնության և սերտ համախմբվածության անհրաժեշտությունը՝ որպես բոլոր կարևորագույն խնդիրների հաջող լուծման գլխավոր պայման։ Սակայն անհասկանալի է, թե ինչու ներկա ժողովածուում չեն զետեղվել Անդրկովկասյան կոմունիստական կազմակերպությունների II համագումարում Մյասնիկյանի ունեցած ելույթները, որոնք մեծ նշանակություն ունեն Անդրֆեդերացիայի ամրապնդման համար մղվող պայքարի և, առհասարակ, Անդրկովկասյան կոմունիստական կազմակերպությունների պատմության լուսաբանման համար։*

*Անդրկովկասյան կոմունիստական կազմակերպությունների հենց այս II, ինչպես նաև ՌԿ(բ)Պ X համագումարի որոշումներից ելնելով է Մյասնիկյանն իր «Կոմունիստական կուսակցությունը և ազգային հարցը Անդրկովկասում» հոդվածում քննարկում է պարտիական և սովետական կազմակերպությունների խնդիրներն ու անելիքները ազգային քաղաքականության կենսագործման բնագավառում։ «Անդրկովկասը,— գրում է նա,— արթնացող Արևելքի նախադուռն է։ Ազգային հարցը Անդրկովկասում հեղափոխական Արևելքի բարդ ու մեծ ազգային հարցի մի մասն է։ Մեր վարքագիծը այդ հարցում մեզ մոտ՝ Անդրկովկասում, նախորոշում է խորհրդային իշխանության հաջողությունն ամբողջ Ասիայում» (էջ 455)։*

*Ինչպես այս, այնպես էլ մի քանի այլ հոդվածներում Ալ. Մյասնիկյանը պարզաբանում և Անդրկովկասի կոնկրետ օրինակով ցույց է տալիս պարտիայի լենինյան ազգային քաղաքականության սկզբունքների հաղթանակը։ Նա վճռականորեն հանդես է գալիս նացիոնալ-ուկլոնիստների, բոլոր տեսակի նացիոնալիստների դեմ՝ հանուն պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների սերտ համագործակցության։ 1925 թվականի մարտի 12-ին Անդրֆեդերացիայի կազմակերպման երրորդ տարեդարձի օրը Ադրբեջանի Սովետների IV համագումարում արտասանած իր ճառում Մյասնիկյանը ամփոփում է Անդրֆեդերացիայի անցած ուղու արդյունքները, անդրադառնում է Անդրկովկասի ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման հարցին։ Դա նրա վերջին հրապարակային խոշոր ելույթն էր։*

*Ընտիր երկերում զետեղված են նաև Մյասնիկյանի գրչին պատկանող գրաքննադատական բնույթի աշխատությունները։ Ալ. Մյասնիկյանը հայ առաջին մարքսիստ գրականագետներից մեկն է։ Իր կյանքի զանազան շրջաններում նա շատ հաճախ է անդրադարձել գրականության ու արվեստի, նրանց հասարակական դերի և գնահատման մեթոդների հարցին, փորձել է մարքսիստորեն վերլուծել և արժեքավորել հայ գրականության խոշոր ներկայացուցիչների գրական ժառանգությունը։ Երիտասարդական շրջանի նրա աշխատությունների . մեջ հատուկ հետաքրքրություն են ներկայացնում Միքայել Նալբանդյանին նվիրված հոդվածները, որոնք առանձին գրքույկով լույս են տեսել 1919 թվականին, Մոսկվայում։ Այդ գրքույկը լուրջ ներդրում է Նալբանդյանի գրական ժառանգության մարքսիստական ուսումնասիրության մեջ։ Այդ գրքույկը բացահայտում է Մյասնիկյանի բազմակողմանի տեսական պատրաստությունը, մարքսիզմի թեորիան գրական երևույթների վերլուծության և գնահատման մեջ վարպետորեն կիրառելու նրա ունակությունը։ Նա առաջին գրականագետներից մեկն էր, որը միանգամայն ճիշտ կերպով սահմանազատեց Նալբանդյանին Նազարյանից, ինչպես նաև 60-ական թվականների հայ լուսավորիչներին՝ 70—80-ական թվականների բուրժուական լիբերալներից. «Կարո՞ղ էր միթե նազարյանական շրջանը կամ լիբերալիզմը, այն էլ հայկական լիբերալիզմը, ծնել իրանից Նալբանդյանի նման պրոգրեսիվ միտք և ըմբոստ ոգի»,— գրել է նա (էջ 18)։ Նալբանդյանին Մյասնիկյանը կապում է ռուս մեծ ռևոլյուցիոն-դեմոկրատներ Չերնիշևսկու, Գերցենի, Օգարյովի հետ։ Միաժամանակ նա ցույց է տալիս, որ «Նալբանդյանը ամենից առաջ և ամենից շատ հայ կյանքի ծնունդն է», հայ աշխատավորի ռևոլյուցիոն պաշտպանը։ «Նալբանդյանը մեկնում է մանրբուրժուական իդեոլոգիայից, նա կանգնած է ժամանակի ամենադեմոկրատիկ խավի — մեր կյանքում իհարկե — շահերի տեսակետի վրա։ Այդ խավը «հասարակ ժողովուրդն է»» (էջ 36)։*

*Հետաքրքրական և արժեքավոր են Մյասնիկյանի «Գրական քննադատության մեթոդի մասին» և «Յու. Այխենվալդի «Բանաստեղծները և բանաստեղծուհիները»» հոդվածները։ Այստեղ նա անխնա քննադատության է ենթարկում ժամանակակից գաղափարազուրկ այն էսթետներին, որոնք գտնում էին թե «գեղարվեստը մի ինքնանպատակ մեծություն է, նա սոսկ գեղարվեստ է և իր համար է»։ «Գեղարվեստը գեղարվեստի համար» և «զուտ գեղարվեստական քննադատություն» հասկացությունները Մյասնիկյանը համարում է ռեակցիոն և իրերի իսկական էությունն աղավաղող հասկացություններ։*

*Յու. Այխենվալդի գրքի դեմ ուղղված հոդվածում Մյասնիկյանը կոնկրետ օրինակի հիման վրա փայլուն կերպով բացահայտում է «մաքուր» արվեստի փիլիսոփայության ողջ սնանկությունը. «մաքուր գեղարվեստի* փիլիսոփայությունը *և գրական* ճնճղատությունը *միշտ և անփոփոխ կերպով երևան են հանել ռեակցիայի ավանդական ականջները։ Եվ այդ ականջները զանազանվել են տարբեր ժամանակներում միայն իրենց երկարությամբ» (էջ 425)։ Վեր հանելով հեղինակի իսկական նպատակներն ու դիտավորությունները, նրա «ժահրոտ» ատելությունը դեպի Հոկտեմբերը և Հոկտեմբերից ելած Ռուսաստանը, Մյասնիկյանն անհերքելիորեն ապացուցում է, որ այստեղ խոսք անգամ չի կարող լինել իբր թե անկաշառ, օբյեկտիվ, զուտ գեղարվեստական վերաբերմունքի մասին դեպի գրողների ստեղծագործությունը։ Մյասնիկյանը գտնում էր, որ գրականությունը պետք է խոշոր դեր խաղա հասարակության ռևոլյուցիոն, կոմունիստական դաստիարակության գործում, սերտորեն կապված լինի ժողովրդի հետ, արտացոլի նրա կյանքն ու գործերը, իսկ գրական քննադատությունը նրա արժանիքները պետք է գնահատի ամենից առաջ հենց այս տեսանկյունից։*

*Ժողովածուում զետեղված են Մյասնիկյանի, որպես զինվորականի գործունեությունը լուսաբանող որոշ նյութեր, ուր նա քննարկել է Կարմիր Բանակում պարտիական-քաղաքական աշխատանքի կազմակերպման, բանակային պարտիական կազմակերպությունների գործունեության բարելավման, բանակն ու թիկունքը կազմակերպորեն ամրապնդելու հարցերը։ Ալ. Մյասնիկյանի զինվորական գործունեությանը վերաբերող արժեքավոր փաստաթղթեր կան* «Документы по истории гражданской войны в СССР» и «Крах немецкой оккупации в Белорусии в *1918* г.» *արխիվային նյութերի ժողովածուներում, որոնցից մի քանիսը կարելի էր զետեղել ներկա ժողովածուում։*

*Երկու խոսք Ընտիր երկերի գիտական ապարատի մասին։ Մեր կարծիքով անհրաժեշտ էր ժողովածուի առաջաբանում կամ ծանոթագրություններում մեկնաբանել, ծանոթագրել Մյասնիկյանի երիտասարդական շրջանի, ինչպես նաև հետագայում գրված առանձին աշխատություններում արծարծված որոշ մտքերն ու դրույթները (օրինակ՝ «Միք. Նալբանդյան», «Ռամկավար հանրապետություն», «Ազգային հարցի առթիվ» և այլն)։ Դա ամենևին և ոչ մի կերպ չէր նսեմացնի նրա գրական ժառանգության արժեքը։*

*Ժողովածուին կցված ծանոթագրությունները պետք է ավելի ընդարձակ լինեին և ընդգրկեին Մյասնիկյանի գործունեության զանազան շրջաններին վերաբերող համառոտ տեղեկություններ, որոնք կօգնեին ընթերցողին ճիշտ հասկանալու և գնահատելու նրա աշխատությունների նշանակությունը և նրանցում շոշափված հարցերը։ Որոշ աշխատությունների բովանդակության կապակցությամբ նույնպես պետք է տրվեին ծանոթագրություններ։*

*Մի դիտողություն ևս։ ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի Հայկական ֆիլիալը հրատարակել ու պատրաստում է տպագրության հայ ռևոլյուցիոն գործիչների երկերը. ըստ որում մի տեղ պահպանվում են նախկին տերմինները (կուսակցություն, հեղափոխություն, ընկերավարություն, հանրապետություն և այլն), մի ուրիշ տեղ դրանք փոխարինվում են նոր ընդունված տերմիններով։ Կարծում ենք այս խնդրում պետք է պահպանել միօրինակություն։*

*Կարելի է, թերևս, մի շարք այլ դիտողություններ ևս անել ժողովածուի գիտա-տեխնիկական կողմի վերաբերյալ, դրանք, սակայն չեն նսեմացնում այն շնորհակալ գործը, որ կատարել են Ընտիր երկերը տպագրության պատրաստողներ՝ ընկ. ընկ. Ա. Մնացականյանը, Տ. Գրիգորյանը, Ս. Խաչատրյանը և Կ. Կոզմոյանը։*

Մ. ՇԻՄՇԻՐՅԱՆ



digitised by A.R.A.R.@

# Ը Ն Թ Ե Ր Ց Ո Ղ Ն Ե Ր Ը   Գ Ր Ք Ի   Մ Ա Ս Ի Ն

## ԱԿԱՆԱՎՈՐ ՄԱՐՔՍԻՍՏԻ ԵՐԿԵՐԻ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐԸ

Ստ. Շահումյան, Երկեր, հ. II, Հայպետհրատ, Երևան, 1957 թ., 581 էջ

*Ստեփան Շահումյանը ո՛չ միայն ռևոլյուցիոն շարժման տաղանդավոր կազմակերպիչ ու ղեկավար էր, այլև խոշոր մտածող, ականավոր մարքսիստ-թեորետիկ։ Նրա թողած հարուստ գրական ժառանգությունը մի անգնահատելի աղբյուր է մեր երկրում ռևոլյուցիոն շարժման պատմության և մարքսիզմ-լենինիզմի թեորիայի ուսումնասիրության համար։ Ցավոք սրտի մինչև այժմ հրապարակի վրա չկա Շահումյանի երկերի ամբողջական հավաքածուն։ Սակայն այդ բացը քիչ թե շատ լրացնելու է գալիս մեծ ռևոլյուցիոների երկերի եռհատորյակը, որը հրապարակվում է ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի—Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմին առընթեր Պարտիայի պատմության ինստիտուտի կողմից։*

*Վերջերս լույս տեսավ այդ եռհատորյակի II հատորը, ուր զետեղված են Ստ. Շահումյանի այն ելույթներն ու աշխատությունները, որոնք գրված են 1907 թ. հոկտեմբերից մինչև 1917 թ. նոյեմբերն ընկած ժամանակաշրջանում։ Հատորում հրապարակված են ավելի քան 40 հոդվածներ, նամակներ ու ճառեր, որոնք առաջին անգամ են մտնում Ստ. Շահումյանի Երկերի ժողովածուի մեջ, ընդ որում մի քանի աշխատություններ («Ռեֆերատ ազգային հարցի մասին», «Ազգային հարցը և ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատիան», «Աստրախանի նահանգում չորրորդ Պետական Դումայի ընտրությունների արդյունքների մասին», Մ. Ցխակայային գրած նամակները) ընդհանրապես առաջին անգամ են հրապարակվում։*

*Հատորում տեղ գտած նյութերը լայնորեն լուսաբանում են Ստ. Շահումյանի ռևոլյուցիոն գործունեությունը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիային նախորդած տասնամյակում։ Մի շարք հոդվածներ վերարտադրում են Բաքվի պրոլետարիատի ազատագրական պայքարի հերոսական էջերը և պարզորոշ ցույց տալիս բոլշևիկյան պարտիայի ղեկավար դերը այդ պայքարում։*

*Հայկական և ռուսական բոլշևիկյան մամուլի օրգաններում («Պրավդա», «Բակինսկի ռաբոչի», «Նոր խոսք», «Պայքար» և այլն) Ստ. Շահումյանի գրած բազմաթիվ հոդվածները, որոնց մի մասը զետեղված է հատորում, վերաբերում են ռևոլյուցիոն շարժման ամենաբազմակողմանի հարցերին, երկրի կյանքում տեղի ունեցած կարևորագույն իրադարձություններին։ Առանձնապես ուշագրավ են ՌՍԴԲՊ (բ) Կովկասյան և Բաքվի կազմակերպության բանաձևերն ու թռուցիկները, որոնք գրվել են Շահումյանի կողմից։ Դրանց մեջ պարզորոշ երևում է կովկասյան բոլշևիկների լենինյան դիրքավորումը իմպերիալիստական առաջին պատերազմի նկատմամբ, նրանց անխոնջ պայքարը իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելու համար, Անդրկովկասի բոլոր ազգերի աշխատավորների ինտերնացիոնալ համախմբման համար։*

*Լինելով ՌՍԴԲՊ(բ) Կենտրոնական Կոմիտեի անդամ և Անդրկովկասյան բոլշևիկյան կազմակերպության ղեկավարներից մեկը, Ստ. Շահումյանը վիթխարի աշխատանք է կատարել Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախապատրաստման համար։ Հատորում հրապարակված նյութերը, որոնցից՝ «Բանաձև ընթացիկ մոմենտի մասին», «Ելույթ բանվորական և զինվորական դեպուտատների Սովետի երրորդ նիստում», «Բանաձև առանց անեքսիաների հաշտության մասին», «Կադետները, Կոռնիլովը և Բաքվի մենշևիկները» ու մի քանի այլ աշխատություններ առաջին անգամ են հրատարակվում Ստ. Շահումյանի Երկերում և հնարավորություն են տալիս ծանոթանալու Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախապատրաստման գործում Ստ. Շահումյանի ծավալած աշխատանքի հետ։*

*Ռևոլյուցիայի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի և Ստ. Շահումյանի անձնական սերտ կապի և գաղափարական միասնության մասին են վկայում Ստ. Շահումյանի մի քանի նամակները Վ. Ի. Լենինին, որոնք գրված են 1913—1915 թթ.։ Ստ. Շահումյանն իր նամակներում Վ. Ի. Լենինի հետ խորհրդակցում էր թեորիական հարցերի, մասնավորապես, ազգային հարցի մասին և կարևոր տվյալներ հաղորդում Կովկասի ռևոլյուցիոն շարժման վերաբերյալ։*



*Հատորում մեծ տեղ են գրավում ազգային հարցին վերաբերող աշխատությունները։ Դրանց մեջ հատուկ հիշատակման է արժանի «Ազգային-կուլտուրական ավտոնոմիայի մասին» հայտնի աշխատությունը, որը ազգային հարցին նվիրված մարքսիստական գրականության լավագույն էջերից մեկն է։ Այս աշխատության մեջ Ստ. Շահումյանը, մերկացնելով հայ, այսպես կոչված, «սպեցիֆիկների» ազգայնական բարբաջանքները, լայնորեն շարադրում է ազգային հարցի լուծման մարքսիստական-լենինյան ճիշտ թեորիան։ Նա ցույց է տալիս, որ նացիոնալիզմի ու ինտերնացիոնալիզմի միջև «սարեր ու ձորեր կան», որ «ազգային կռիվը դասակարգային կռվի արտահայտություններից մեկն է, որ նա տնտեսական և քաղաքական բնույթ ունի թե՛ իր ծագումով և թե՛ իր նպատակներով» (էջ 306)։ Ընդգծելով ռևոլյուցիոն բանվորական շարժման միջազգային բնույթը՝ Ստ. Շահումյանը իրավացիորեն նշում է. «Նացիոնալիզմ և օպորտունիզմ — ահա մարքսիզմի ամենաոխերիմ թշնամիները։ Եվ զարմանալու չէ, որ նրանք, երկու քույրերի նման, միշտ կապված ու գրկված են միմյանց հետ» (էջ 323)։*

*Հատորում առաջին անգամ հրապարակվել է «Ռեֆերատ ազգային հարցի մասին» անավարտ աշխատությունը։ Թեև այն կրում է ռեֆերատ անունը, սակայն դա մի խոր թեորիական հետազոտություն է ազգերի և ազգային հարցի ուսումնասիրման բնագավառում, որտեղ իրենց հետագա զարգացումն են գտնում Ստ. Շահումյանի 1906 թ. գրած «Ազգային հարցը և սոցիալ-դեմոկրատիան» հանրահայտ աշխատության մի շարք կարևոր դրույթներ։*

*Ներկա հատորում տեղավորված են Շահումյանի մի շարք հոդվածներ հայ գրականության, հայ հասարակական մտքի կարևորագույն հարցերի մասին, որոնք հայտաբերվել ու հրապարակվել են վերջին տարիներս։ «Տիեզերական թութակը», «Վ. Փափազյանը պատմագետի դերում», ««Հայ գրականության ժողովածվի մասին» հոդվածից» և այլ հոդվածներ մարքսիստական հայ գրականագիտության և պատմագիտության առաջին կենսունակ և հուժկու ծիլերն են, որոնք խոշոր նշանակություն են ունեցել և կունենան հայոց պատմության և հայ գրականության մի շարք առանցքային հարցերի ճիշտ ըմբռնման համար։*

*Կազմողները զգալի աշխատանք են կատարել նյութի ընտրության, դասավորման ուղղությամբ, հատորին կցել են ծանոթագրություններ և Ստ. Շահումյանի կյանքի և գործունեության տարեգիրը։ Նշելով կազմողների գրական և քուրջ աշխատանքը, չի կարելի անտեսել նաև նրանց թույլ տված անճշտություններն ու սխալները, մասնավորապես ծանոթագրություններում։*

*Նախ, հատորի մեջ չեն ընդգրկված 1907—1917 թթ. ընթացքում Ստ. Շահումյանի գրած և պարբերական մամուլում հրապարակված մի շարք կարևոր աշխատություններ։ Այդպիսիներից մի քանիսը հիշատակվում են նույնիսկ հատորին կցված տարեթվերում (Ստ. Շահումյանի, Ա. Միկոյանի, Ա. Մռավյանի, Ա. Ամիրյանի և ուրիշների բաց նամակը «Պայքար» թերթի ընթերցողներին, «Ռեակցիան», «Ռևոլյուցիան ապրում է», «Քաղաքային դումայի ընտրությունների շուրջը» հոդվածները)։ Կազմողները, նշելով այդ հոդվածները, հարկ չեն համարել բացատրելու ընթերցողին, թե ինչ նկատառումներով դրանք չեն մտել հատորի մեջ։*

*Այնուհետև, կազմողները Ստ. Շահումյանի աշխատություններում գործածված* խորհրդային, ճգնաժամ, հեղափոխություն *և մի շարք այլ տերմիններ փոխարինել են այժմ գործածության մեջ մտած* սովետական, կրիզիս, ռևոլյուցիա *և այլ տերմիններով (ի միջի այլոց, երբեմն մի տեղ ճգնաժամ են թողել, իսկ մի այլ տեղ դարձրել կրիզիս, օրինակ, 418 էջի հոդվածի վերնագիրն է «Մինիստրական կրիզիսի առիթով», իսկ 426 էջում մի այլ հոդված կրում է «Քաղաքական* ճգնաժամը*» վերնագիրը)։ Նման մոտեցումը, որը տեղ է գտել և՛ երկերի I հատորում, և՛ 1948 թ. լույս տեսած «Ընտիր երկերում», հիմնովին սխալ է։ Երբ հրատարակվում են որևէ հեղինակի երկերը, ապա միշտ պահպանվում է տերմինների նրա գործածությունը, փոխել կարելի է միայն և միայն ուղղագրությունը։*

*Հատորի մեջ մտած աշխատությունների մեծ մասը Ստ. Շահումյանը գրել է ռուսերեն, և դրանք, բնականաբար, տրված են թարգմանությամբ։ Նախորդ հրատարակությունների հետ համեմատած թարգմանությունները որոշ չափով ճշտված, ուղղված են։ Այնուամենայնիվ, թարգմանությունների մեջ կան, օրինակ, այսպիսի կաղուններ. 348—350 էջերում հրապարակված ծածկագիր նամակում Վ. Ի. Լենինը և Ն. Կ. Կրուպսկայան անվանվում են «հորեղբայր» և «հորեղբորակին», իսկ 367 էջում նրանք անվանվում են «քեռի» և «քեռակին»։ Թեև սա էական բան չէ, բայց լավ կլիներ, որ չլիներ։ Բացի այդ, կազմողները ռուսերենից թարգմանված աշխատությունների տակ պետք է նշեին՝ «Թարգմանություն ռուսերենից», ինչպես այդ ընդունված է բոլոր գիտական հրատարակություններում։*

*Ստ. Շահումյանի նախորդ հրատարակությունների հետ համեմատած, այս հատորի ծա-*

digitised by A.R.A.R.@

նոթագրությունները բավականին ընդարձակ են, սակայն թույլ են տրված բազմաթիվ փաստական սխալներ ու վրիպակներ, որոնք զգալի չափով նսեմացնում են ծանոթագրողների աշխատանքը։

Նախ, ծանոթագրությունների մեջ սխալ են նշված բազմաթիվ մարդկանց ծննդյան կամ մահվան տարեթվերը։ Այսպես, Կ. Ցետկինի մահվան թվականը (էջ 528) նշված է 1931 (պետք է լինի՝ 1933), Մ. Գորկու կյանքի տարեթվերը (էջ 531) նշված են 1869—1937 (պետք է լինի՝ 1868—1936)։ Այս երկու սխալներն ուղղված են գրքի վերջում տրված «վրիպակներում»։ Սակայն, այդտեղ չեն ուղղված հետևյալ սխալ տարեթվերը. 532 էջում Դ. Ֆ. Տրեպովի ծննդյան թվականը նշված է 1856 (պետք է լինի՝ 1855), 540 էջում Պ. Գ. Վինոգրադովի ծննդյան թվականը 1851 է (պետք է լինի՝ 1854), 543 էջում Ն. Գ. Չերնիշևսկու ծննդյան թվականը՝ 1826 է (պետք է լինի՝ 1828), 551 էջում Ֆ. Շեյդեմանի ծննդյան թվականը՝ 1863 է (պետք է լինի՝ 1865), 554 էջում Ֆ. Ֆրեյլիգրատի ծննդյան թվականը՝ 1814 է (պետք է լինի 1810)։

Փաստական սխալներ են թույլ տրված առանձին անձանց և դեպքերի նվիրված ծանոթագրություններում։ Այսպես, օրինակ, 539 էջում նշված է, որ Գ. Եղինեկը «բուրժուական սոցիոլոգ» է, այնինչ նա իրավագետ է։ Նույն էջում որպես տնտեսագետ հիշատակված է Կ. Բյուխները, այնինչ Ստ. Շահումյանը խոսում է (էջ 233) տնտեսագետ Կ. Բյուխերի մասին, իսկ Ֆ. Կ. Բյուխները փիլիսոփա է։ 543 էջում հիշատակվում է Եմին Ադիմերը, այնինչ պետք է լինի Էամեն Ադեմար։ Նույն էջում նշված է Տուլլիոս Սերեոս, այնինչ պետք է լինի՝ Սերվիոս Տուլլիոս (և ոչ թե Տուլլիոս Սերվիոս, ինչպես նշված է «վրիպակներում»)։ Սերվիոս Տուլլիոսը «հին հռոմեական նշանավոր ռեֆորմիստ» չէ, ինչպես նշված է այդտեղ, այլ ռեֆորմատոր։ Այս երկու հասկացությունների միջև տարբերությունն այն է, որ ռեֆորմիստը բարենորոգությունների կողմնակիցն է, իսկ ռեֆորմատորը՝ բարենորոգություններ անցկացնողը։ 544 էջում նշված է Մեդիմ Վ. Դ.։ Նախ, պետք է գրել Մեդեմ (ինչպես տեքստում է՝ էջ 306)։ 550 էջում նշված է. «Պավլովիչ Մ. Պ. (1871—1929) — գրական անունը Մ. Լ. Վետման...»։ Այս մի տողի մեջ թույլ է տրված երեք սխալ. նախ՝ Պավլովիչը կեղծանունն է, իսկ իսկական ազգանունը Մ. Լ. Վելտման է (և ոչ Վետման), վերջապես, Պավլովիչը մահացել է ոչ թե 1929, այլ 1927 թվականին։ 551 էջում Ֆ. Շեյդեմանը, Է. Վանդերվելդեն, Ռ. Հիլֆերդինգը նշվում են որպես սոցիալ-պացիֆիստներ, այնինչ նրանք պացիֆիստներ չեն եղել, այլ սոցիալ-շովինիստներ, սոցիալ-իմպերիալիստներ։ 552 էջում նշվում է, որ իբր թե Ն. Սուխանովի գրական կեղծանունն է Ն. Ն. Գիմմեր, այնինչ ճիշտ հակառակն է, այսինքն՝ Ն. Ն. Գիմմերի կեղծանունն է Ն. Սուխանով։ 553 էջում նշված է աջ էսեռ Վ. Ի. Մասլովը (1873—1938), այնինչ Ստ. Շահումյանը խոսում է տնտեսագետ Պ. Պ. Մասլովի (1867—1946) մասին։ 559 էջում գրված է, որ Ա. Մ. Կալեդինը 1918 թվականի հունվարին գնդակահարվել է, այնինչ Կալեդինը ինքնասպանություն է գործել։ 561 էջում սպրդել է այսպիսի մի կոպիտ վրիպակ. «ՌՍԴԲՊ (բոլշևիկների) Կովկասյան երկրային և Թիֆլիսի Կոմինտերնի օրգանը», այնինչ ընդգծված բառը պետք է լինի՝ կոմիտեների։ 542 էջում գրված է. «Ստ. Շահումյանը «Ազգային-կուլտուրական ավտոնոմիայի մասին» բրոշյուրները գրել է 1913 թվականին Աստրախանում, այնինչ Ստ. Շահումյանը, ինչպես այդ երևում է հենց ծանոթագրության շարունակությունից, գրել է մի բրոշյուր։ 502 էջում գրված է, թե «Բակինսկի ռաբոչի» թերթի № 49-ը լույս է տեսել 1917 թ. սեպտեմբերի 9-ին, այնինչ այդ համարը լույս է տեսել 1917 թ. սեպտեմբերի 6-ին, ինչպես ճիշտ նշված է 575 էջում։

Ծանոթագրությունների 553 էջում նշված է «Վոլտեր Ա.»։ Վոլտերի անունը Ֆրանսուա Մարի է, իսկ այդ Ա.-ն, որ նշել են ծանոթագրողները, Վոլտերի իսկական ազգանվան (Արուէ) առաջին տառն է։ Ի միջի այլոց, ծանոթագրությունների մեջ նշվում են առանձին մահացած անձանց միայն ծննդյան թվականները, բայց չեն նշվում մահվանը և ընթերցողի մոտ պատկերացում է ստեղծվում, թե այդ մարդիկ դեռ կենդանի են (օր. Իորդանսկի, որը մահացել է 1928 թ. (էջ 546), Շեյդեման՝ մահացել է 1939 թ. (էջ 551) և այլն)։

Անուշադրության հետևանքով հատորում թույլ են տրվել այլ կարգի վրիպակներ։ Այսպես, օրինակ, «Ինստիտուտի կողմից» (էջ 3) հիշատակվում են Ստ. Շահումյանի «Ելույթներ Բաքվի Բանվորների և Զինվորների Դեպուտատների Սովետի երրորդ նիստում» և «Հաշտություն առանց անեքսիայի և կոնտրիբուցիայի» հոդվածները, այնինչ տեքստում դրանք վերնագրված են՝ «Ելույթ բանվորական և զինվորական Դեպուտատների Սովետի 3-րդ նիստում» (էջ 423) և «Բանաձև առանց անեքսիաների հաշտության մասին» (էջ 428)։ Ծանոթագրությունների մեջ (էջ 575) ցույց է տրված, որ «Բակինսկի ռաբոչի» թերթի օգոստոսի 25-ի համարում տպագրված է Շահումյանի «Ընդհանուր խուզարկությունների շուրջը» հոդվածը,



այնինչ տեքստում (էջ 487—488) հոդվածը վերնագրված է «Ընդհանուր խուզարկությունների առթիվ» և ասված է, որ այն տպագրվել է թերթի օգոստոսի 28-ի համարում։

Ընդհանրապես ծանոթագրություններն ու տարեթվերը վատ են կազմված, նրանց մեջ տեղեկություններ չեն տրված Ստ. Շահումյանի հիշատակած բազմաթիվ անձանց մասին, ինչպես և անբավարար են լուսաբանված Ստ. Շահումյանի կյանքի և գործունեության կարևորագույն դեպքերը, տարեթվերի 1/3-ից ավելին հիշատակություններ են այս կամ այն հոդվածի լույս տեսնելու մասին։ Կազմողներն ու հրատարակողները պետք է լրջորեն մտածեն գոնե վերջին՝ III հատորում այս տիպի թերություններից խուսափելու մասին։

Ստ. Շահումյանի երկերի II հատորը, չնայած այս թերություններին, կարևոր և ողջունելի հրատարակություն է և արժանի է ընթերցողների ամենալայն ուշադրությանը։

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻ ԱՄՓՈՓԱԳԻՐԸ

*„Народное хозяйство Армянской ССР"*, статический сборник, Госстатиздат, Ереван, 1957 г., 180 стр.

Ռեսպուբլիկայի Վիճակագրական վարչությունը պատրաստել ու հրատարակել է «Հայկական ՍՍՌ-ի ժողովրդական տնտեսությունը» ժողովածուն։

Ժողովածուում բերված թվական հարուստ տվյալները ցույց են տալիս Սովետական իշխանության տարիներին Հայաստանի աշխատավորության ձեռք բերած հսկայական հաջողությունները ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում։

«Հայկական ՍՍՌ-ի ժողովրդական տնտեսությունը» վիճակագրական ժողովածուի նյութերը խմբավորված են 10 բաժիններում։

Ամփոփիչ բաժնում բերված վիճակագրական տվյալները ցույց են տալիս Սովետական Հայաստանի բնակչության աճը, նրա կառուցվածքում տեղի ունեցած տեղաշարժերը։ 1913 թվականին արդի Սովետական Հայաստանի տերիտորիայի բնակչության թիվը կազմում էր 1 միլիոն մարդ։ Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին թուրքական զորքերի արշավանքների ու կոտորածների, ինչպես նաև սովի ու համաճարակի հետևանքով, որոնք ծայր առին հասան դաշնակների մռայլ տիրապետության տարիներին, զգալի նվազեց Հայաստանի բնակչությունը։ 1920 թվականին, Սովետական կարգերի հաղթանակի նախօրյակին, Հայաստանի բնակչության թիվը կազմում էր 780 հազար մարդ։

Միայն Սովետական իշխանության հաղթանակը հայ ժողովրդի համար ստեղծեց ազգային վերածննդի ու ծաղկման հնարավորություն, տարեցտարի ավելացավ Հայաստանի բնակչությունը, առաջին հերթին՝ բնական աճի և ապա՝ արտասահմանից հայրենիք վերադարձած հայերի հաշվին։ Սովետական իշխանության տարիներին տարագրությունից հայրենիք վերադարձան ավելի քան 120 հազար մարդ։ Արդեն 1956 թվականին Սովետական Հայաստանի բնակչության թիվը կազմում էր 1 միլիոն 633 հազար մարդ։

Ժողովածուի ամփոփիչ բաժնում բերված են թվեր, որոնք ցույց են տալիս ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հարաճուն զարգացման մի քանի կարևոր ցուցանիշներ։

Արդյունաբերություն բաժնում թվական հարուստ տվյալների հիման վրա ցույց է տրվում արդյունաբերության գլխավոր ճյուղերի հիմնական ֆոնդերի կառուցվածքում տեղի ունեցած տեղաշարժերը, համախառն արտադրանքի աճը 1913—1956, 1940—1956, 1950—1956 թվականներին։

Հայաստանի Կոմունիստական պարտիան ու կառավարությունը ինչպես մինչպատերազմյան, այնպես էլ հետպատերազմյան տարիներին իրենց գլխավոր ուշադրությունը բևեռեցին ռեսպուբլիկայում խոշոր արդյունաբերությունը զարգացնելու վրա։ 1956 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացավ 45 անգամ, իսկ խոշոր արդյունաբերության արտադրանքի ծավալը՝ 136 անգամ, ընդ որում, մեքենաշինության ու մետաղամշակման արտադրության ծավալն այդ նույն ժամանակամիջոցում աճեց 328 անգամ։

Գործողության ծրագիր դարձնելով երկրի էլեկտրիֆիկացման մասին մեծ Լենինի հանճարեղ ցուցումները, օգտագործելով Հայաստանի արագահոս գետերի հզորությունը, կառուցվեցին մի շարք խոշոր հիդրոէլեկտրակայաններ։ Ներկայումս Հայկական ՍՍՌ-ում տարեկան արտադրվում է այնքան էլեկտրաէներգիա, որքան արտադրվել է ամբողջ ցարական Ռուսաստանում 1913 թվականին։ Հիդրոէլեկտրաէներգետիկայի արագ զարգացումը դարձավ ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության ու, մասնավորապես, արդյունաբերության վերելքի ապահովման կարևորագույն պայմաններից մեկը։

digitised by A.R.A.R.@

Խոշոր արդյունաբերության զարգացման հետ միասին Սովետական իշխանության տարիներին բուռն վերելք ապրեց ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը։ Միայն հետպատերազմյան ժամանակաշրջանում կաշվեկոշիկի արտադրությունը ռեսպուբլիկայում ավելացավ 3,3 անգամ, բամբակյա գործվածքներինը՝ 2,1 անգամ, բրդյա գործվածքներինը՝ 173 անգամ, մետաքսյա գործվածքներինը՝ 27 անգամ, կենդանական յուղինը՝ 2 անգամ, մսինը (արտադրական վերամշակումից ստացվող)՝ 2 անգամ, հրուշակեղեն ապրանքներինը՝ 3 անգամ, կոնյակինը՝ 4,6 անգամ, խաղողի գինունը՝ 6,5 անգամ և այլն։ Ժողովրդական սպառման առարկաների արտադրության ընդլայնման բազայի վրա զգալի չափով բարձրացան ռեսպուբլիկայի բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի չափերը։ Եթե 1940 թվականին Հայկական ՍՍՌ-ում բնակչության մեկ շնչին ընկնող մսի արտադրությունը կազմում էր 6,6 կգ, ապա 1956 թվականին՝ 10,8 կգ (արդյունաբերական վերամշակում), բամբակյա գործվածքներինը 20,6 մետրից բարձրացավ 34,8 մետրի, մետաքսյա գործվածքներինը՝ 0,15 մետրից՝ 3,34 մետրի և այլն։

Հետաքրքրական տվյալներ են բերված ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ հետպատերազմյան տարիներին բանվոր-ծառայողների թվաքանակի աճի ու աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին։ Արդյունաբերության մեջ նորագույն տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման շընորհիվ հետպատերազմյան տարիներին աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 82 տոկոսով։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը արմատապես փոխեց հայ գյուղի դեմքը, հաղթահարվեց նրա դարավոր հետամնացությունը ու պայմաններ ստեղծվեցին գյուղատնտեսության ինտենսիվ զարգացման համար։

Ժողովածուի թվերը պատմում են, որ Սովետական Հայաստանը դարձել է բարձր մեքենայացված, խոշոր հողագործության երկիր։ Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում իրականացվեցին ջրաշինական մեծ աշխատանքներ, կառուցվեցին մի շարք խոշոր ջրանցքներ, որի հետևանքով զգալիորեն ընդարձակվեցին ոռոգելի հողատարածությունները, բարձրացավ դաշտավարության եկամտաբերությունը։ Եթե 1913 թվականին՝ նախառևոլյուցիոն Հայաստանում ոռոգելի տարածությունները կազմում էին 97 հազար հեկտար, ապա 1957 թվականին այն հասավ 215 հազար հեկտարի։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ վճռական տեղ է գրավում անասնաբուծությունը, որի արտադրանքը ներկայումս կազմում է ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունից ստացվող մթերքների մոտ 40 տոկոսը։ Հետպատերազմյան տարիներին և, հատկապես, 1953 թվականից հետո ընկած ժամանակաշրջանում, երբ պարտիայի ու կառավարության կողմից կենսագործված մի շարք միջոցառումների շնորհիվ բարձրացվեց կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը անասնաբուծության հետագա զարգացման ուղղությամբ, ռեսպուբլիկայում զգալի չափով ավելացան անասունների գլխաքանակը և մթերատվությունը։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1940 թվականի համեմատությամբ 1956 թվականին ավելացավ 21,5 հազար գլխով, ոչխարներինը՝ 648 հազարով, խոզերինը՝ 77 հազարով և այլն։

Վիճակագրական ժողովածուում բերված են թվեր ռեսպուբլիկայի ՄՏ կայանների, նրանց տեխնիկական հագեցվածության, աշխատանքների որակական ցուցանիշների, կադրերի մասին և այլն։ 1956 թվականին կոմբայնների օգնությամբ հավաքվել է 165 հազար հեկտարի հացահատիկի բերք, որը 4 անգամ գերազանցում է 1940 թվականին հավաքած բերքից։ Էլեկտրաէներգիան մտել է կոլտնտեսային արտադրության և գյուղացիության կենցաղի մեջ։ Միայն 1950—1956 թվականներին էլեկտրիֆիկացման ենթարկվեցին 313 կոլտնտեսություն։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ էլեկտրաէներգիայի արմատավորումը սոցիալիստական գյուղի կուլտուրական հեղաշրջման ու արտադրության զարգացման վճռական պայմաններից մեկը հանդիսացավ։

Սովետական իշխանության տարիներին տարեցտարի ավելացան ժողովրդական տնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումները։ 1955 թվականի հուլիսի 1-ի գներով հաշված, առաջին հնգամյակի տարիներին (1928 թվականի IV եռամսյակից մինչև 1932 թվականը) ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ ներդրած կապիտալ ներդրումների ծավալը կազմում էր 384 մլն ռուբլի, իսկ հինգերորդ հնգամյակի տարիներին՝ 3,602 մլն ռուբլի։

Կապիտալ ներդրումների հսկայական աճը ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի զարգացման հետ միասին մեծ դեր խաղաց ռեսպուբլիկայում բնակարանային, առողջապահական ու կուլտուր-կենցաղային հիմնարկների, դպրոցների շինարարության զգալի ընդարձակման գործում։ Միայն պետական կազմակերպությունների ու ձեռնարկությունների, ինչպես նաև տեղական Սովետների կողմից կառուցված



բնակելի տների ընդհանուր տարածությունը հետպատերազմյան 11 տարվա (1945—1956 թթ.) ընթացքում կազմեց 1272 հազ. քառ. մետր։ Բացի դրանից, պետական վարկերի և իրենց անձնական միջոցներով այդ նույն ժամանակամիջոցում քաղաքներում կառուցվել են բնակարաններ 1097 հազ. քառ. մետր ընդհանուր տարածությամբ և գյուղերում՝ 50 հազար տուն։

Ներկա ժողովածուի ապրանքաշրջանառություն բաժնում բերված են թվական տվյալներ Հայկական ՍՍՌ-ում պետական, կոոպերատիվ ու կոլտնտեսային առևտրի զարգացման, ապրանքաշրջանառության արագ աճման մասին։

Սովետական իշխանության տարիներին ժողովրդական սպառման առարկաների արտադրության ու բնակչության գնողականության սիստեմատիկ աճի բազայի վրա անհամեմատ զարգացավ ռեսպուբլիկայի պետական ու կոոպերատիվ առևտուրը, զգալիորեն բարձրացավ բնակչության մեկ շնչին ընկնող ապրանքների վաճառքը։ Եթե 1940 թվականին բնակչության մեկ շնչին ռեսպուբլիկայի պետական ու կոոպերատիվ առևտրի ցանցի միջոցով վաճառվել է 842 ռուբլու ապրանք, ապա 1956 թվականին՝ 1,563 ռուբլու ապրանք (1940 թվականի միջին տարեկան գներով հաշված)[1]։ Համապատասխան տարեկան գներով հաշված, 1956 թվականին ռեսպուբլիկայի պետական ու կոոպերատիվ առևտրի ապրանքաշրջանառության ծավալը կազմեց 3,362 մլն ռուբլի, 1940 թվականի 1,094 մլն ռուբլու դիմաց։

Աննախընթաց ծաղկում է ապրել հայ ժողովրդի՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Վիճակագրական ժողովածուի այս բաժնում բերված տվյալները պատմում են ռեսպուբլիկայի դպրոցների, բուհերի ու տեխնիկումների, գիտական հիմնարկների, գրադարանների, ընթերցարանների, կինոթատրոնների ցանցի ընդարձակման, հրատարակվող գրքերի, թերթերի ու ամսագրերի ավելացման մասին և այլն։ Այժմ Սովետական Հայաստանում բնակչության հազար շնչին ընկնում է 45 անգամ ավելի սովորող, քան Իրանում, 11 անգամ ավելի, քան Թուրքիայում, 4 անգամ ավելի, քան Ֆրանսիայում։ Սովետական Հայաստանը դարձել է համատարած գրագիտության, բարձր զարգացած գիտության ու կուլտուրայի երկիր։

Սովետական իշխանության տարիներին հայ ժողովրդի նյութական դրության զգալի բարձրացման մասին են խոսում ժողովածուի առողջապահություն բաժնում բերված թվերը։ Բնակչության կենսամակարդակի բարձրացման ու բուժսպասարկման բարելավման հետևանքով տարեցտարի ավելանում է նրա բնական աճը։ Եթե 1940 թվականին ռեսպուբլիկայի 1000 բնակչին ընկնում էր 27,4 մարդ բնական աճ, ապա 1956 թվականին այն կազմեց 30,4 մարդ։

Ժողովածուի այս բաժնում ցույց է տրվում նաև հիվանդանոցային մահճակալների, բուժաշխատողների, գործող սանատորիաների ու հանգստյան տների, մանկամսուրների ու մանկապարտեզների քանակական աճը։

Վիճակագրական ժողովածուի վերջին բաժինը նվիրված է Հայկական ՍՍՌ ֆինանսներին։ Այստեղ թվական տվյալների հիման վրա ցույց է տրվում ռեսպուբլիկայի պետական բյուջեի աճը, նրա օգտագործումը սոցիալիստական շինարարության տարբեր էտապներում, բյուջեի կատարողականը եկամուտների ու ծախսերի գծով։ Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյակի տարիներին ռեսպուբլիկայի պետական բյուջեն եկամուտների գծով կազմում էր 192,1 մլն ռուբլի, իսկ հինգերորդ հնգամյակի տարիներին՝ 6,295,7 մլն ռուբլի, այսինքն՝ աճել էր 32,7 անգամ։ Ժողովրդական տնտեսության ֆինանսավորման համար պետական բյուջեի ծախսումները 1956 թվականին՝ միայն մեկ տարում, 7 անգամ գերազանցեցին առաջին հնգամյակի հինգ տարում այդ նպատակով կատարված ծախսումները։

«Հայկական ՍՍՌ-ի ժողովրդական տնտեսությունը» վիճակագրական ժողովածուն զերծ չէ սակայն մի շարք թերություններից, որոնց վերացումը ցանկալի կլիներ նրա հետագա հրատարակություններում։ Ժողովածուում բացակայում են վիճակագրական մի շարք տեղեկություններ ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության առանձին հարցերի մասին։ Այսպես, օրինակ, ժողովածուի ամփոփիչ բաժնում տեղեկություններ չկան Հայկական ՍՍՌ-ի բնակչության ազգային կազմի, դասակարգային կառուցվածքի, աշխատավորների եկամուտների աճման մասին։ Արդյունաբերության բաժնում չեն բերված տեղեկություններ հասարակական արտադրության «Ա» և «Բ» ստորաբաժանումների տեսակարար կշիռների մասին, որոնք ցույց կտային Կոմունիստական պարտիայի ինդուստրացման քաղաքականության հետևողական կենսագործման վառ արտահայտությունը նաև Հայկական ՍՍՌ-ում։ Այս բաժնում չկան տվյալներ ռեսպուբլիկայի հիմնական արտադրական ֆոնդերի աճի, արդյունաբերության արտադրանքի ինքնարժեքի իջեցման մասին։ Գյուղատնտեսության բաժնում բացակայում են դաշ-

[1] Գների վերահաշվարկումը կատարված է մեր կողմից՝ օգտագործելով ՍՍՌՄ-ի պետական և կոոպերատիվ առևտրի գների ինդեքսները։

digitised by A.R.A.R.@

տավարությունից ստացվող գոնե մի քանի հիմնական կուլտուրաների արտադրության ավելացումը և բերքատվությունը ցույց տվող թվական տվյալները։ Եթե գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության մասին հնարավոր չէր բերել բացարձակ թվեր, անհրաժեշտ էր այն ցույց տալ գոնե տոկոսային աճի ձևով։ Չկան տվյալներ պետական ու կոոպերատիվ առևտրի ապրանքաշրջանառության կառուցվածքի, նրանում կատարված տեղաշարժերի, մի շարք ապրանքների վաճառքի մասին։ Ապրանքաշրջանառության աճը ցույց տվող թվական տվյալները բերված են համապատասխան տարիների գներով, որը բավարար չէ այդ աճի մասին լրիվ գաղափար կազմելու համար։ Սրանք մանր թերություններ են, բայց այնուհանդերձ չպետք է լինեին, մանավանդ որ ներկա ժողովածուն հրատարակվել է «ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսությունը 1956 թվականին» վիճակագրական ժողովածուի հրատարակումից հետո և այն հնարավոր էր օգտագործել միատիպ թվերի հրատարակման համար։

Վ. ՉԱԹԻՆՅԱՆ

# «ԲՈԼՇԵՎԻԿԻ ՀՈՒՇԵՐԸ»

*Пятницкий О.*—„Записки большевика“. издание пятое, Москв?, Госполитиздат, 1957 г.. 227 стр.

Իոսիֆ (Օսիպ) Արոնովիչ Պյատնիցկին Կոմունիստական պարտիայի հնագույն գործիչ էր։ 1898 թվականին, դեռ 16 տարեկան հասակում, նա ընդունվել է ՌՍԴԲՊ-ի շարքերը և իրեն ամբողջովին նվիրել բանվոր դասակարգի ազատագրման գործին։

Օ. Պյատնիցկին ակտիվ մասնակցություն է ունեցել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստմանը և իրագործմանը։ Ռևոլյուցիայի հաղթանակից հետո նա եղել է պարտիայի Մոսկվայի քաղաքային կոմիտեի քարտուղար, Կենտրոնական Կոմիտեի անդամ, աշխատել է Կոմինտերնում, իսկ իր կյանքի վերջին շրջանում աշխատել է ՀամԿ(բ)Պ Կենտկոմում։

1932 թվականին նշվեց Օ. Պյատնիցկու ծննդյան 50-ամյակը։ Այդ առթիվ Ն. Կ. Կրուպսկայան գրել է.

«Պյատնիցկին (կամ «Պյատնիցան», «Ֆրեյտագը», ինչպես մենք նրան կոչում էինք) ընդհատակում աշխատեց 20 տարի։ Նա տիպիկ պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ էր, որն իր ամբողջ կյանքը, իրեն ամբողջովին նվիրաբերել էր պարտիային, ապրում էր միայն նրա համար։ Պյատնիցան համոզված բոլշևիկ էր, որի խոսքը երբեք չէր տարբերվում գործից, որին կարելի էր վստահել։ Այդպիսին գիտեր նրան Լենինը»։

Օ. Պյատնիցկին իր հուշերը շարադրել է ժամանակագրական կարգով՝ սկսած մեր պարտիայի սաղմնավորման շրջանից մինչև 1917 թվականի փետրվարյան ռևոլյուցիան։

«Իմ հուշերը,— գրել է Օ. Պյատնիցկին,— շարադրված են ըստ իմ պարտիական ռևոլյուցիոն գործունեության տարիների. նրանց մեջ նկարագրված են այդ շրջանին վերաբերող այնպիսի իրադարձություններ, որոնց հետ ես այս կամ այն կերպ կապված եմ եղել, մատնանշվում են այն կազմակերպությունները, որոնցում ես աշխատել եմ, այն ընկերները, որոնց հետ աշխատել եմ համատեղ»։

Օ. Պյատնիցկու գրառումների գիրքը ընթերցողին գրավում է առաջին իսկ էջերից։ Հեղինակը սկզբում նկարագրում է իր հայրենի քաղաքը՝ Վիլկոմիրը, իր պատանեկան մռայլ ու ծանր տարիները, իր ռևոլյուցիոն գործունեության սկիզբը։ Այդ այնպիսի ժամանակաշրջան էր, երբ Լենինի, ռուս ռևոլյուցիոներների ջանքերով մարքսիստական միտքը նոր-նոր թափանցում էր բանվոր դասակարգի լայն խավերի մեջ, տիրապետում մասսաներին ու դառնում հզոր ուժ։ Հազարների հետ միասին 16-ամյա պատանին՝ դերձակ Օսիպը, արդեն գիտակից բանվոր, մտնում է ռևոլյուցիոն շարժման հորձանուտը և ակտիվորեն մասնակցում բանվոր դասակարգի պայքարին։ Նա քաղաքի դերձակների արհմիության ղեկավարն է, նրանց ժողովների ու ցույցերի կազմակերպիչը։

Այնուհետև հեղինակը պատմում է «Իսկրա»-ն արտասահմանից Ռուսաստան առաքելու և այնտեղ տարածելու հետ կապված իր աշխատանքի մասին։ 19—20-ամյա երիտասարդը, վտանգի ենթարկելով իր կյանքը, «Իսկրա»-ի համարների կապոցները անց էր կացնում սահմանից՝ Ռուսաստանում տարածելու համար։

1902 թվականին Պյատնիցկուն ձերբակալում են։ Նա ժխտում է իրեն առաջադրված բոլոր մեղադրանքները։ Ցարական ատրճանավորը առաջարկում է Պյատնիցկուն տեղափոխել ուրիշ բանտ, որտեղ նրան ծեծելով կստիպեն խոստովանել։ Պյատնիցկուն հարցաքննողը պատասխանում է. «Դուք սխալվում եք, նա այնտեղ նույնպես ոչինչ չի ասի, նա պատկանում է իսկրայական կազմակերպությանը»։



Բանտից փախչելուց հետո Պյատնիցկին մեկնում է արտասահման, ուր նրա վրա է դրվում «Իսկրա»-ն, «Զարյա» ամսագիրը և գրականությունը գաղտնի կերպով Ռուսաստան առաքելու, ռևոլյուցիոն գործիչներին սահմանն անցկացնելու և արտասահմանում նրանց տեղավորելու պատասխանատու գործը։ Պյատնիցկին անմիջականորեն կապված էր Լենինի և Կրուպսկայայի հետ և գործում էր նրանց ղեկավարությամբ։

Էջ առ էջ ընթերցողի առաջ բացվում է մեր պարտիայի կազմավորման շրջանում լենինյանների վիթխարի գործունեության համապարփակ պատկերը։ Գտնվելով դեպքերի կենտրոնում, Պյատնիցկին տեսել ու իր հուշերում վերարտադրել է նոր տիպի պարտիայի համար Լենինի ու նրա կողմնակիցների մղած անհաշտ պայքարը ամեն երանգի օպորտունիստների դեմ, անձամբ մասնակցել է այդ պայքարին։ Գործելով Ն. Կ. Կրուպսկայայի անմիջական ղեկավարությամբ, քսանմեկամյա Պյատնիցկին ակտիվ մասնակցություն է ունենում ՌՍԴԲՊ II համագումարի հրավիրման աշխատանքներին. Նա բազմիցս հանդիպումներ է ունեցել Կ. Լիբկնեխտի, Կ. Կաուցկու և գերմանական սոցիալ-դեմոկրատիայի այլ ներկայացուցիչների հետ։

Պյատնիցկին գործում է խոր ընդհատակում գտնվող փորձված ռևոլյուցիոների հմտությամբ, պահպանելով կոնսպիրացիայի բոլոր կանոնները, աչալուրջ լինելով պրովոկատորների սուր դավերի նկատմամբ։ Նա մերկացնում է բոլշևիկներին ցարական պահնորդականության ձեռքը մատնող պրովոկատոր Ժիտոմիրսկուն, ինչպես նաև պարտիայի շարքերը սողոսկած պահնորդության գործակալ Մատվեյին։

Չի կարելի առանց հուզմունքի կարդալ այն էջերը, ուր հեղինակը նկարագրում է Ռուսաստան մեկնելուց առաջ Լենինի և Կրուպսկայայի հետ՝ նրանց տանը անցկացրած իր մեկ շաբաթը։

Բոլշևիկյան ընդհատակի խիզախ ու անձնազոհ մարտիկի՝ Պյատնիցկու, հուշերը դաստիարակչական մեծ նշանակություն ունեն աշխատավորների, հատկապես մեր երիտասարդության համար. նրանք ընթերցողին պատմում են ռևոլյուցիոն շարժման հետաքրքրական և հուզիչ դրվագներ, վառ ու ճշմարտացի պատկերացում տալիս բանվոր դասակարգի, աշխատավոր մասսաների ազատագրման համար բոլշևիկյան պարտիայի մղած փորձություններով լի պայքարի անցած հերոսական ուղու մասին։

«Բոլշևիկի հուշերը» գիրքը արժեքավոր ավանդ է պատմա-ռևոլյուցիոն մեմուարային գրականության մեջ։ Նա պետք է դառնա մեր աշխատավորների սեղանի գիրքը։ Այն պետք է թարգմանել հայերեն։

Լ. ՂԱՐԻԲՅԱՆ

# ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ ՍՍՌՄ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Айрапетян М., Кабанов П.*—„Ленинские принципи внешней политики Советского государства“, Москва, Госполитиздат, 1957 г., 221 стр.

Գրքում հանրամատչելի ձևով պարզաբանված են Սովետական պետության արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքները։ Գիրքը բաղկացած է չորս գլխից։ Առաջին գլխում ցույց են տրված ռևոլյուցիոն պրոլետարիատի առաջին պետության արտաքին քաղաքականության սկզբունքները և նրանց գիտական հիմնավորումը Լենինի կողմից։ Երկրորդ գլխում խոսվում է խաղաղության համար Սովետական պետության հետևողական պայքարի մասին։ Երրորդ գլուխը նվիրված է Սովետական պետության արտաքին քաղաքականության ամենակարևոր հիմունքներից մեկի՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի նշանակությանը և կիրառմանը։ Գրքի չորրորդ գլխում քննարկված են ժամանակակից էտապում կայուն և երկարատև խաղաղությունն ապահովելու վերաբերյալ ՍՄԿՊ XX համագումարի առաջադրած պատմական դրույթները, ինչպես նաև ՍՍՌՄ-ի հաստատակամ պայքարը համագումարի առաջադրած խնդիրների կենսագործման համար։

Մ. Հայրապետյանը և Պ. Կաբանովը իրենց գրքում քննարկելով Սովետական պետության ստեղծման միջազգային-քաղաքական նշանակությունը, ցույց են տալիս, որ այդ փաստը արմատական փոփոխություն առաջացրեց միջազգային հարաբերությունների պատմության մեջ։ Ելնելով սոցիալիստական և կապիտալիստական սիստեմի պետությունների գոյության փաստից, գրում են հեղինակները, ՍՍՌՄ արտաքին քաղաքականությունը հենց սկզբից հիմնըվեց երկու կարևորագույն սկզբունքների վրա. դրանք են՝ սոցիալական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը։ Խաղաղ գոյակցության սկզբունքը, որը ՍՍՌՄ արտաքին քաղաքականության գլխավոր գիծն է, օբյեկտիվորեն արտահայտում է աշխարհի բաժանված լինելը երկու հակադիր սիստեմների և հաստատում այն գաղափարը, որ այդ հա-

digitised by A.R.A.R.@

կարգի սիստեմները կարող են և պետք է գոյություն ունենան կողք-կողքի։ Միաժամանակ գրքում շարադրված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը, որը հանդիսանում է սոցիալիստական սիստեմի պետությունների շահերի նույնության, բոլոր երկրների աշխատավորների միասնության, համերաշխության և փոխադարձ օգնության արտահայտությունը։

Պարզաբանելով լենինյան այդ երկու դրույթների մեծագույն նշանակությունը արտաքին քաղաքականության մեջ, հեղինակները բազմաթիվ փաստերով ցույց են տալիս, որ Սովետական պետությունը միջազգային հարաբերությունների ասպարեզում իր գործունեությունը միշտ էլ խարսխել է դրանց վրա։ ՍՍՌՄ արտաքին քաղաքականության պատմությունը սկսվում է հաշտության մասին լենինյան հայտնի Դեկրետով։ Պատմությանը հայտնի են բազմաթիվ փաստեր այն մասին, թե Սովետական պետությունը ինչպիսի հետևողականությամբ և հաստատակամությամբ էր պայքարում խաղաղության համար առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմների միջև ընկած ժամանակաշրջանում։

Գրքի հեղինակները մի շարք փաստեր են բերում հետպատերազմյան տարիներին Սովետական պետության ձեռնարկած արտաքին-քաղաքական միջոցառումների մասին, որոնք ուղղված են եղել խաղաղության ու ժողովուրդների անվտանգության ամրապնդմանը, միջազգային հարաբերություններում տիրող լարվածության մեղմացմանը։ Ի հակադրություն ամերիկյան իմպերիալիստների սպառազինությունների մրցավազքի, «ուժի դիրքերից» ելնող քաղաքականության, Սովետական Միությունը կապիտալիստական երկրներին կոչ է անում՝ «Եկե՛ք առևտուր անենք»։

Մ. Հայրապետյանը և Պ. Կաբանովը ցույց են տալիս, որ խաղաղ գոյակցության լենինյան այդ սկզբունքը չի ելնում միջազգային հարաբերություններում ինչ-որ կոնյունկտուրային նկատառումներից, ինչպես փորձում են այն ներկայացնել իմպերիալիզմի ռեակցիոն ջատագովները։

Գրքի հեղինակները բազմակողմանիորեն քննարկում են արտաքին քաղաքականության մեջ պրոլետարական ինտերնացիոնալիզմի դերն ու նշանակությունը։ Նրանք ցույց են տալիս, որ Սովետական պետության գոյության սկիզբը նշանավորվեց միջպետական անիրավահավասար պայմանագրերի վերացումով։ Փաստեր են բերվում նախապատերազմյան տարիներին փոքր պետությունների ազգային անկախության համար ՍՍՌՄ-ի մղած անխոնջ պայքարի մասին։

Գրքի հեղինակները համոզիչ կերպով ցույց են տալիս, որ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի կիրառման նոր էտապ հանդիսացավ հետպատերազմյան ժամանակաշրջանը, երբ սոցիալիզմը, դուրս գալով մեկ երկրի շրջանակներից, դարձավ համաշխարհային սիստեմ։ Եվրոպայի և Ասիայի մի շարք պետություններ թոթափելով իմպերիալիզմի և գաղութակալության լուծը, բռնեցին զարգացման սոցիալիզմի ուղին և ՍՍՌՄ-ի գլխավորությամբ կազմավորեցին խաղաղության և սոցիալիզմի լագերը։

Հեղինակները մատնանշում են, որ խաղաղ գոյակցության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները իրենց հետագա զարգացումը գտան ՍՄԿՊ XX համագումարի որոշումներում, որոնց անշեղ կիրառմանը ձեռնամուխ են եղել Սովետական Միության Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը։

«Սովետական պետության արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքները» գիրքը ընթերցողին կօգնի ավելի լավ ըմբռնելու մեր պետության արտաքին քաղաքականության իդեոլոգիական հիմքերը և նրա պրակտիկ իրականացման նշանակությունը։

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԲԱԲԱՅԱՆ Լ. Հ., ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ՀՈՎՀ. Մ.,
ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ
Գ. Ա., ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ԱՐ. Ն., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ
Վ. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.:

ՎՖ 00950 | Պատվեր 23 | Տիրաժ 6300
Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ: | Ստորագրված է տպագրության 14/I 1958 թ.։
ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։

digitised by A.R.A.R.@